Juanseri
Hamarot patmutiwn vrats...

ՀԱՄԱՌՕՏ 142

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎՐԱՑ

ԸՆԾԱՅԵԱԼ 137 p.

## ՋՈՒԱՆՇԷՐԻ ՊԱՏՄՉԻ






ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ
1884 — ՌՅԼԳ




# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

Առաջիկայ Պատմութեանս Վրաց, զորոյ հրատարակել առնումք զայս առաջին նուազ գրնագիրն 'ի հատորիկս յայս, ոչ է յայտ ով եկաց մատենագիր, թէ և 'ի բազմաց հաւաստի' թարգմանութիւն լինել երկասիրութեանն Ջուանշերի (Ջուանբերի) Վրաց պատմչի, որ եկաց առ ժամանակօք, որպէս թուի Արչիլ Բի (688-718), զի և յիշատակի անուն նորին 'ի պատմութեանս. քանզի յետ յառաջ ածելոյ զվկայական կատարած Արչիլ Բի, յաւելու. « Եւ գտաւ պատմութիւնս համառօտ 'ի ժամանակս չփոթմանն, և եդաւ 'ի գիրքս' որ կոչի Քարթլիս Ցխօրէպա, որ է Պատմութիւն Քարթլաց [1]. և եգիտ զաս Ջուանբեր[2], գրեալ մինչև ցՎախթանգ Թագաւոր [3]. և մինչև ցայս վայր ինքն յաւել Ջուանբեր, և զգալոցն' յանձնեաց տեսողացն և պատահելոցն 'ի ժամանակին »: Արդ, ըստ այսմ վկայութեան' հնութիւն գրոցս ելանէ մինչև ցդարս Է-Ը. իսկ թարգմանութիւն նորին 'ի հայումս' ոչ կրսեր քան զդարն ԺԳ. քանզի յիշատակի սա 'ի պատմագրութեան Ստեփանոսի Ուռպելեան [4], որ եկաց յաւուրս Գրիգորի Անաւարզեցւոյ, 'ի վերջ կոյս ԺԳ դարու. որպէս և յոճոյ շարադրութեանն երևի չլինել երիցագոյն քան զԺ-ԺԱ դարս: Յիշատակեալ գտանեմք և միւս այլ պատմութիւն Վրաց' անյայտ առ մեզ, 'ի բառարանին Ստեփանոսի Կամենիցացւոյ, որ և երևի զատ յայսմանէ լինել:

1 Վիրք' Քարթլի անուանեն զինքեանս, յանուն Քարթլի նախնւոյն իւրեանց' եղբօր Հայկայ:

2 Ջուանշէր Ջուանշէրեան, ըստ վկայութեան Զուրինովի (Պրմ. Վրաց. Մասն Բ.), էր 'ի սերընդենէ Վիրոնի արքայի, որդի Միհրանայ, ամուսնացեալ ընդ միում 'ի Թոռանց (ըստ Պրոսէի' 'ի դստերաց) եղբօր երանելւոյն Արչիլ Բի, որ և ժամանակակից վերջնոյս' գրեաց և զվկայական կատարած նորին:

3 Վախթանգ Ա, որդի Միհրդատայ Եի (446–499): Եւ մինչև ցայս վայր, այսինքն մինչև ցամն 718, յորում մեռաւ Արչիլ Բ:

4 Տպագրեալ 'ի Մոսկուա, 1861, էջ 272:

Որիշ է սա և 'ի գլխոյ անտի պատմութեան Վրաց, հրատարակելոյ 'ի Մատրաս Հնդկաց 'ի 1775, և 'ի Սէն-Մարդենէ յեղլոյ 'ի գաղղիերէն, զոր Սոմալեան, չունելով 'ի ձեռին յայնժամ զամբողջ օրինակ պատմութեանն Որբելեանի, զատ ինչ վէպ համարի 'ի ԿԵ գլխոյ Պատմութենէն Սիւնեաց. այլ բաղդատութիւնն ցուցանէ զի է նոյն ամենևին, այսու ևեթ տարբերութեամբ զի հրատարակեալն 'ի Մատրաս՝ բաժանեալ է 'ի գլխակարգութիւնս, այլ 'ի պատմութեանն Որբելեանի բովանդակն 'ի մի միայն գլուխ կարգի միահետ 'ի սկզբանէ մինչև ցկատարածն: Երկուս ևեթ գիտեմ օրինակս այսր հայերէն թարգմանութեան յիշատակեալ առ բանասէրս, զմինն 'ի ԺԹ Ճառընտրի վանացս, որ է ընդօրինակեալ 'ի 1830 ամի 'ի հին բոլորագիր անթուական օրինակէ, գտեալ յայնժամ առ Կարապետ վարդապետի առաջնորդին Կարնեցւոց, և զերկրորդ՝ զգտեալն 'ի Պրոսէէ 'ի վանս Էջմիածնի, գրեալ՝ ըստ վկայութեան նորին, 'ի միջոց ժամանակի ամացն 1279–1311: Եւ զի յերկոսին ևս օրինակսն՝ պատմագրութեանն հասեալ մինչև ցամն 1125, վճարի նովին թերատ բառիւս Ասառուց..., մարթ է կարծել թէ գուցէ և թարգմանչին չիցէ աւարտեալ զթարգմանութիւնն, և կամ զի մի և նոյն լեալ իցէ բնագիր երկուց օրինակացս՝ յընդօրինակողէ լիկագրին թերի թողեալ. բայց այս որպէս և իցէ, յայտ է զի յամէն 1125, յորում թերի մնայ պատմութիւնն, մինչև ց1279–1311, յորում ժամանակի եղև օրինակութիւն ձեռագրին, չէր մարթ մասին պակասելոյ այլ ևս ընդարձակ ժամանակաւ յառաջ խաղալ 'ի պատմագրութեանն:

Բազմահմուտն վրացի պատմութեանց՝ Պրոսէ, 'ի թարգմանութեան անդ իւրում Քաղուածոյ պատմութեանն Վրաց 'ի Վախթանգէ, եդեղ և զմերս զայս 'ի գաղղիերէն, զետեղեալ ծանօթութեամբք 'ի Յաւելուածսն՝ յերրորդում հատորի, խորագրաւս Chronique arménienne, յորմէ և մեք 'ի ծանօթութիւնս աստ ուրեք ուրեք 'ի մէջ բերեմք զկարևոր գիտելիս: Դարձեալ և յառաւելագոյն պարզութիւն գրոցս, խորհեցաք զպատմութիւնս զայս 'ի գլուխս գլուխս հատանել, և 'ի սկզբան իւրաքանչիւրոցն կարգել 'ի համառօտի զբովանդակութիւնս նոցին, որպէս յառաջիկայդ տեսանի:

Հ. Ա. Թ.

## ՀԱՄԱՌՕՏ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎՐԱՑ

---

### ԳԼՈՒԽ Ա

*Յաղագս սերնդոց Թորգոմայ սփռելոյ 'ի վերայ երկրի զկնի կործանման աշտարակին. — Անուանք ութեցունց որդւոց նորին և սահմանք ժառանգութեան նոցին. — Յաղագս Հայկայ և սպանման Նեբրովթայ. — Յաղագս Քարթլոսայ և հնգեցունց որդւոց նորին. — Յաղագս Մցխեթայ քաջի և երից որդւոց նորա. — Պատահումն տանն Քարթլի ընտանի խռովութեամբ, և յաղագս մեծանալոյ Մցխեթա քաղաքի. — Յաղագս փոխելոյ կրօնից աստուածպաշտութեան 'ի բնապաշտութիւն:*

Յիշատակ արարցուք այսմ՝ զի Հայոց և Վրաց և Ռանաց[1] և Մովկանաց և Հերանաց և Լեկաց և Կովկասեաց և Եգերաց հայր՝ մի էր սոցա, Թորգոմ կոչեցեալ, որդի Թիրասայ, որդւոյ Գամերայ, որդւոյ Յաբեթի,

1 Ռանեանք՝ են Աղուանք, ըստ Վրաց կոչման, որք և զաշխարհն կոչեն Ռանի, որ է Առանն Պարսկաց և Ռան կոչումն Արաբաց, որոյ սահմանք էին 'ի հարաւոյ՝ Երասխ և Կուր, յարևմտից՝ Աղազան, 'ի հիւսիսոյ Կերաւնեան Թևք Կովկասու, և յարևելից՝ ծովն Կասպիական: — ԶԱղուանս և զԼեկս (այժմեան Լեզգիք) յիշէ և ինքն Խորենացի յաշխարհագրութեան իւրում ընդ 50 զանազան ազգաց բնակելոց 'ի Կովկաս, զոր ինքն Սարմատիա կոչէ, առեալ 'ի Պտղոմեայ: Իսկ Եգերացիք են այժմեան Մնկռելք:

որդւոյ Նոյի[1]. և էր նա այր քաջ և հսկայ: Ի յայսմ[2] կործանման աշտարակին և բաժանման լեզուացն, և 'ի սփռիլն մարդկան 'ի վերայ երկրի, եկն բնակեցաւ 'ի մէջ լերանց Մասեաց և Արագածու. որոյ էին բազում կանայք. և ծնան նմա ուստերք և դստերք որդւոց և դստերաց նորա. և եկաց ամս վեցհարիւր: Եւ չբաւէր երկիրն բազմութեան ախի նորա. վասն որոյ տարածեցան և ընդարձակեցին զսահմանս իւրեանց 'ի ծովէն Պոնտոսու մինչև 'ի ծովս Հերեթայ[3] և կասպից, և առ լերամբքն կովկասու:

Եւ ընտրեցան յորդւոց նորա արք ութ արիագոյնք և անուանիք. առաջինն Հայկն, երկրորդն Քարթլոս, երրորդն Բարդոս, չորրորդն Մովկան, հինգերորդն Լեկան, վեցերորդն Հերոս, եօթներորդն կովկաս, ութերորդն Եգրէս: Եւ Հայկն առաւել էր ուժով և քաջութեամբ, որ չեղև նման նմա 'ի վերայ երկրի, ոչ յառաջ քան զջրհեղեղն և ոչ յետոյ՝ մինչև ցայսօր ժամանակի: Սոցա բաժանեաց Թորգոմ զաշխարհն իւր.

1 Բազմաշփոթ տարաձայնութեամբք անուանց և Թուոց և անձանց ընծայեն նախնի պատմագիրք զկարգ սերնդոց որդւոցն Նոյի. իւրաքանչիւր ոք գոգցես զկնի գնալով սեփական աւանդութեան իւրումն ազգի. ոմանց լոկ 'ի տեղի միմեանց փոխանակելով զաւանդեալս 'ի Ս. Գրոց, այլոց յաւելլով նորաձայն և օտար անուանս և անձինս, և կիսոց նուազեցուցանելով զայնս և կամ խաղառ խառնակելով և զԹիւ և զկարգ և զանձինս: Արդ զի մի 'ի տաղտուկ ընթերցանելեաց կրկնել ունիցիմք երկայնաբանութեամբ զառ 'ի բազմաց 'ի բազում տեղիս քաջիկ քննութեամբ աւանդեալս զայսցանէ, ասեմք միայն զի գրիչ պատմութեանս համաձայն ընդ Խորենացւոյն՝ զԹիրաս որդի դնէ Գամերայ՝ որդւոյ Նոյի, մինչդեռ 'ի Ս. Գիրս՝ Թիրաս և որդի անուանի Յաբեթայ և եղբայր Գամերայ. և վերջնոյս որդի աւանդի Թորգոմա: Դարձեալ և ըստ Վարդանայ պատմչի Վիրք սերեալ համարին 'ի Թարշշայ՝ որդւոյ Յաբեթի. մինչդեռ 'ի Ս. Գիրս Թարշիշ որդի ասի Յաւանայ՝ որդւոյ Յաբեթի: Ոչ անհաւատ իմն Թուի յայլմէ իմն անծանօթ մեզ 'ի հնաւանդ աղբերէ քաղելոյ վիպագրաց ազգիս մերոյ և Վրաց՝ զյաջորդութեան կարգ նախահարց, օտար յաւանդութեանց Ս. Գրոց: Գիտելի է դարձեալ զի հաւանելի երևի եթէ բազմաց կարգեալ իցէ 'ի Թիւս նահապետաց և զերկրորդ սերունդս նոցին. որով և առաւել դժուարացուցեալ զխնդիրն, մանաւանդ եթէ վերջինքն համանունք լեալ իցեն ընդ առաջինսն: — Տես զայսցանէ լիովին 'ի բազմահմուտ Սրբազան աշխարհագրութեան Պօշարի, Փալէկ կամ Մաոն առաջին:

2 Այսպէս յօրինակին. Թերևս 'ի ժամ:

3 Զի՞նչ այլ արդեօք մարթ իցէ իմանալ յանուանէ Հէրէթայ ծովու, բայց 'ի ծովէն Վրկանաց:

ետ զկէսն[1] Հայկին. և զկէսն ութանց որդւոցն՝ ըստ արժելոյ Նոցա[2]: Զծմակային[3] աշխարհ հիւսիսոյ՝ ետ Քարթլոսոյ, յարևելից Բերդահոջոյ գետոյն, և յարև- մտից Պոնտոսի ծովն, և 'ի ծմակային կուսէ առ լերամբն Կովկասու, առ Կլարջովք և Տայովք մինչև ցԼեխս[4]: Եւ Բարտոսոյ ետ 'ի նոյն գետոյն Բերդահոջոյ առ կողմամբն կոճր գետոյ՝ մինչև ցծովն, որ մտանեն 'ի նա Երասխ և Կուր գետ միաւորեալք. սա նախ շինեաց զքաղաքն Պարտաւ՝ անուամբն իւրով: Իսկ Մովկանայ ետ 'ի Կուր գետոյ առ կողմամբն հիւսիսոյ առ գլխովն Ալազանոյ՝ մինչև ցծովն մեծ. և նա շինեաց զՄովկանէթ քաղաք: Եւ ետ Հերոսոյ 'ի գլխոյն Ալազանոյ մինչև ցԼիճն Մայրոյ, որ այժմ կոչի Գաղգաղա. և նա շինեաց քաղաք 'ի խառնուրդս երկուց գետոց, և յանուն իւր անուանեաց Հերեթ, և անուն տեղւոյն այժմ ասի Խորանթայ: Իսկ Եգրոսոյ ետ յականջէ[5] ծովուն առ Լիխաւք, մինչև ցծովն արևմտից՝ առ գետովն Խաղարեթոյ՝ ցուրանօր կցի ծովն Կովկասու[6]. սա շինեաց անուամբն իւրով քաղաք զԵգրիս, որ և այժմ ասի Բեդիա: Իսկ լեառն Կովկասայ մինչև ցգետն մեծ Ղումէկ՝ էր անմարդաձայն, ետ զայն, երկուց որդւոց իւրոց Կովկասայ և Լեկանայ[7], որք և անուամբ Նոցա կոչեցան մինչև ցայսօր:

Իսկ Հայկն զՀասարակն ժառանգեաց հայրենիս՝ ասացեալ սահմանօքն. և էր իշխան ութանցն եղբարց, և կային 'ի ծառայութեան Նեբրովթայ հսկայի, որ նախ թագաւորեաց ամենայն երկրի: Իսկ զկնի սուղ ամաց անցելոց՝ 'ի մի հաւաքեաց Հայկն զեղբարս իւր, և ասաց

1 Յօր. ցկէսն:

2 Վախթանգ. « Ըստ կարգի երիցութեան »:

3 Զկողմն հիւսիսոյ երկիր անուն կամ ծմակային կոչեն Վիրք:

4 Ուղղագոյն ևս ցԼիխս, որպէս փոքու ստորև գրէ առ Լիխաւք:

5 Յօր. յականջէ. իմանալի յանկենէ ծովուն:

6 Խառնակ թուի բացատրութիւնդ. Թերևս յաւելլի կցի ծով ծոց Կովկասու, ծովն՝ զոր ուրեմնից ասէ, այն է Սեաւ ծով:

7 Այսպէս ունի զայս բան՝ Քաղուածոյ պատմութիւնն Վրաց 'ի Վախթանգայ, ըստ Թարգմանութեանն Պրոսէի. « Այլ հիւսիսային մասն Կովկասու՝ ոչ անկանէր 'ի բաժնին Թորգոմայ, զի ամենեւին անմարդի էր վայրն. յայսմ անապատ տեղւոջ, որ 'ի Կովկասայ ձգի մինչև ցգետն մեծ՝ որ Թափի 'ի ծովն Դարբանդայ (ծովն Վրկանաց կամ Կասբից), զետեղեաց Թորգոմ զերկոսին հսկայսն զԼեկան և զԿովկաս »:

նոցա. Լուարուք ինձ, հարազատք իմ. ահաւասիկ ետ մեզ Աստուած զօրութիւն և ժողովուրդ բազում. և արդ՝ վասն ողորմութեանն որ 'ի վերայ մեր՝ մի ծառայեսցուք օտարի, այլ Աստուծոյ ճշմարտի։ Եւ հաւանեցան ամենեքեան, ապստամբեալ՝ չետուն զհարկն, արկեալ յինքեանս զշրջակայ ազգսն։ Եւ լուեալ Ներբովթայ՝ բարկացաւ, և արար ամբոխ բազում հսկայից և խառնաղանջից, և դիմեաց 'ի վերայ նոցա, և եկն յԱրարատական յաշխարհն։ Եւ Հայկն կայր իւրայովքն առ ոտն Մասեաց. և առաքեաց Ներբովթ վաթսուն հսկայ՝ յոլովից բազմութեամբ. և խառնեալք 'ի միմեանս՝ ահագին և սաստիկ բախմամբ իբրև զձայն որոտմամբ ամբոց. և եղեն կոտորուած յերկոցունց կողմանցն անթիւ և անհամար։ Եւ Հայկն կայր յետուստ կողմանէ իւրոցն, և սրտապնդեալ քաջալերէր. և ինքն իբրև զկայծակն ապատակէր շուրջանակի, և ընկենոյր զհսկայսն վաթսուն՝ զօրօքն իւրեանց մինչև իսպառ, եւթանեքին հարազատովքն ողջ մնացեալ շնորհօքն Աստուծոյ, և փառք տային փրկողին իւրեանց ամենակալի։ Եւ լուեալ Նեբրովթ՝ խռովեցաւ յոյժ, և դիմեաց ինքնին 'ի վերայ Հայկին։ իսկ նա ոչ ունելով զօրս իբրև զնորայսն, ամրանայր 'ի դերբուկս ձորոցն Մասեաց։ իսկ Ներբովթայ սպառազինեալ կուռ վառեալ յերկաթոյ յոտիցն մինչև ցգագաթն՝ ելանէր յոստ[1] մի բլրոյ, կոչէր զՀայկն յառաջին հնազանդութիւնն։ իսկ Հայկն ոչ ետ պատասխանի նմա, այլ ասէ ցեղբարսն իւր. Ամրացուցէք զիս յետուստ կողմանէ, և իջանեմ ես առ Ներբովթ։ Եւ ինքն երթայր մերձենայր առ նա, և նետիւ հարկանէր 'ի վերայ տախտակաց սրտին, և շեշտակի անցուցանէր թափ 'ի լոյսանցոյցս արեգակնացայտս, և շրջեալ առժամայն փչէր զշունչն. և անկեալ բոլոր բանակն իւր, և տունն Թորգոմայ յանհոգս եղեալ հանգչէին. և թա-

1 Յօր. յոտ, ըստ որում ունի և Թարգմանութիւն Գրոսէի. S' avança *au pied* d' un plateau. որոյ վրիպակ լինել՝ ոչ միայն 'ի նշանակութենէ Էլանէւ բայի, այլ և անտի իսկ է յայտ՝ զի ոչ յոտն այլ յոտ կայ եդեալ, որ յայտնի թերութիւն է ընդօրինակողին։ Մինչ գեռ նոյն ինքն 'ի պատմութեանն Վախթանգայ զնոյն զայս բան թարգմանէ այսպէս. Il monta *sur une hauteur* pour parler à Haos.

գաւորէր Հայկն եղբարց իւրոց, և ամենայն եզրականացն ազգաց[1]։

Իսկ Քարթլոսայ գնացեալ 'ի լեառն որ կոչի Ամրաղ, և անդ շինեաց իւր տուն և ամրոց, և ամենայն աշխարհ նորա կոչեցաւ անուամբ նորա Քարթլա, 'ի Խունանայ մինչև 'ի ծովն Սպերոյ. նա շինեաց զՈրբէթ, որ արդ կոչի Շամշոյտէ, և զաղիւսաշէն բերդն Ղունան։ Եւ կեցեալ ամս բազում՝ վախճանեցաւ, թողեալ հինգ որդիս քաջս. զՄցխեթա, զԳարդբոս, զԿախոս, զԿողքիս[2], զԳաջիս։

Եւ Մցխեթոս էր աւագ նոցա. սա թաղեաց զհայրն իւր 'ի գլուխն Քարթլայ 'ի լեառն Արմազ։ Եւ կինն Քարթլոսայ շինեաց զՄայրաբերդն[3] և զքաղաքն որ կոչի Ուիչա, որ է Պարտիզաքաղաք։ Եւ բաժանեաց հնգից որդւոցն զաշխարհն ամենայն։ Գաջէոսն շինեաց զԳաջէն քաղաք, և Կախոս շինեաց զՋէլթ և զԿախէթ, և Մցխեթոս շինեաց զՄցխիթա քաղաք, և իշխէր չորից եղբարցն։ Եւ եղեն սմա երեք որդիք անուանիք, Օփլոս[4], Օձրխոս, Ջաւախոս, որոց ետ զերկիր ժառանգութեան իւրոյ։ Օձրխէ շինեաց երկու բերդաքաղաք, զՕձրխէ և զԹուխարսի։ Եւ Ջաւախոս շինեաց երկու գիւղաքաղաք բերդով՝ զԾանդայ և զԱրտահան, որ նախ ասիւր Քաջաց քաղաք։ Եւ Ուփլոս շինեաց զՈւփլիսցիխէ և զՈւրբնիս և զԿասպ. մինչ ցՏայոց դուռն սմա վիճակ կոչեցաւ Ներքին Քարթլ։ Եւ շինէին զամրոցսն Թորգոմեանքն սակս երկիւղի Նեբրովթականացն, որք նեղէին զնոսա վասն վրիժուց արեան Նախնոյն իւրեանց Նեբրովթայ. բայց ոչ կարէին յաղթել նոցա վասն միաբանութեան նոցա մինչև ցմահն Մցխիթայի։

Իսկ 'ի մեռանելն Մցխիթայի շփոթեցան ամենայն

1 Որպէս յայտնի երևի չիք ինչ աստանօր նորագոյն կամ օտար յաւանդութեանց մերոյս Պատմահօր. այլ ասէ և անդր զանց արարեալ զերացն Հայկայ և զվեցեցունց եղբարց նորին, առնու պատմել միայն զարարուածս Քարթլոսի և զսերնդոց նորին։

2 Կուխոս ըստ Վրաց։

3 Մայրաբերդ թարգմանութիւն է վրացի անուանն Տէտա-Ցիխէ, որ անկանի 'ի Կախէթ նահանգի. որպէս և Պարտիզաքաղաք է վրացերէնն Պօստան-Քաղաքի. իսկ Ուիչայդ՝ 'ի պատմութեան Վախթանգայ Ուռբնիս անուանի։

4 Ուղղագոյն ևս Ուփլոս, որպէս յետինն։

տունն Քարթլայ ընդ միմեանս, զի ոչ կամէին զՈւփալոսն տիրել 'ի վերայ իւրեանց, զոր կացուցեալ էր Քարթլոսայ[1] հօր իւրոյ 'ի վերայ ամենայն երկրին: Եւ տեւեաց մարտն ժամանակս բազումս. էր՝ զի առնէին արք իմաստունք սակաւ ինչ խաղաղութիւն 'ի մէջ նոցա, և էր՝ զի դարձեալ անկանէր խռովութիւն 'ի մէջ նոցա: Յայնժամ ապա մեծացաւ քաղաքն Մցխեթոյ, և անուանեցաւ մայր քաղաքաց տանն Քարթլայ. և իշխանն որ նստէր անդ՝ տանուտէր[2] կոչիւր ամենայն երկրին. ոչ թագաւոր և ոչ նախարար և ոչ այլ ինչ անուն պատուոյ դնէին 'ի վերայ նորա: Յետ որոյ և մոռացան զԱստուած զարարիչն իւրեանց, և պաշտէին զարեգակն և զլուսին և զեօթն[3] այլ աստեղսն, և երդնուին 'ի գերեզմանն Քարթլոսայ հօր իւրեանց[4]:

1 Այսինքն՝ Մցխիթայի որդւոյ Քարթլոսայ:
2 Վրացերէնն մամասախլիս:
3 Հնգեքեան եւեթ 'ի մոլորակաց ծանօթք էին առ նախնեօք. թուի չփոթեալ գրչին զԵ ընդ Է:
4 Այս ամենայն անցք, ըստ Պրոսէի, անկանին յամսն 2267 կամ 3826 'ի սկզբանէ աշխարհի:

# ԳԼՈՒԽ Բ

*Արշաւանք Խազրաց, և գերել զԹորգոմեանս, և ընդ հարկաւ կացուցանել զերկիր նոցա. — Յաղագս Բիւրասպեայ առասպելին և Արբիտոնի, և կոտորելոյ սորա զԽազիրս, և տիրելոյ երկրին Վրաց, և յաղագս շինութեան Մցխեթա քաղաքի. — Յաղագս խռովութեան տանն Արբիտոնի, և ազատութեան Վրաց 'ի ձեռոյ Պարսից, և վերստին հարկելոյ նոցին. — Յաղագս անցանելոյն Մովսէսի ընդ ծովն Կարմիր. — Վտարանջութիւն Թորգոմեանց 'ի Պարսից՝ միաբանութեամբ ազգաց զաղթելոց 'ի Վիրս. — Յաղագս այլայլութեան հայկական խօսից 'ի Վիրս յազգացն եկելոց, և վատթարելոյ բարուց ազգին. — Յաղագս գործոց Վախրամայ որդւոյ Սպանդիարի. — Յաղագս կազմութեան վրացի բարբառոյ:*

Յայնմ ժամանակի զօրացեալ ազգն Խազրաց[1] կռուէին ընդ ազգին Լեկաց և Կովկասու. որք անկեալ 'ի կարիս՝ խնդիր արարին 'ի տունն Թորգոմայ վեց ազգաց, որք 'ի խնդութեան և 'ի խաղաղութեան կային յաւուրսն յայնոսիկ, գալ օգնել նոցա: Որք և չոգան իսկ յօժարութեամբ և կազմ պատրաստութեամբ, և անցին ընդ լեառն Կովկասու, և գերեցին զերկիրն Խազրաց 'ի ձեռն Դուծուկին, որդւոյն Տիրիթիսայ՝ որ կոչեաց զնոսա յօգնականութիւն: Զկնի այսորիկ դարձեալ ժողովեցան Խազիրք, և եդին իւրեանց թագաւոր, և եղեն բանակ մեծ, և ելին ընդ Դուռն Դարբանդու 'ի վերայ Թորգոմայ՝ մինչև ցԱրարատու դաշտն և Մասեաց, և կոտորեցին և գերեցին զնոսա, զի էին անբաւք: Եւ մնացին միայն բերդաքաղաքքն ծմակայինք, և Մոխրաբերդն[2], Խունան, և Սամշուլտէ և Դաբի և Է-

1 Խազիրս կամ Խօզարս կոչէին նախնի Վիրք զՍկիւթացիս, և զերկիր նոցա Խօզարէթի, Սարմատիա և Սկիւթիա կոչեցեալ 'ի մերայնոց. յոր և արշաւեալ Հայոց՝ հարուածս հասուցին անհնարինս 'ի վերայ ազգին. որոց 'ի վերջ քինու վառեալ՝ միաբանեալ ընդ այլոց Հիւսիսականաց 'ի զանազան ժամանակս անցին բազմութեամբ ընդ դրունս Ալուանից, և գերեցին զՀայս և զՎիրս:

2 Պրոսէ կամի ընթեռնուլ Մոյրաբէրդն Խոանան:

գրիս։ Եւ զտին խազիրքն դուռն մի այլ, որ ասի Դա-
րիալայ[1]. և յաճախեցին զգալն ասպատակաւ 'ի վե-
րայ Թորգոմայ, և պրարին ընդ հարկաւ։ Եւ զառաջին
գերեալսն 'ի Հայոց և 'ի Վրաց՝ ետ Թագաւորն խազրաց
որդւոյ իւրոյ Ուովբոսի, և մասն ինչ 'ի Կովկասու՝ յՂա-
մեկայ գետոյն մինչև ցապառումն լերինն առ արև-
մտիւք։ Եւ շինեաց Ուովբոս ազգաւն իւրով զերկիրն՝
որ կոչի Օսէթ։ Իսկ Դերձուկ ոմն, այր երևելի յորդւոցն
Կովկասու, չոգաւ ամրացաւ յանձուկս լերինն, և տայր
հարկս Թագաւորին խազրաց. և կոչեաց զանուն տե-
ղւոյն՝ Դուրձկէթ։ Այլ և նոյն Թագաւորն խազրաց ետ
հօրեղբօրորդւոյն իւրոյ զմասն ինչ Լեկանայ, 'ի ծովէն
Դարբանդայ յարևելից՝ մինչև ցգետն յարևմտից կողմն
Եկայ, տալով նմա գերիս յԽանայ և 'ի Մովկանայ. և
շինեաց նա անդ իւր բնակութիւն։ Իսկ Խուզունի ոմն,
յորդւոցն Լեկանայ, եկ 'ի փապարս լերինն, և շինեաց
քաղաք իւրով անուամբն զԽուզունիս։ Եւ անցեալ 'ի
վերայ ժամանակս բազումս՝ եղեն ամենայն ազգն հիւ-
սիսոյ ընդ հարկաւ խազրաց։

Եւ յետ այսորիկ աճեաց ազգն Նեբրովթայ 'ի
կողմն արևելից, և յայտնեցաւ այր մի 'ի նոցանէ Ա-
բրիտոն[2] անուն. զորմէ ասեն թէ կ[illegible]եաց աղանդովք[3]
զիշխանն օձից յերկաթս, զկոչեցեա[illegible] Բիւրասպի, յան-

1 Երեք գլխաւոր Դրունք կամ Պահակք յիշին 'ի Կովկաս ըստ
աշխարհագիր պատմագրաց. առաջին և ծանօթն քան զայլս Պա-
հակն Դարբանդայ, որ և Պահակ Հոնաց, Դուռն Աղուանից, և կամ
Ալանաց, և կամ Կասպից, ('ի Թուրքաց՝ Տէմ[illegible]-Գափու, և յԱրա-
բաց՝ Պապ-իւլ-Էվպապ). երկ[illegible]որդ՝ Պահակն [illegible] (այժմեանն Ճա-
րոյ Պէլոգան), և երրորդ՝ Դուռն Դարիալայ, կամ Դուռն Կովկա-
սու, զոր, ըստ բանից պատմչին, երևի դնեալ նախ Խազրաց։ Զդը-
րեց և զանուանց Դրանցս կարի յոյժ են կարծիք և ընդդիմախօսու-
թիւնք առ գիտունս, զորոց օտար համարիմ 'ի մէջ բերել աստանօր
զթուխս իւրաքանչիւր, որք փոխանակ պարզելոյ՝ առաւել ևս դժուա-
րակնճիռն ընծայեն զլուծումն խնդրոյն։ Զայս և եթ ոչ անդէպ հա-
մարիմ յիշել զի առ բազումս Դուռն Ճորայ՝ նոյն համարի ընդ Դար-
բանդայ (Տէրպէնտ) կամ Դրանն Հոնաց, զոր արքայք մեր Արշակու-
նիք զգուշութեամբ պահէին ընդդէմ հրոսակին Հոնաց. յետ որոյ
անցեալ 'ի ձեռս Աղուանից՝ կոչեցաւ յանուն սոցա Աղուանից
Դուռն։

2 Առ Խորենացւոյ՝ Հրուդէն անուանի, որ է Ֆէրիտուն։

3 Այս է՝ կախարդական հնարիւք։

բնակ լերինն Բայխայ [1], որպէս և գրեալ է 'ի մատեանս Պարսից։ Սա արար ընդ Հարկաւ [2] զպայքս բազումս, և տիրեաց տանն Պարսից, և առաքեաց զզօրագլուխն իւր 'ի ծննդոցն Նեբրովթայ յերկիրն Վրաց, որ եկեալ աւերեաց զքաղաքս և զբերդս, և կոտորեաց՝ զորս եգիտ 'ի խազրաց, և տիրեաց երկրին։ Սա շինեաց յեզր ծովուն զԴարուբանդ, որ է փակեալ-դուռն։ Այս Ազարմոս [3] շինեաց կրաշաղախ վիմօք զՄցխիթա, և սկիզբն արար պարսպոյ յԱմրազ լեառնէ մինչև ցգետն Կուր։ Եւ ոչ գիտէր տունն Վրաց՝ որ է Քարթլ, զարուեստ կրոյ և քարի մինչև ցայս։

Իսկ 'ի բաժանելն Աբրիտենայ զհնազանդեալսն իւր՝ երից որդւոցն, ետ զՊարսիկս և զՎրացիս միոյ որդւոյն, որոյ անուն էր Իարեդերախ [4]։ Եւ Ազարմոս կեցեալ իշխան Վրաց ամս յոլովս, և զկնի նորա այլ ևս չորք գլխաւորք փոխեցին զտեղի նորա։ Յետ որոյ անկաւ խռովութիւն յորդիսն Աբրիտենայ, և սպանին երկու եղբարքն միաբանեալք զԱրիադարեխ։ Եւ գտեալ ժամանակ վիրք, ածին յօգնութիւն զՅօսքն, և սպանին զգլխաւորն Պարսից յանդի 'ի զբօսանս, և զայլ ևս զօրս նորա կոտորեցին, և եղեն անհոգս 'ի Պարսից։ Բայց երկիրն Ռանայ և Հերեթոյ մնայց առ Պարսից։ Յետ այնորիկ դարձեալ զօրանայր թագաւորն Պարսից, որոյ անուն էր Քեկապոս. և եկն 'ի Մովկան և 'ի Հերեթ, և խորհէր մտանել 'ի Լեկեթս. այլ գլխաւորն Լեկաց էր ազգային Խուզանիխոյ, և էր կախարդ. որ և դիւթութեամբ կուրացոյց զՔեկապոս և զօրս իւր. և դարձան յետս, և ապա բացան աչք նոցա, և արարեալ ընդ հարկաւ զՎրաց երկիրն՝ գնացին [5]։

1 Առ Խորենացւոյ՝ Դըմբաւընդ։ Տես զբովանդակութիւն առասպելին 'ի Խոր. էջ 131–136։

2 Յոր. Ընդ յարկաւ։

3 Յոր. Ազարմոս. լաւագոյն Արդամոս, որպէս գրի 'ի Քաղուածոյսն Վախթանգայ։

4 Նոյն անուն է՝ և զոր վրիպանօք, կարծեմ, [illegible]քու ստորև գրէ Արիադարեխ՝ ձայնաւորայն ընդ իրեարս փոխանակութեամբ։

5 Այսպէս աւանդէ Որբելեան (կե. 270) զանցս այսր ժամանակի. «Եւ էր կացեալ յայնմ ժամանակի պետ աշխարհին վրաց Արգարմոս պարսիկ, հրամանաւ Աբրիտոնայ, որ տիրեալ էր Պարսից և Վրաց և Աղուանից։ Այս այն Արգարմոս է, որ շինեաց վերըս-

Յայնմ ժամանակի սփռեցան զրոյցք զարմացման եթէ Մովսէս, բարեկամն մեծին Աստուծոյ, անցոյց ընդ ծովն կարմիր ազգս երկոտասան, բիւրք վեց [1], և կան 'ի Սինա անապատի, և ուտեն մանանայ՝ հաց 'ի յերկնից իջեալ։ Եւ լուեալ զայս՝ ամենայն հեթանոսաց, գովէին և օրհնէին զԱստուածն իսրայելի։

Յորում ժամանակի միաբանեալ ընդ Հայոց՝ ամենայն ազգին Թորգոմայ, 'ի բաց կացին 'ի Պարսից, ամրացուցեալ զքաղաքս և զգղեակս։ Եւ զչարեալ Քեկապոս՝ առաքեաց 'ի վերայ Թորգոմայ զզօրագլուխն իւր զՓարաբորոտ զօրօք բազմօք. և գնացեալ ընդ առաջ նոցա Հայոց և Վրաց, գտին զնոսա յԱտրպատական, և հարեալ 'ի դիմի՝ կոտորեցին զբազումս. և փախեաւ Փարաբորոտն սակաւուք։ Եւ սրտմտեալ Քեկապոս, արձակեաց զԹոռն իւր, զորդին Բիւրաբու Գեզեցկի՝ սպանելոյ 'ի Թուրքաց, որում անուն էր Քուէ Խոսրով. և ոչ կարացին դիմանալ նմա Հայք և Վիրք, այլ կոխան եղեն ոտից նորա առհասարակ [2]։ Եւ կարգեաց իւր գործակալս, և շինեաց յԱտրպատական տուն աղօթից ըստ դենին իւրեանց, և գնաց յերկիր իւր. և սկսաւ կռուել ընդ Թուրքաց, որք սպանին զհայր նորա։ Եւ փախեան 'ի նմանէ արք ոմանք 'ի Թուրքաց՝ տուն քսան և ութ [3], և եկին առ տանուտէրն Մցխե֊

թին զՄցխիթա, և պարսպեաց կրաշաղախ վիմօք, և եդ պարիսպ յԱրմազ լեռնէ մինչ ցգետն Կուր։ Յետ վախճանին սորա արք չորք տիրէին Վրաց, և խռովութիւն և ապականութիւն տիրէր ամենեցունց առհասարակ, էր որ 'ի Քէքաւուս Խոսրովոյն, և էր որ զկնի նորա 'ի Քուէ Խոսրովոյն։ Եւ էին Վիրք 'ի մեծ վշտի, և կային յուսահատեալք յամենայն կողմանց»։

1 Այսինքն է՝ վաթսուն հազար, փոխանակ զի պարտ էր գնել ըստ Թուոց մատենին գէթ վեցհարիւր հազարս։

2 Այս ամենայն անցք յիշատակին և 'ի Շահ-Նամէն Պարսից ոչ սակաւ ինչ այլայլութեամբք դիպաց և փոփոխութեամբք անուանց։

3 Ս. Մարգէն, յեցեալ 'ի վկայութիւն Ստեփաննոս Օրբէլեան, զգաղթականութիւնս զայս նոյն համարի ընդ Ճենազն Ճենբակուրեանցն, որք յետոյ ժամանակաւ Օրբէլեանք կոչեցան 'ի Վիրս։ Այս ենթադրութիւն անհիմն երևի. քանզի 'ի Քաղուածոյան Վախթանգայ ընդ ծով անցանել դալ սակ զԹուրքաց (որք և պարզապէս Թուրք անուանին, գաղթեալք, որպէս կարծի, յափանց Վոլկայ գետոյ), մինչդեռ Օրբէլեանն աւանդէ զի «օդապարիկ երիվարօք սրա֊ վաւէջ լերամբ անցանեն ընդ բազում աշխարհօք... անցեալք ընդ դուռն

թոյ, և խնդրեցին 'ի Նմանէ քարայր մի յարևելից կուռէ քաղաքին, և պարսպեցին զնա տուն բնակութեան իւրեանց, և կոչեցին Սարակինէ, որ ասի Երկաթահանք: Եւ զի անպարապ էր Քուէ-խոսրով 'ի Հայոց և 'ի Վրաց, յայսմանէ ոյժ առեալ կոտորեցին զիշխանսն Պարսից, և կազմէին զամուրս:

Ի նմին ժամանակի եկին փախստականք ոմանք 'ի Ցունաց և յԱսորոց և 'ի Խազրաց, նեղեալք 'ի թշնամեաց իւրեանց՝ յերկիրն Վրաց. և ընկալան զնոսա յաղագս օգնելոյ նոցա ընդդէմ Պարսից: Զայնու ժամանակօք եկին և Հրեայքն զերծեալք 'ի Նաբուգոդոնոսորայ, որ գերեալ էր զԵրուսաղէմ[1]. և խնդրեցին 'ի տանուտեառնէն Մցխիթոյ տեղի հարկելոյ. և ետ նոցա 'ի վերայ գետոյն Արագոյ՝ աղբիւրն որ կոչի Զանաւ, և արդ իսկ ասի Խերկ՝ վասն հարկելոյն: Եւ մինչև ցայս վայր հայերէն (էր) լեզուն Վրաց. և ապա սկսան այլայլիլ յազգացն՝ որ բնակեցան 'ի մէջ նոցա, և եղև ամենեցունցն խառնակել, և յայս միացեալ՝ որ այժմ ասի վրացերէն: Եւ յայնմհետէ ընտրեցին կրօնս և վարս անպարկեշտս և զալիր քան զամենայն ազգ: Զի յամուսնութիւնն ընտրութիւն ազգի ոչ առնէին, և զամենայն զեռուն կայտառ ուտէին, և զճճիս և զմեռեալս, և ոչ գոյր նոցա գերեզման[2]:

Իսկ զկնի այսորիկ եկն դարձեալ այլ ոմն թագաւոր Պարսից՝ Սպանդիար անուն, որդի Վաշդապիշոյ, 'ի վերայ Հայոց և Վրաց. և 'ի գալն յԱտրպատական՝ լուաւ բօթ գուժի եթէ սպանին ազգն Թուրքաց զհօրեղբայր նորա, և դարձաւ անդրէն 'ի Թուրքաստան, և հանգեան Հայք և Վիրք: Զկնի այնորիկ թագաւորեաց Պարսից՝ Վահրամ, որդի Սպանդիարին, որ և

Դարիալայ»: Եւ զի՞նչ հարկ կայցէ մի և նոյն համարել, և ոչ 'ի նմին ժամանակի որիշ 'ի միմեանց երկուց գաղթականութեանց տեղի ունել:

1 Ըստ Վուլկադային 600 ամօք նախ քան զՔրիստոս, և ըստ ժամանակագրութեան Պոսիւէի յամս աշխարհի 147:

2 Զայսպիսի բարբարոսական վարս յիշատակեալ գտանեմք և 'ի Խորենացւոյ՝ ևս և յազգս աշխարհիս Հայոց, Թափուրս գոլով ամենևին 'ի կարևոր անգամ կենցաղօգուտ արուեստից՝ նախ քան զԱրտաշէս Բ, և «Ըստ օրինակի հիւսիսականաց կողմանց՝ շաղղակերութեամբ և այլովք այսպիսեօք կեցեալք». Բ. ԾԹ, 281:

Արտաշէս [1] . որ առաւել եղև զօրութեամբ քան զամենայն թագաւորսն Պարսից , որ էառ զԲաբելոն , և ընդ հարկաւ արար զԱսորեստան և զՅոյնս և զՎիրս :

Եւ յայնմ ժամանակի խօսէին 'ի Վիրս վեց [2] լեզու , հայերէն և խազրի , ասորի և եբրայեցի , յոյն , և որ 'ի խառնից նոցա հաւաքեցաւ՝ վրացին :

1 Այսինքն՝ Վահրամ, որ և Արտաշէս . և է սա ինքն , ըստ Վախուշտ պատմագրի Վրաց , նոյն ինքն Կիւրոս մեծն , 530 ամօք նախ քան զՔրիստոս :

2 Պրոսէ Թարգմանէ . Զամենայն ազգ լեզուաց : Վախթանգ համաձայն ունի ընդ մերոյս օրինակի վեց լեզու :

# ԳԼՈՒԽ Գ.

*Արշաւանք Աղեքսանդրի Մակեդոնացւոյ 'ի Վիրս, և կացուցանել զԱզոն 'ի վերայ երկրին. — Ազոնի ընդ հարկաւ առնել զազգսն շրջակայս. — Բաժանել Աղեքսանդրի զտէրութիւն իւր 'ի չորս մասունս, և կարգել իշխանս 'ի վերայ նոցա. — Բռնաւորութիւնք Ազոնի և ապստամբութիւն Վրաց՝ առաջնորդութեամբ Փառնաւազայ. — Յաղագս կատարման երազոյն Փառնաւազայ և միաբանութեան ազգաց ընդդէմ Ազոնի. — Մահ Ազոնի և թագաւորել Փառնաւազայ. — Յաղագս գործոց Փառնաւազայ և մահուան նորա. — Արքայութիւն Սայուրմակայ, որդւոյ Փառնաւազայ, և մահ նորա։*

Յայնմ ժամանակի ամբարձաւ մեծն Աղեքսանդր, որդի Նեքտանեբոյ [1] Եգիպտացւոյ՝ յաշխարհէն Մակեդոնացւոց, որ կալաւ ընդ ձեռամբ զերիս անկիւնս երկրի։ Սա եկն յարևմտից առ հիւսիսիւ, և շրջեալ ընդ արևելս՝ եմուտ 'ի ծմակային երկիրն, և էանց ընդ կովկասու լեառն յաշխարհն Վրաց [2]. և հիացաւ ընդ

1 Խորենացի. «Նեքտանեբոսս այս վերջին թագաւոր է Եգիպտացւոց 'ի Մանեթոսէ պատմեալ, զոր ոմանք հայր Աղեքսանդրի ասացին»։ Անշուշտ յասելն ոմանց՝ 'ի նոսին իմանայ և զգրիչ Պատմութեան Աղեքսանդրի, ոչ անծանօթ ինքեան եղելոյ, յորում օձով իմն պատմի գալուստ Նեքտանեբեայ 'ի Մակեդոնիա, և ամենայն հնարք ճարտարութեան զՈղիմպիա մայր ցուցանելոյ Աղեքսանդրի, մինչդեռ Փիլիպպոս հեռագոյն 'ի գործս պատերազմի զբաղեալ կայր։ Այս աւանդութիւն և առ բազումս 'ի հնոց գտանի, ուստի և ոչ իսպառ խոտելի։

2 Դժուարին յոյժ թուի ինձ միաբանել զընթացս արշաւանացն Աղեքսանդրի և զպլութիւն ժամանակին՝ ընդ դրից աշխարհին Վրաց, որով և ընդ մտանելոյ նորա անձամբ 'ի Վրաստան. թող զի, որչափ ծանօթ է ինձ, բաց 'ի պատմութենէն Աղեքսանդրի՝ գրելոյ առ մեզ, չիք այլ ուրեք այսր յիշատակութիւն առ մատենագիրս, որք մանր ճառեցին զգործոց Աղեքսանդրի։ Ոչ ինչ դժուարին հաւանել եթէ միոյ 'ի զօրավարացն նորա կարացեալ իցէ մտանել յերկիրն Վրաց, և զամենայն աւանդեալսն 'ի մատենագրէն՝ յանուն Աղեքսանդրի գործեալ, բայց ինքնին Աղեքսանդրի գալ պաշարել զՄցխեթա՝ առասպելապատում երևի։

զազիր կեանս Նոցա։ Եւ զի ետես ամրոցս բազումս, և աշխատեաց զզօրս իւր ամիսս վեց յառնուլն զնոսա, զՄունդա, զԽերդիս, զՍնձրրխէ՝ կառուցեալ ընդ քարին Լադասայ, զԹուղարս՝ 'ի վերայ գետոյն Սպերայ, որ ասի Ճորոխ [1], զՍւրբնիս, զկասբ, զՍւփլիոցիխէ, որ ասի Ցեառն բերդ, զՄցխիթա, զԹաղքն՝ որ Սարակինա կոչեցաւ, զՑիխէդիդ՝ որ է Բերդ Մեծ, և զՋաւանոյ Թաղն Հրէից, զՌիշա, զՄայրաբերդն, զՇամշուռէ, և զկուր գետոյն բերդն՝ Խունան. յորս եգիտ կռուողս կորովիս. և 'ի սոսա յամենեսեան բաժանեաց զզօրս իւր, և ինքն Նստաւ 'ի տեղւոջն՝ որ կոչի Աստադի։ Բայց ընդ բերդսն Թուղարսոյ և Խունանայ ոչ մարտեաւ, զի անառիկ էին։ Իսկ զՍարակինեցիսն պաշարեաց զերկոտասան ամիս, զի Նախատեցին զԱղեքսանդր, և ոչ դնէր ընդ Նոսա դաշն, մինչև ծակեցին զկակուղ անձաւ այրին ընդ այլ կողմն, և ելին ամենեքին, և փախեան 'ի Կովկաս 'ի գիշերի։ Իսկ յայլոց անտի կոտորեաց զբազումս, և գերեաց կանայս և մանկտիս անմեղս, մինչև ցերկոտասանամեանս [2]։ Եւ կացոյց 'ի վերայ երկրին պատրիկ՝ որ է աւագ, զայր մի Մակեդոնացի՝ Ազոն կոչեցեալ, տուեալ Նմա զօրս հարիւր հազար, որք էին փրոտիտոսիկ [3] քաջակորովք և բռնամարտիկք, որք և սաստիկ Նեղէին զՑոյնս յաշխարհին իւրեանց. վասն որոյ հեռացոյց զնոսա անտի, և ետ 'ի ձեռս Ազոնի. և Ազոն կացոյց 'ի Նոցանէ իշխեցողս ընդ ամենայն երկիրն Վրաց։ Եւ պատուիրեաց Աղեքսանդր Ազոնի՝ պատիւ դնել արեգական և լուսնի և հինգ աստեղացն, և ծառայեսցեն միոյ անտեսին Աստուծոյ՝ ստեղծողին երկնի և երկրի. և զայն օրինադրրէր ամենայն երկրի, քանզի ոչ գոյր քարոզ ճշմարտութեանն յաւուրսն յայնոսիկ։

Իսկ Ազոն քակեաց զամենայն ամուրսն յաշխարհին Վրաց, թողեալ չորս բերդս 'ի դրանն Վրաց,

1 Յօրինակին Ճորոխ։

2 Ըստ Վախթանգայ և ըստ Թարգմանութեանն Պրոսէի սոյդ Թուի լինել ցերկոտասանամեայս. այլ 'ի գաղափարողէ օրինակիս՝ որ ունի ցհնգետասանամեայս, կարծեմ, ԺԲ ընթերցեալ է ԺԵ։

3 Προτακτός — Առաջնակարգ. զինուորք՝ որ առ Յոյնս յառաջնում գծի բանակին կարգէին։

ցեալ զօրօք զնոսա։ Եւ արար ընդ հարկիւ զԼեկս, զՕսս և զԽազրիկս. և տիրեաց ամենայն վրաց՝ 'ի կողմանց Հերեթոյ և Բերդահողջոյ մինչև 'ի ծովն Սպերոյ։

Եւ Աղեքսանդր թագաւոր ամս երկոտասան հնազանդեալ զաշխարհ, և յերկոտասան ամին[1] արձակեաց յաշխարհն իւրեանց զպատանդսն՝ որք էին ընդ նմա 'ի ծառայութիւն։ Եւ բաժանեաց զիշխանութիւն իւր չորից ազգականաց իւրոց. Անտիոքու՝ որ զԱնտիոք շինեաց՝ ետ զԱսորեստան[2], և Հռոմոսի՝ զՅոյնս յարևմտից, որ շինեաց քաղաք իւրով անուամբն, և Բիւզանդոսի՝ որ զԲիւզանդիոն շինեաց՝ ետ զԹրակիա, զԲիւթանիա և զՎիրս. և գրեաց առ Ազոն՝ զի ծառայեսցէ զԲիւզանդոս։ Եւ զՊղատոն (Պտղոմէոս) արձակեաց յԵգիպտոս, տալով նմա զԱղեքսանդրիա. և ինքն վճարեաց զկեանսն։

Իսկ զկնի այնորիկ մոռացաւ Ազոն զհաւատն տուեալ յԱղեքսանդրէ, և արար երկու կուռս արծաթի, Գացիմ և Գայիմ անուանք նոցա, և պաշտէր զնոսա։ Եւ էր այր բռնաւոր և արիւնասէր, և ծառայէր Բիւզանդեայ։ Եւ եդ օրէնս Ազոն իւրոցն, զի որ ոք գտանէ 'ի վրաց ազգէ ընչեղ և հաստակեղ և աջողեալ՝ սպանցեն զնա, և առցեն զինչսն։ Եւ դարձաւ 'ի Յունաց, և եհար 'ի նոցանէ զբազումս[3]։

Յայնժամ ընտրեցաւ այր մի յորդւոցն Մցխիթոյ՝ փառնաւազ[4] անուն, պարսիկ մօրէ Սպահանեցւոյ. և էր նա որդի քեռ Սամարոսի, որ տանուտէր էր Մցխիթոյ 'ի գալն Աղեքսանդրի, զոր և սպանն իսկ։ Եւ էր

1 Յօրինակին 'ի հնգետասան ամին, որ վրիպակ է յայտնի, քանզի ժամանակ թագաւորութեանն Աղեքսանդրի ձգեցաւ բովանդակ ընդ ամս երկոտասան և ընդ ամիսս ութ։

2 Վախթանգ յաւելու. « Եւ զՀայաստան և զամենայն երկիրն արևելից »։

3 Այսինքն՝ օտարացաւ և 'ի Յունաց, ըստ օրինակին զոր առ Վրացիս, խուժաբարոյ վարելով և ընդ նոսա, ըստ բանից Վախթանգայ։

4 Աստի սկիզբն առնու առաջին հարստութիւն Փառնաւազեանց կամ Քարթլոսեանց։ Առ իւրաքանչիւր 'ի նոցանէ կարգեսցուք 'ի ստորև, ըստ Պրոսէի, զժամանակ և զամս թագաւորութեանն, սկիզբն արարեալ 'ի Փառնաւազայ, որ եկաց 302-237 ամօք նախ քան զՔրիստոս, և թագաւորեաց զամս 65։

փառնաւազ մտաւոր և որսորդ աջողաձեռն. և եղև ծանօթ Ազոնի։ Եւ մայրն փառնաւազայ ասէր՝ մի յայտնել զինքն Ազոնի, այլ տար զիս, ասէ, յԱսպահան առ եղբարս իմ, և ապրիս դու ընդ իս. և ոչ ախորժէր փառնաւազ թողուլ զհայրենիս իւր։ Եւ տեսանէր երազ, որպէս թէ կայցէ նա 'ի տան Նեղադունի, և խորհէր ելանել, և ոչ կարէր. և յանկարծակի ծագէր շող արեգականն ընդ պատուհանն, և պատէր զմիջով նորա, և քարշէր զնա 'ի դուրս։ Եւ յելանելն՝ մերձ տեսանէր զինքն արեգականն, և սրբէր զքիրտն, և օծանէր զերեսս իւր. և զարթուցեալ զարմանայր։ Եւ դնէր ապա 'ի մտի՝ թէ երթամ յԱսպահան՝ բարի լինի ինձ, և խորհեցաւ գնալ։ Եւ 'ի նոյն աւուրն ելանէր յորս միայն, և ետես երէ մի 'ի հեղեղատն Տփխեաց, և եհար զնա նետիւ, և անկաւ երէն 'ի կիճ մի քարի. և նա զկնի նորա գնաց։ Եւ եմուտ արեգակն և մնաց անդ զգիշերն. և եկն անձրև ձիւնախառն, և խնդրէր փառնաւազ հովանի. և ետես անդ լցեալ քարամբք մուտ մի 'ի հին ժամանակաց, և էր խախտեալ. և բացեալ՝ ետես այր մի ընդարձակ, լցեալ գանձիւք ոսկեղինօք և արծաթեղինօք. և խնդացեալ՝ յիշեաց զերազն։ Եւ չոքաւ կոչեաց զմայրն իւր և զերկուս քորսն. և պեղեցին ըզգանձն հնգետասան գիշերս [1], և պահեցին ընդ ձեռամբ 'ի զանխուլ տեղիս յայլ և յայլ։ Եւ առաքեաց փառնաւազ առ Քուջիս [2], և ասէ ցնա. Կայ մօտ առ իս խաչն. թէ կամիս՝ գամ առ քեզ, և տանիմք զսա 'ի բան. արդ, է նա հակառակ Ազոնոյ, և յոյսն մեր բարւոյ՝ տայ մեզ յաղթութիւն [3]։ Եւ իբրև լուաւ Քուջիս՝ խնդաց և ասաց. Ե՛կ առ իս, և ստանամք 'ի խաչնէդ զօրս ընդդէմ Ազոնի [4], և զուարճանայ տունս Վրաց. և ձեռն տան մեզ Յոյնքն, զի ապստամբեաց 'ի նոցանէ Ազոն։ Եւ չոքաւ փառնաւազ ընտանեօքն իւրովք առ

1 Պրոսէ Թարգմանէ 'ի նմին գիշերի։ Վախթանգ հինգ գիշեր։

2 Առանց կանխեալ բանից զառնէս՝ իբրև ծանօթ զոմն յիշէ ըզնա, որ թուի իշխան ոք լինել 'ի քարթլոսեան սերընդենէ։

3 Բովանդակ այս բանք անկցորդք՝ անշուշտ այլաբանական իմն ունիցին իմաստս։

4 Խառնակ է բանս. կամիցի թերևս ասել զի 'ի ձեռն խաչինն՝ զօրս ժողովեսն ընդդէմ Ազոնի։

Քուջիս, և ընկալաւ զնա խնդութեամբ, և ասէ նոցա. Ի նախնեաց տանուտերաց տանն Վրաց ես դու, և վայել է քեզ իշխանութիւնն. և արդ, դու տէր, և ես ծառայ քո: Եւ նոյնհետայն ազդ արարին Լեկաց և Օսից. և յոյժ ուրախ եղեն, որպէս ձանձրացեալք 'ի հարկատրութենէն Ազոնի: Եւ ժողովեալք 'ի միասին՝ եկին առ նոսա բազմութիւն յոյժ հեծելոց. նոյնպէս եկին և յԵգերաց: Լուաւ զայս Ազոն, և ժողովեաց զզօրս իւր. և հազար այր հատուածեալ 'ի զօրաց նորա՝ գնաց առ Փառնաւազ, որք էին Յունաց: իսկ Ազոն անվստահ եղեալ 'ի մնացեալ զօրսն, փախեաւ յամուրսն կլարճեթոյ: իսկ Փառնաւազ չոգաւ 'ի Մցխիթա, և էառ զնա և զչորս բերդն որ առընթեր, զամենայն վիրս յամի միում: Եւ արձակեաց դեսպանս առ Անտիոքոս բազում ընծայիւք, և խնդրեաց օգնութիւն ընդդէմ Յունաց. և խոստացաւ ծառայել նմա: Եւ Անտիոքոս ընկալաւ զբանս նորա յօժարութեամբ, և անուանեաց զնա որդի իւր. և առաքեաց նմա թագ, և հրամայեաց իշխանացն Հայոց օգնել նմա:

Իսկ 'ի գալ միւսոյ ամին, միաբանեցաւ Ազոն ընդ Յունաց. և արար ժողով բազմութեան հեծելոց՝ 'ի վերայ Փառնաւազայ: Եւ նա զիւրսն ժողովեաց. և եկն նմա զօր յԱնտիոքու: Եւ յառաջեաց քան զԱզոն 'ի քաղաքն և յերկիրն Արտահանու, որ յայնժամ ասիւր Քաջաց-Քաղաք. և անդ դիպեցան միմեանց. և յաղթեցաւ Ազոն, և մեռաւ 'ի տեղւոջն. և հարան զօրքն Յունաց: Եւ գնաց Փառնաւազ 'ի կողմանս Յունաց, և գերեաց զԱնձի, և զԱնձուրա և զԵլեկացիս, և դարձաւ 'ի կլարճէթ, և էառ զնա, և եկն 'ի Մցխիթա մեծաւ ուրախութեամբ. և գրաւեաց զամենայն գանձն Ազոնի, և մեծացաւ յոյժ: Եւ ետ զքոյր իւր 'ի կնութիւն Օսաց թագաւորին, և զմիւսն Քուջիսոյ. և ետ նմա 'ի Գեռոջրոյն ցեւրիանայ [1], միջնածովէն մինչև ցլեառն մեծ, որոյ ներքոյ կան Եգերացիք և Սոնք. և անհոգացաւ 'ի թշնամեաց: Եւ Քուջիս շինեաց զբերդն Քուջի:

1 Այսպէս յօրինակին. իսկ Պրոսէ թարգմանէ 'ի Գուրէջրոյն Եջեւանայ. չիցէ՞ թերևս լաւագոյն ընթեռնուլ 'ի գետոյ Ջրոյն Երեւանայ:

Եւ սահմանեաց Փառնաւազ կողմնակալս ութ, և սպարապետ մի 'ի Լեխս, որ շինեաց երկու բերդ՝ զՇարան և զԴիմից. և զերկրորդն առաքեաց 'ի Կախէթ, և զերրորդն 'ի Բերդահողջոյ մինչև ցՏփխիս, և զԳաջէնքն՝ որ է Դարդաբան. և զչորրորդն առաքեաց 'ի Շամշոյտէ, և ետ նմա 'ի Սկակուրեթոյ մինչև ցՏաշիր և ցԱպոցք[1]. և զհինգերորդն առաքեաց 'ի Ծունդիս, 'ի փարաւնոյ մինչև 'ի գլուխն կուր գետոյ, որ է Ջաւախէթ, և ցԱրտահան. և զվեցերորդն առաքեաց յՈւնձըրխիս, տալով նմա 'ի Տայոց[2] մինչև ցԱրսիան, և յՈստանայ գլխոյն մինչև ցծովն. և զութերորդն[3] արձակեաց 'ի Քուճաէթ և յեգեր. և կացոյց սպարապետ մի 'ի Տփխեաց և յԱրագոյ մինչև ցՏայոց դուռն, որ է Ներքին Քարթլ: Եւ յամենեցունց զայր հարկ և հնազանդութիւն թագաւորութեանն: Եւ ածին 'ի կնութիւն Փառնաւազայ 'ի Դուրձկայոյ՝ յազգէն կովկասի: Եւ կարգեցաւ աշխարհն նման թագաւորութեանն Պարսից. և ոչ ընդդիմացան Յոյնք, զի անպարապ էին 'ի Հռովմայեցւոցն: Եւ պարսպեաց Փառնաւազ զՄըցխիթա քաղաք, և զաւերեալ ամուրսն յԱղեքսանդրէ: Եւ արար պատկեր մի մեծ յանուն իւր, և նա ինքն է Արմազ. զի 'ի պարսիկ լեզուն Արմազ կոչէին զՓառնաւազ. և կանգնեաց զպատկերն 'ի գլուխն Քարթլոսայ, որ ասի մինչև ցայժմ լեառն Արմազ: Քսան և եօթն ամաց[4] էր 'ի թագաւորելն իւրում, և վաթսուն և հինգ ամ թագաւորեաց խաղաղական և ուրախական կենօք, և ծառայէր Անտիոքու արքայի: Ջաշունն և ըղգարունն առնէր 'ի Մցխեթաս քաղաք, և զամառն 'ի Ջաւախէթ, և զձմեռն 'ի Գանչէնան. և ըստ պահու և ժամանակի մտանէր 'ի Կլարջք և յեգրիս, հոգալով զօգուտ աշխարհաց, զի այր հմուտ և իմաստուն էր նա: Եւ զհազար այր եկեալ առ նա յԱզոնայ՝ բաժանեաց 'ի

1 Յօրինակին Աւզոյ, որ յայտնի վրիպակ է ընդօրինակողին:

2 Ըստ Պրոսէի՝ հայ թարգմանիչն աստանօր և դարձեալ փոքու ստորև՝ զՏասխ-Քարն Կլրաց չփոթեալ է ընդ Տայոց երկրին:

3 Յօրինակին պակասին սահմանք եւթներորդին, որ անկանէր 'ի Կլարջէթ, յԱրսիանէ մինչև ցծովն, ըստ Վախթանգայ:

4 Յօրինակին տասն և հինգ ամաց, վրիպակ փոփոխմամբ ե և է տառից, ուղղեցաւ 'ի Վախթանգայ:

դաւառս Վրաց, և անուանեաց զնոսա Ազոնացիս, և բարի առնէր նոցա։ Եւ ամենայն տունն Վրաց զոհէին պատկերին, և ասէին. Գոհութիւն յուսոյն մերոյ, զի եղև մեզ թագաւոր յազգէն Քարթլոսայ նախնոյն մերոյ։ Եւ եղև որդի փառնաւազայ, և կոչեաց զանուն նորա Սայուրմակ. և էր փառնաւազ առաջին թագաւոր յազգէն Քարթլոսայ. սա ետ հրաման ամենայն երկրին խօսել զլեզուն Վրաց [1]. և մեռաւ, և թաղեցաւ առաջի կռոց իւրոց Արմազայ։

Եւ թագաւորեաց որդի նորա 'ի նոյն ամին. և խորհեցան իշխանքն Վրաց սպանանել զՍայուրմակ [2], զի մի ծառայեսցեն ազգացն իւրեանց, այլ օտարի՝ որ ոք ամբառնայ զգլուխ իւր։ Եւ իմացաւ Սայուրմակ, և առեալ զմայրն գնաց 'ի Դուրձուկէթ առ եղբարս մօր իւրոյ։ Իսկ Ազոնացիքն կոչեցեալ զօրքն չոքան առ նա՝ վասն երախտեաց հօր նորա։ Եւ կոչեաց առ ինքն ըզՕսաց թագաւորն յօգնութիւն. և չոքաւ և տիրեաց երկրին դիւրութեամբ. և սատակեաց զթշնամիս իւր, և ոմանց եթող զյանցանսն. և մեծացոյց զԱզոնացիս, և նուաստացոյց զՎրացիս. և ած զբազմացեալ կովկասոսի ազգին զհասարակն և բնակեցոյց 'ի Մթշուլէթ՝ որ Սուանէթ. և 'ի սոցանէ արար նախարարս՝ հաւատարիմ կոչելով։ Սա արար պատկերս չորս, Այինինայ և Դանանայ՝ 'ի վերայ ճանապարհին Մցխեթոյ [3]։ Եւ ած զդուստր Պարտաւայ իշխանին՝ իւր 'ի կնութիւն՝ պարսիկ ազգաւ. և ծնաւ նմա երկու դուստր. զմին ետ Միրուանայ մօրաքեռորդւոյ կնոջ իւրոյ պարսկի, և անուանեաց որդի իւր, և զմիւսն ետ որդւոյ Քուջին, որ էր հօրաքեռորդի իւր։ Եւ Սայուրմակն կեցեալ ամս բազումս՝ մեռաւ։

1 Յաւելու ստահօր Պրոսէ 'ի թարգմանութեան իւրում. զորոց և զպատուոյն հնարէից, որ չէք յօրինակի մերում։ Եւ զի այլատարազք են տառք Վրացւոց զինուորականացն և քահանայից, մարթի համարել, ըստ աւանդութեան ազգին, զզինուորացն հնարեալ Փառնաւազայ զտառս։

2 Երկրորդ աղքայ, քարթլոսեան, Ն. Ք. 237–162, ամս 75։

3 Անշուշտ 'ի միասին թուելով և զերկոսին նախայիշեալսն զԳացիմ և զԳայիմ։ Անուանքս այսոքիկ, Այինինա և Դանանա, թուին յիշեցուցանել զանուանսն նոյնանիշս զԱնահիտն Հայոց և զԴիանայն Հռովմայեցւոց։

## ԳԼՈՒԽ Դ

*Յաղագս գործոց Մրուանայ արքայի. — Յաղագս թագաւորութեանն Փառնաջոմայ, և մուծանելոյ 'ի Վիրս զկրօնս Պարսից. — Ապստամբութիւն Վրաց 'ի Փառնաջոմայ օգնութեամբ Հայոց, և յաղագս թագաւորութեան Արշակայ՝ որդւոյ արքային Հայոց, և որդւոյ նորա Արտակայ. — Վրէժխնդրութիւն Պարսից 'ի Վրաց վասն արեանն Փառնաջոմայ. — Յաղագս թագաւորութեան Բարտոմի և մահուան նորա, և որ ինչ անցք զկնի մահուան նորա անցին 'ի Վիրս, մինչև ցթագաւորութիւն Մրուանայ, և որդւոյ նորա Արշակայ. — Պատերազմ Արշակայ ընդ Ադրըկայ, և յաղագս թագաւորութեան նորա. — Ծնունդ Քրիստոսի Տեառն մերոյ, և յաղագս անցիցն անցելոց առ Հրէայս 'ի Վրաստանի. — Գալուստ սրբոց առաքելոցն Անդրէի և Սիմոնի 'ի սահմանս Վրաց, և նահատակութիւնն վերջնոյս, և յաղագս Ս. Անդրէի գործոցն յԵգրիս և այլուր. — Յաղագս բաժանելոյ Ադրըկայ զթագաւորութիւնն իւր՝ երկուց որդւոց իւրոց, և յաղագս աւերմանն Երուսաղեմի 'ի Վեսպասիանէ, և գաղթելոյ մասին Հրէից 'ի Վրաստան։*

Եւ թագաւորեաց Մրուան[1] 'ի տեղի նորա, այր իմաստուն և քաջ, և անձամբ գեղեցիկ։ Իսկ Դուրձուկեցիքն մոռացեալ զուխտն՝ ելին 'ի դուրս, և միաբանեցան ընդ Ձարթաղքն՝[2] ընդ բնակիչսն կովկասու, և գերեցին զկախէթ և զԲազալէթ։ Յայնժամ Մրուան ժողովեաց զհաւատարիմս իւր զհեծեալ և զհետևակ, և գնաց 'ի վերայ Դուրձկեցւոց. և եղև մարտ սաստիկ, և պարտեցան Դուրձկուքն և հարան. և եմուտ Մրուան յերկիրն, և էառ զԴուրձուկ և զՃարթալ, և զդուռն

1 Ի Մրուանայ սկսանի երկրորդ հարստութիւնն Նեբրովթեան. և այս Մրուան Ա. փեսայ Սայուրմակայ՝ եկաց երրորդ արքայ Վրաց, 162-112 Ն. Ք. և իշխեաց զամս 50։

2 Նոյն ընդ Ճարթալ, զորս յիշէ փոքու ստորև։

նրազմ, որ կայր անդադար Բաղայ[1], և եկն ուրախու-
թեամբ 'ի Մցխէթ։ Եւ մեռաւ Անտիոքոս թագաւորն Ասորւոց և Բաբելոնի, և թագաւորեաց 'ի Հայք Արբակ․ և ետ Մրուան զդուստր իւր՝ որդւոյն Վարբակայ, և մեռաւ Մրուան։

Եւ թագաւորեաց որդի իւր փառանջում[2], որ շինեաց զբերդն Ադէն, և կանգնեաց պատկեր 'ի յԱդէն․ և շինեաց քաղաք 'ի կախէթ՝ զՆեկրէս։ Եւ յետ այսորիկ մեծարեաց զմոգսն պարսկադեն, և շինեաց նոցա տեղի, որ արդ ասի Մոգթա (Տունն մոգաց), և եդին տուն կրակի։

Եւ բարկացան Վիրք․ և խնդրեցին 'ի Վարբակայ Հայոց արքայէ, զի տացէ նոցա զորդի իւր թագաւոր, զի մեր թագաւորն, ասեն, պարսիկ եղև, և մոռացաւ զՀաւատս մարց իւրոց, և պաշտէ զհայրենի կրօնսն[3]։ Եւ թագաւորն Հայոց ուրախութեամբ դարձոյց պդեսպանսն։ Եւ լուաւ փառանջում, և էած զօր 'ի Պարսից, և ուստի կարաց՝ ժողովեաց, և ել ընդդէմ թագաւորին Հայոց։ Եւ Վարբակէս Հայօք և Վրօք մարտեաւ ընդ փառանջում 'ի դաւառին Տաշրայ, և սպան զնա, և կոտորեաց զզօրս նորա իսպառ։ Եւ թագաւորեցոյց Վրաց զԱրբակ որդի[4] իւր, որ ունէր կին զդուստր Մրուանայ, և աջողեցաւ թագաւորութիւն նորա․ և շինեաց ամուրս բազումս, և ամրացոյց զպարիսպն Ջաւախեթոյ՝ քաղաքին Ծունդայ[illegible]ւոց․ և այսպէս աջողութեամբ կեցեալ մեռաւ։

1 Այսպէս խառնակ և անիմաստ յօրինակին․ մարթ իցէ արգեօք ընթեռնուլ որ կայր անդ առ Դարբաղայ։ Վախթանգ ունի այսպէս․ « Եւ յօրինեաց անդ դրունս կրաշաղախ վիմօք, զոր և Դարուբաղ (Դարուբանդ?) անուանեաց »։

2 Զորրորդ արքայ, Ներբրովթեան, 112-93 Ն. Ք. եկաց յիշխանութեանն 19 ամ։

3 Պրոսէ Թարգմանէ զտողս զայսոսիկ այսպէս․ « Oubliant la foi de son pays, ne suit plus la religion paternelle », որ յայտնի վրիպակ է․ քանզի Փառանջում էր 'ի փառնաւազեան ազգէ ('ի դստերէն Սայուրմակայ), զորոյ զկրօնսն մոռացեալ, պաշտէր զհայրենի կրօնսն՝ զՄրուանայ, որ էր յազգէ անտի պարսիկ կնոջ Սայուրմակայ։

4 Աստի սկիզբն երրորդ հարստութեանն Վրաց, արշակունի․ Արբակ հինգերորդ. թագաւորեաց երկոտասան ամս, 93-81 նախ քան զՔրիստոս։

Եւ թագաւորեաց Արտակ[1] որդի նորա 'ի վերայ Վրաց ամս երկու։ Յաւուրս սորա եկին Պարսիկք վըրէժխնդիր արեանն փառանջումայ. և ոչ կարաց Արտակ պատահել նոցա վասն բազմութեանն, այլ ամրացաւ 'ի նոցանէ. և նոքա զոր գտին յարձակ տեղիս առին և գնացին։

Զկնի Արտակայ թագաւորեաց որդի նորա Բարտոմ[2]։ Իսկ որդին փառանջումայ մնաւ 'ի Պարս, և առեալ օգնական զայ 'ի վերայ Բարտոմայ. և յղէ պատգամ առ իշխանսն Վրաց՝ 'ի բաց կալ 'ի Բարտոմայ. և ոչ լուան նմա, այլ կռուեցան ամիս մի առընթեր խունանայ՝ ընդ Մրուանայ. սակայն յաղթեցան, և մեռաւ Բարտոմ 'ի պատերազմին։ Եւ զի ոչ ունէր որդի, այլ դուստր մի, զոր տուեալ էր յամուսնութիւն որդւոյն[3] Քուջիսոյ, զի լինիցի ժառանգ արքայութեան նորա. և արար զայն վասն հաճելոյ զՎիրս, որ ոչ կամէին զօտար ազգի թագաւորութիւնն, այլ զփառնաւազունիսն միայն. այլ և նա սպանաւ 'ի նմին պատերազմի, որում անուն էր Քարթամ։ Եւ կին նորա՝ դուստրն Բարտոմի յղի գոլով՝ գնաց 'ի Հայս. և ծնաւ որդի, և կոչեաց զնա Ադրիկ։ Իսկ Մրուան մտեալ 'ի Վիրս, տիրեաց ամենայն աշխարհին, բռնութեամբ հնազանդեալ զամրացեալսն 'ի դղեակս, և երդմամբ արտաքս բերեալ յանառիկ տեղեացն։ Եւ 'ի Շամշուլտոյ հանեալ զկինն Բարտոմի՝ կին արար զնա, որ էր դուստր Արբակունեաց։ Եւ ծնաւ որդի, և կոչեաց զնա Արբակ։ Եւ կեցեալ Մրուան[4] ամս սակաւ՝ մեռաւ, և թագաւորեաց որդի նորա Արբակ[5]։

Իսկ Ադրիկ սնեալ 'ի Հայս՝ եղև այր անձնեայ, և աջողեակ 'ի պատերազմունսն գտեալ՝ որ ընդ Հայս և ընդ Ասորիս, կոտորեալ 'ի նոցանէ յոլով Մումբերիզս։ Սա առեալ զզօրս Հայոց՝ մարտեաւ ընդ Արբակայ յերկիրն Թռեղեաց, որ է Ծաղկաց. և օր մի ող-

1 Վեցերորդ թագաւոր, արշակունի, ամս 15, 81–66 Ն. Ք.։
2 Եօթներորդ արքայ, արշակունի, ամս 33, 66–33 Ն. Ք.։
3 Այն է՝ առ մի ոք յազգէն Քուջիսոյ, և ոչ որդւոյ՝ ըստ առաջին նշանակութեան բառին։
4 Ութերորդ արքայ, ներբրովթեան, ամս 10, 33–23 Ն. Ք.։
5 Իններորդ թագաւոր, ներբրովթեան, ամս 20, 23–3 Ն. Ք.։

Ջոյն կռուեալ սուսերօք՝ խորտակեցին զնոսա . և ոչ որք դարձոյց 'ի նոցանէ լթիկունս ։ Եւ հանդեան զգիշերն , և 'ի վաղիւն կռուեցան երկաթակուռ մահակօք , իբրև զուռունս դարբնաց՝ որ բախեն 'ի վերայ սալից . և ոչ այնպէս դարձան 'ի միմեանց ։ Ապա առեալ զաղեղունս՝ նետաձիգ եղեն առ միմեանս . և եհար Ադրիկ նետիւ զլանջս Արբակայ՝ եղբօր մօր իւրոյ , և սպան զնա . և դարձան վիրք 'ի փախուստ ։ Եւ յաղաչանս անկեալ Հայոց Ադրիկ՝ արգել 'ի կոտորելոյ զվրացիսն . Զի ես եմ , ասաց , այսուհետև թագաւոր նոցա՝ շնորհիւք ձեր ։ Եւ ամենայն զօրքն վրաց անկեալ երկիր պագին Ադրկայ [1] , և դրին 'ի գլուխ նորա զթագն Արբակայ . և մի եղեն Հայք և վիրք և տունն Առանայ ։ Երեսուն ամաց էր 'ի թագաւորելն իւրում , և քառասուն և հինգ ամ [2] թագաւորեաց 'ի վերայ վրաց , առեալ զպուստր թագաւորին Հայոց իւր 'ի կնութիւն ։

Ի սորին առաջին ամին ծնաւ Յիսուս Քրիստոս 'ի Բեթղեհէմ Հրէաստանի ։ Եւ եկն համբաւ առ Հրեայսն Մցխեթոյ , եթէ եկին թագաւորք 'ի Պարսից , և գերեցին զԵրուսաղէմ , և սուգ առին Հրեայքն . և զկնի բազմաց [3] լուան՝ եթէ ոչ 'ի գերութիւն Երուսաղեմի , այլ յընծայաբերութիւն մանկան միոյ կուսութեամբ ծնելոյ եկին նոքա , և խնդացին յոյժ ։ Իսկ զկնի ամաց երեսնից եկին դեսպանք 'ի կողմանս արևելից հիւսիսոյ , եթէ ընծայեալն 'ի մոգուց մանուկն՝ եկեալ 'ի հասակ առն կատարելոյ՝ քարոզէ զինքն որդի Աստուծոյ . արդ , որք միանգամ են յազգէս մերմէ իմաստունք և տեղեակք օրինաց մերոց՝ եկեսցեն , զի գնասցուք վասն բանիս այսորիկ ։ Եւ լուեալ զբանն՝ գնացին Եղիոս 'ի Մցխիթոյ , Լունկինոս կարսնեցի ։ Եւ 'ի յերթալն նոցա դիպեցան աւուրն մեծի ուրբաթու չարչարանացն Տեառն . և նոքա բերին զպատմուճանն Տեառն 'ի Մցխիթա ։

1 Տասներորդ թագաւոր , քարթլոսեան , իշխեաց 57 ամս , 2 ամօք Ն. Ք , և 55 Ց. Ք ։

2 Վախթանգ յիսուն և եօթն ամս կարգէ թագաւորութեանն Ադրըկայ ։

3 Յօր . Բոց ամաց . Վախթանգ ցնէ յերկրորդումն ամի . Պրոսէ ընթեռնու Է ամաց ։

Եւ յաւուրս նորին թագաւորի Ադրըկայ՝ եկին եր-կուք ոմանք յերկոտասան առաքելոցն, Անդրէ և Սիմոն կանանացի, յԱփխազէթ և յԵգրիս. և կատարեցաւ սուրբն Սիմոն 'ի քաղաքին Նիկոփիս, 'ի սինօռն Յու-նաց: Եւ սուրբն Անդրէաս դարձուցեալ զԵգրիս՝ գնաց առ Կլարջօք [1]: Եւ լուաւ Ադրիկ, և բարկացաւ. և առա-քեաց դարձոյց անդրէն 'ի կուռս զԵգրիս. և թաքու-ցին զխաչ և զպատկեր խաչին [2]. և մեղադիր եղև ու-տիկանին Կլարջից՝ զի խաղաղութեամբ արձակեաց զԱնդրէ:

Ի սոյն ժամանակս Պարսք ապստամբեցին 'ի Մա-կեդոնացւոց, և եդին իւրեանց թագաւոր զԱժիան իմաստուն: Այս Ադրիկ թագ. եդ. երկուց որդւոց իւրոց, բաժանելով նոցա զերկիրն. զՔարթլ բազում սահ-մանօք՝ ետ Բարտոսոյ, և խունանայ մինչև 'ի Կլարճէթ՝ ետ Քարթամինոյ, և մեռաւ: Ի սոցա թագաւորու-թեանն Սպասիանոս կայսրն Հռոմայ գերեաց զԵրու-սաղէմ [3]: Եւ եկին 'ի Հրէից անտի փախստականք, և յարեցան յառաջին Հրեայսն Մցխեթոյ. ընդ նոսա էին և որդիքն Բարաբբա աւազակին, զոր Հրեայքն հայցէին 'ի Պիղատոսէ փոխանակ Տեառն մերոյ: Եւ Բարտոսն և Քարթամ [4] կային 'ի հնազանդութիւն թագաւորացն Հայոց, յԱդրկայ սկսեալ. և աւելի՝ Ար-մազու թագաւորքն օգնէին Հայոց՝ ընդդէմ կալով թշնամեաց նոցա [5]:

1 Զայս ամենայն անցս քարոզութեան առաքելոցս տես եր-կարօրէն 'ի Քաղուածոյսն Վախթանգայ:

2 Զի՞նչ իմանալ պարտ իցէ որիշ 'ի խաչէն՝ զպատկեր խաչին: Վախթանգ ունի «զխաչն և զպատկերս»:

3 Յեօթանասներորդի ամին յետ Քրիստոսի:

4 Մետասաներորդ արքայութիւն, քարթլոսեան, ամք իշխա-նութեան 17, 55–72 Յ. Ք.:

5 Աստանօր տողք ինչ պակասեն յայտնապէս 'ի հայումս, զորս այսպէս ունի Վախթանգ. «Ի մեռանել Բարտոսայ և Քարթամանոյ՝ որդիք նոցին փոխանակեցին զտեղի նոցա. Փարսման՝ յԱրմազ, և Կայոս 'ի Ներքին-Քարթլ ('ի Շիտա-Քալաքի). և աղքայք Վրաց կային 'ի հնազանդութիւն թագաւորացն Հայոց՝ յԱդրկայ սկսեալ», և այլն:

# ԳԼՈՒԽ Ե

*Թագաւորէ Երուանդ 'ի Հայս, արշաւէ 'ի վիրս, և ապա ապաւանի 'ի Սմբատայ։ — Միաբանեալ վրաց ընդ հիւսիսային ազգաց՝ դիմեն 'ի Հայս, և հարկանին 'ի Սմբատայ քաջէ, որ և նուաճէ զերկիր նոցա։ — Երկին անգամ ապստամբեալ վրաց՝ գերեն զՋարեհ, զորդի Արտաքսեայ (Արտաշիսի) արքային Հայոց, այլ տագնապեալ 'ի Սմբատայ՝ խոնարհին 'ի հաշտութիւն և 'ի ծառայութիւն։*

Յետ այսորիկ թագաւորեաց Հայոց մեծն Երուանդ, և էառ 'ի վրաց զԱրտահան, մինչև ցկուր գետ, և զքաղաքն Ծօնդայ. և բնակեցոյց 'ի նմա մարդ դիւախօս, և անուանեաց զնա Քաջատուն։ Եւ մնան թագաւորքն վրաց տրտմութեամբ, փարսման և կայոս [1]։

1 Երկոտասաներորդ արքայութիւն, քարթլոսեան, ամք թագաւորութեան 15, Յ. Ք. 72–87։ Այս Փարսման, ըստ վկայութեան Խորենացւոյ, «ընդ զօրացն իւրոց՝ յանդուգն յարձակմամբ յառաջեալ բախէին» ընդդէմ բանակին Արտաշիսի, այլ 'ի պարտել Երուանդայ՝ և սոքա 'ի փախուստ դառնային. քանզի և ոչ սերտ միամտութիւն կարէին ունել ընդ Երուանդայ, զինու զօրութեամբ բռնացելոյ 'ի վերայ երկրի նոցա. յոր վասն, ըստ բանից պատմիչիս փրփռոռբեալք վճարեցին զկեանսն, չկարացեալ կրկին անգամ թափել զայնոսիկ 'ի Հայոց. զորոյ զփորձ փորձեալ յաջորդացն պատուհասին 'ի Սմբատայ Քաջէ։

Սոյն ինքն Փարսման մասն կալաւ և 'ի պատերազմունս անդ, զորս մղեաց Տիբեր կայսր ընդդէմ Արտաշիսի (Արտաւանայ, ըստ Տակիտեայ), որդւոյ Արտաշրի, առ 'ի հաստատել 'ի գահ արքայութեան Պարթևաց զՏրդատ՝ զազգական նորին Արտաշիսի. յոր վասն հաշտեցուցեալ նախ զՓարսման ընդ եղբօր իւրում Միհրդատայ, և 'ի ձեռն վերջնոյս նենգաւ տուեալ սպանանել զԱրշակ՝ զորդի Արտաշիսի, զոր կացուցեալ էր սորա թագաւոր 'ի վերայ Հայոց, ապա գրգռեաց և զՓարսման 'ի թիկունս կալ եղբօր իւրում Միհրդատայ ընդդէմ Արշէզի (ըստ Տակիտեայ՝ Որոդայ) որդւոյ Արտաշիսի, զոր հարուստ բանակաւ առաքեալ էր հօր նորա 'ի վերայ Միհրդատայ՝ խնդրել զվրէժ արեանն Արշակայ. և կարծել զնա 'ի բռնակալութենէն։ Յայսմ մարտի բազում արութիւնս ցուցեալ Փարսմանայ՝ պատմի 'ի Տակիտոսէ, որ և ոճով գրէ զհանդերձանաց մարտին երկուստեք, զդրից իւրաքանչիւր ճակատուցն, և զԱրշէզէ վիրաւորելոյ 'ի հարուածոյ Փարսմանայ և մազապուր զերծելոյ 'ի մահուանէ. որով և 'ի ձախողել իրացն Արտաշիսի 'ի Պարթևա-

Իսկ Սմբատ Բիւրատայ՝ սպան զԵրուանդ, և թագաւորեցոյց զեղբայր նորա զԱրտաբան[1]։

Յայնժամ թագաւորքն Վրաց՝ Ազուկ և Ազմայէր[2], կոչեցին յօգնութիւն զԼեկաց և զՕսաց թագաւորքն, երկու եղբարք, զԲազուկ և զԱնբազուկ։ Եւ ածին նոքա ընդ ինքեանս զՊաճանիկս և զՋիկս, զԴուրձուկս և զԴիդոյս. և զօրքն Վրաց առ հասարակ 'ի մի վայր եկեալ, մտին յանկարծուստ յաշխարհն Հայոց, մինչ դեռ անկազմ կային նոքա, և գերեցին զՇիրակ և զՎանանդ մինչև ցԲասեն. և դարձան 'ի դաշտն Նախջաւանու, և առին աւար բազում. և ելին ընդ դուռն փառխոսոյ, և փութով անցին ընդ Կուր գետ. և երթեալ 'ի կամբէճ, բանակեցան 'ի վերայ Իօրի գետոյն[3]։

տան՝ առաւել ևս զօրացեալ, հաստատէ զՄիհրդատ զեղբայր իւր թագաւոր 'ի վերայ Հայոց. որ «զօրութեամբ հռովմէական զօրականին, ըստ Տակիտեայ, նուաճէ զամուրս բարձունս, և զդաշտային՝ ասպատակութեամբ Վրաց»։ Բայց, աւա՜ղ, զի ոչ իսպառ անարատ պահեաց Փարսման զքաջութեանն անուն. զի զկնի ամաց ինչ նախ 'ի ձեռն Հռամզդի որդւոյ իւրոյ՝ դարան գործեալ կենաց Միհրդատայ՝ կաշառակուրծ առնելով զմերձաւորս նորին, հալածական վարեաց զնա 'ի թագաւորութենէն. և զսա պատճառաւ ուխտի խաղաղութեան կոչեալ Հռամզդի՝ ննջելով նմա 'ի ժամ ուխտիցն և 'ի կապանս արկեալ՝ էած առ Փարսման, զոր անդէն հրաման ետ հեղձամահ առնել, և ոչ տեսանել անգամ կամեցեալ զերեսս նորա։ Դարձեալ սոյն ինքն Փարսման, զորմէ վկայէ Տակիտոս թէ «բնածին էր 'ի նմա իղձ իշխանութեան քան զսէր եղբօր և դստեր, և սիրտ նորա պատրաստ յեղեան ամենայն», յետ ամաց ինչ սպան և զորդի իւր զՀռամիզդ. որպէս գուշակեն զոք, յետ փախստական անկանելոյ սորա 'ի Վիրս՝ յերեսաց ապստամբութեան Հայոց, հանդերձ քաջարի հաւատարիմ կնաւ իւրով Զենոբիաւ, զոր Հռամզդի յաղերս նորա զենեալ, առ 'ի փրկելոյ 'ի թշնամանաց գերութեան՝ խոցեաց սուսերաւ, և քարշեալ ընկեց յԵրասխ գետ հետախաղաղ առնել և զդի նորին։ Զայսցանէ մանրապատում աւանդէ Տակիտոս 'ի Տարեգիրս անդ իւրում։

1 Յոր. Յայսմ տեղւոջ միայն Արտաբան, իսկ այլուր միշտ Արտաշան, որ նոյն ինքն է Արտաշէս. ոչ եղբայր Երուանդայ, այլ լոկ ազգակից արշակունի, եթէ ոչ զՍանատրուկ հայր համարեցիմք ևս և աղջկորդւոյն Երուանդայ։

2 Երեքտասաներորդ արքայութիւն, քարթլասեան, ամք թագաւորութեան 16, 87-103 Յ. Ք.։

3 Այս արշաւանք Վրաց 'ի Հայս՝ նոյն թուի ընդ յիշատակելոյն 'ի Խորենացւոյ՝ միաբանութեամբ ազգին Ալանաց, որոց «յինքեանս արկանելով և զկէս Վրաց աշխարհին, մեծաւ ամբոխիւ տարածեցան ընդ աշխարհս մեր»։

Իսկ Սմբատայ ժողովեալ զզօրս Հայոց, չոգաւ զկնի նոցա մինչև ցկուր գետ. և արձակեաց դեսպանս, և ասէ ցնոսա. Զոր սպանիք 'ի Հայոց՝ թողեալ ձեզ, և զոր ունիք առ և աւար ձեզ լիցի. բայց զերի՝ զորս ունիք կենդանի՝ այսրէն դարձուցէք։ Իսկ նոքա հպարտացեալ խստագոյնս պատասխանեցին նմա, որպէս թէ դառնալոց են 'ի վերայ՝ զի զնա ևս առնուցուն։ Եւ լուեալ Սմբատ՝ էանց ընդ գետն կուր, և դիմեաց առ նոսա առիւծաբար։ Իսկ թագաւորն Օսաց՝ Բազուկ խնդրեաց մենամարտիլ ընդ նմա, և մեռաւ 'ի ձեռաց նորա, անցուցեալ զնիզակն թափ ընդ լանջսն կանգուն մի։ Եւ եղբայր նորա Անբազուկ դիմեաց ընդդէմ նորա. և զնա ևս եհար նիզակաւն և անկաւ մեռեալ. և ասէ. Վրէժխնդրութիւն լիցի այս՝ Հայոց կանանց և անմեղ մանկանց՝ սպանելոցն 'ի ձեռաց ձերոց։ Եւ խառնեցաւ ամենայն բանակն ընդ միմեանս յոյժ ահաւորապէս, և անկան յերկու կողմանց անթիւք մինչև ցերեկոյ. և պարտեալ հիւսիսայնոցն զփախուստ առին. և յանխնայս խոցոտէին ընկենուին 'ի նոցանէ զօրքն Հայոց, մինչև ցմնալ յոյժ սակաւուց, զորս գիշերն ապրեցուցանէր։ Եւ թագաւորքն երկոքին Վրաց խոց առած՝ զերծան անկան 'ի Մցխիթա։ Իսկ Սմբատ յաջողութեամբ մտեալ 'ի Քարթլ՝ աւերեաց զերկիրն. և շինեաց բերդ մի յերկիրն Ունձըրխւոյ՝ ընդ Սամցխէ, և եթող անդ զօրս օգնական Ծունդացւոցն՝ որք հնազանդեցան նմա։

Իսկ թագաւորքն Վրաց Արղուկ և Ամզիէր, առեալ ընդ ինքեանս զՕսաց ազգն, հարկանէին զերկիրն Հայոց՝ առ գետովն Նուստէ, և առ Պարխարաւ՝ որ են Տայք, և առ ճանապարհին Աշոցաց [1]։ Ապա թագաւորն Հայոց Արոտաբան խաղաց 'ի վերայ Վրաց, և նստաւ 'ի վերայ Մցխիթայ հինգ ամիս՝ քանդելով զաշխարհն, մինչև յողոք անկեալ խնդրեցին զհաշտութիւն, զի ծառայեսցեն նոցա Վիրք և Օսք։ Եւ լուաւ նոցա, և ետ հարկս, և գնաց 'ի նոցանէ թագաւորն Հայոց, և գոռայր ընդդէմ Յունաց և Պարսից։ Եւ պա-

1 Նոյն խառնակութիւն է Աշոտ և Աշոց անուանց՝ զորոց ասացաք այլուր 'ի վեր անդր։

րապ առեալ Վրաց և Օսաց, ապատակէին 'ի Հայս[1]։ Եւ Արտաշան առաքեաց զորդի իւր զՋարեհ ընդդէմ նոցա սակաւաձեռն. և նորա գնացեալ՝ իբրև զմանուկ ըմբռնեցաւ 'ի նոցանէ 'ի տեղին՝ որ կոչի Ցլլս լիճ. և կամեցան Օսքն սպանանել զնա վասն արեան իւրեանց թագաւորացն, և արգելլին Վիրք, զի առցեն նոքաւ զսահմանս իւրեանց՝ զոր առեալ էին Հայք. և արգելլին զնա 'ի Դալարա։ Իսկ Հայք ոչ արարին փոյթ զամս երիս. ապա զկնի ամաց երից գնաց Սմբատ որդւովք թագաւորին, Արտաւազդաւ և Տիգրանաւ, և ամենայն զօրօքն Հայոց յերկիրն Թռեղաց[2]։ Իսկ թագաւորքն Վրաց ամրացան, և գաղթեցին զերկիրն, և խնդրեցին զհաշտութիւն, տալով 'ի նոսա պատուով զորդի թագաւորին, և խոստացան ծառայութիւն այսպէս. Զդրամն գրով և անուամբ Հայոց թագաւորին վարել, և թէ գայ թշնամին 'ի վերայ ձեր, երկոքին թագաւորքս Վրաց կեամք և մեռանիմք ընդ ձեզ. և եթէ դուք երթայք 'ի պատերազմ ընդ այլում ազգի, տասն հազար սպառազէն 'ի Վրաց գան ընդ ձեզ։ Եւ հաւանեալ այսմ Հայոց, անդրէն դարձուցին զառեալ սահմանն Վրաց, զՏունդա, զԴմուխս, զՋաւախէթ և զԱրտահան. և եղեն Հայք և Վիրք և Օսք ազգ մի։

1 Զայս ապստամբութիւն արարեալ Թուխ Վրաց, յապստամբել անդ քանի մի գաւառաց և ծովեզերեայց և Կասպից երկրին՝ յԱրտաշիսէ մերմէ, 'ի կամել նորա կացուցանել 'ի գահ հօրն զհոմանուն իւր զԱրտաշէս, զորդի Արշակայ Պարսից արքայի։

2 Աւանդէ Խորենացի զՋարեհէ լինել «այր սէգ և յորս երեւց նահատակ, իսկ առ պատերազմունս՝ վատ և տաղտուկ. զորոյ զփորձ առեալ Քարձամայ որում արքայի Վրաց, ապստամբեցուցանէ զերկիրն, և կապեալ զՋարեհ՝ 'ի բանտի դնէ 'ի Կաւկաս։ Ընդ որում պատերազմեալ Արտաւազդայ և Տիրանայ հանդերձ Սմբատաւ, դարձուցանեն զեղբայրն 'ի մեծ կապանաց և 'ի բանտէ»․ յորմէ յայտնի երևի փոփոխումն անուանն Տիրանայ 'ի Տիգրան՝ 'ի Վրաց պատմչէս. բայց դժուարին է միաբանել զհամեմատութիւն ժամանակաց. քանզի Քարձամն յիշեալ 'ի Խորենացւոյն՝ մերձաւորութիւն հնչման ցուցանէ ընդ Քարթամայ, որ առաջին եկաց թագաւոր յԱրմազ. այլ յիշեալքն 'ի պատմչէս Արզուկ և կամ Ամզիէր (Ազմայէր), ամենևին օտար են 'ի Քարձամայ. բայց միայն մնայ ասել զի Քարձամ լեալ իցէ սոյն անուն Ամզիէրի, քանզի վերջինս կոչի 'ի Քաղուածոյն Վախթանգայ Արմազել, զոր ըստ Պրոսէի՝ պարտ է համարել վարեալ մակդրօրէն, այն է Արմազեցի։

# ԳԼՈՒԽ Ձ

Յաջորդութիւն թագաւորութեան Վրաց, և նենգաւոր հնարք Միհրդատայ 'ի սպանութիւն փարսմանայ, և մահ նորին 'ի Հայոց: — Արշաւանք Օսաց 'ի Վիրս, և նուաճումն նոցա 'ի ձեռն Համազասպայ Վրաց արքայի: — Ապստամբութիւն Համազասպայ 'ի Հայոց, և մահ նորին: — Թագաւորեալ Վիրոնի 'ի վերայ Վրաց՝ առնէ բարեկարգութիւնս:

կատարեցին զկեանս իւրեանց ասացեալ թագաւորքս Վրաց: ՅԱրմազ՝ թագաւորէ [1] Համազասպ, և 'ի քարթլ՝ Դերոկ [2], և զկնի սորա փարսման և Միհրդատ [3]: Այս Միհրդատ էառ կին պարսիկ՝ յազգէ թագաւորաց, և 'ի խրատուէ Պարսից եղև ատեցող փարսմանայ Արմազեցւոյ, և խորհեցաւ սպանանել զնա 'ի գինւոյ 'ի տան իւրում: Եւ իմացեալ փարսմանայ՝ ոչ գնաց 'ի կոչ նորա, և յայտնեցան իրքն, և եղեն թշնամիք միմեանց: Եւ էր փարսման այր բարի, և գեղեցիկ 'ի դէմս և 'ի հասակ, և ողորմած և իմաստուն և քաջ պատերազմող իբրև զանմարմին. և ամենայն Վիրք սիրէին զնա, և ատէին զՄիհրդատ. վասն որոյ փախեաւ 'ի Պարսս, և փարսման կացոյց 'ի տեղի նորա զփառնաւազ սպարապետն իւր՝ կաթնակից և համահասակ և քաջարի այր: Եւ Միհրդատ առեալ զՊարսս [4] եկն 'ի վերայ փարսմանայ. և փարսման ածեալ զօր 'ի Հայոց՝ չոգաւ ընդ առաջ նոցա 'ի Հրինսի խեւ, որ է Երկաթածոր: Եւ խնդրեցին մենամարտիկք 'ի Պարսից՝ զփարսման և զսպարապետն իւր. և սպան փարս-

1 Յօր. Թագաւոր:

2 Չորեքտասաներորդ արքայութիւն, քարթլոսեան, ամք թագաւորութեան 10, Յ. Ք. 103-113:

3 Հնգետասաներորդ արքայութիւն, քարթլոսեան, ամք իշխանութեան 16, Յ. Ք. 113-129:

4 Յօր. Զպարս:

ման եօթննստասն այր, և սպարապետն՝ արս քսան և երիս։ Ցայնժամ այր մի 'ի Պարսից, Ջիւանշէր անուն, հսկայ և անճոռնի՝ խնդրեաց զփարսման. և նա ել խըն-դութեամբ ընդդէմ նորա։ Եւ նման էր մարտ նոցա ո-րոտման ամպոց՝ ժամս բազումս. սակայն գեղեցիկն այն կորովին փարսման՝ հարեալ ընկենոյր և սատա-կէր զանարի հսկայն. և ձայնէր առ զօրն ասելով. Արիք համպա առիւծքդ որ ննջէք, մատիք 'ի յոչխարդ կոչ-կոճեալս 'ի կարկըտէ։ Ցայնժամ զօրքն Հայոց և Վրաց յանխնայ դնէին զամենայն Պարսիկսն արեան ճապա-ղիս ընդ երեսս երկրին։ Եւ զերծեալ Միհրդատ անկաւ 'ի Պարսս։ Եւ 'ի յերկրորդ ամին կրկին վօրաց բազ-մութեամբ դարձաւ 'ի վերայ փարսմանայ. և եկն 'ի Մցխեթա, և նստաւ անդ։ Եւ նոյնպէս խնդրէին ա-խոյեանք Պարսից զփարսման և զսպարապետն իւր։ Եւ սպան 'ի նոցանէ փարսման երկոտասան այր, և սպարապետն իւր վեշտասան այր. և ապականաւ [1] 'ի նոցանէ սակաւուք, և կոտորեաց և ջնջեաց զբազմու-թիւն նոցա։ Եւ փախեաւ Միհրդատ 'ի Պարսս. և ինքն քաջն փարսման ուժովն Հայոց աւերէր և քանդէր ըզ-Պարսս։ Որոց մտեալ 'ի հնարս՝ առաքեն այր մի խորա-կարար՝ հատուածի պատճառով, տուեալ ցնա դեղ մահու, զի յանկասկածս սպանցէ զփարսման. զոր և արարն իսկ, և սպան նենգիւ [2] զամենայաղթն քաջ, և լացոյց զտունն Վրաց 'ի փոքունց մինչև ցմեծամեծս։ Եւ սպարապետն փարսմանայ փառնաւազ՝ առեալ ըզ-կին և զորդիս փարսմանայ գնաց 'ի Հայս [3]. և օգ-

1 Ցօր. Այսպէս խառնակ է իմաստդ և անիմանալի։

2 Աստանօր չգիտեմ զիարդ ընթեռնու Պրոսէ նետիւ զՆենգիւն, զի թարգմանէ. Il le tua d'une flèche.

3 Կինն Փարսմանայ, ըստ աւանդութեան Վախթանգայ, էր դուստր արքային Հայոց. այլ չէ ինձ մարթ իմանալ զով ոք 'ի թագաւորաց մերոց կամիցի նշանակել, զԱրտաշէս եթէ զԱր-տաւազդ կամ զՏիրան. զի և պատմիչս յիշէ զնոյն թագաւոր Հայոց հաշտեալ ընդ Ցոյնս (իմա զՀռովմայեցիս) և մարտուցեալ ընդ-դէմ Պարսից։ Առաւել հաւանական երևի ինձ ասել զՏիրան, որոյ՝ ըստ վկայութեան Խորենացւոյն, մտերմութեամբ ծառայեալ Հռովմայե-ցւոց առ Անտոնինոս Պիոսիւ, չկարէր 'ի խաղաղութեան մնալ ըն-նել ընդ Պերոզի Վոլոգեսի արքային Պարսից, որ և ընկալաւ զՊե-րոզն անուն՝ յաղթող վասն աջող արշաւանացն իւրոց 'ի մասին Հռով-մայեցւոց՝ առ Մարկոս Աւրելիոսիւ։

նութեամբ նոցա եդ գաւառապետ յԱրմազ և յամենայն բաժին նորա, որք պահեցին զմիամտութիւնն Փարսմանայ։ Իսկ Միհրդատ առեալ զՊարսս՝ եկն 'ի վիրս, և առ զմասն իւր։ Եւ թագաւորն Հայոց հաշտեալ ընդ Յոյնս՝ չոգաւ ընդդէմ Պարսից և Միհրդատայ, և պատահեաց նոցա 'ի վերայ Լեխ գետոյն, և սպան զՄիհրդատ և զիշխանն Պարսից, և թագաւորեցոյց Վրաց զորդին Փարսմանայ՝ զԱզամ[1], որ կեցեալ ամս երիս՝ մեռանի, թողեալ որդի երախայ. և նովաւ իշխէր Վրաց՝ կինն Փարսմանայ։

Եւ զկնի նորա թագաւորեաց Համազասպ թոռն նորա, այր քաջ և պատերազմող։ Յաւուրս սորա եկին Օսքն բազմութիւն յոյժ յանկասկածս ընդ ճանապարհն Դուալեթոյ. և նստան 'ի վերայ Լեախ գետոյն աւուրս ութ, և հանգեան. և ապա չոգան նստան ըզՄցխիթա քաղաքաւ։ Իսկ Համազասպ վեշտասան հազար հեծելօք և երեսուն հազար հետևակօք[2] ելեալ կռուէր ընդ նոսա նետաձգութեամբ 'ի հեռաստանէ։ Եւ ինքն ձգեաց յընտրելոցն ախոյանից հնգետասան այր՝ կորովութեամբ աղեղան. և միւս օրն ընկէց 'ի յՕսացն այր մի խոնախուա անուն, և եբեկ զմէջս նոցա. և յերրորդում աւուրն, զի աճեցին[3] զօրքն Վրրաց, մարտեան ընդ միմեանս. և պարտեցան Օսքն, և մեռաւ թագաւորն նոցա, և փախեան մնացեալքն յաշխարհն իւրեանց։ Եւ յերկրորդումն ամի առեալ զօր 'ի Հայոց[4] Համազասպ՝ էանց յայնկոյս լերինն 'ի

1 Վեշտասաներորդ արքայ, քարթլոսեան, իշխեաց զամս երիս, 129-132 Յ. Ք. և մայր նորա ամս 14, 132-146 Յ. Ք.։ Յետ որոյ յարքունս հասեալ երեխայն, որ կոչէր Փարսման՝ յանուն հաւուն իւրոյ, եկաց եօթնևտասներորդ արքայ, և կալաւ զիշխանութիւնն զամս 36, 146-182 Յ. Ք. յորում ամի մեռաւ, թողեալ զտէրութիւնն 'ի ձեռս Համազասպայ որդւոյ իւրոյ, որ եղև ութևտասներորդ արքայ քարթլոսեան, և իշխեաց ընդ ամս չորս, 182-186 Յ. Ք.։

2 Վախթանգ ունի երեսուն հազար հետևակօք և տասն հազար հեծելովք։

3 Պրոշէ ընթեռնու հաճեցան (ils consentirent).

4 Թերևս առ Տիգրանաւ Երրորդիւ կամ մանաւանդ առ Վաղարշ արքայիւ մերով, որ զամենայն աւուրս իւր հալածական վարէր զազգս հիւսիսոյ, յորոց և սպանաւ իսկ։

վերայ Օսաց, և դերեաց զաշխարհն ամենայն, և դարձաւ 'ի տուն իւր:

Զկնի այսորիկ հպարտացաւ յանձն իւր Համազասպ, և ապստամբեաց 'ի Հայոց. և սպան յիւրոցն արս երևելիս, և ապաւինեցաւ 'ի Պարս: Եւ վասն այսորիկ ատեցին զնա Վիրք, և խնդրեցին իւրեանց թագաւոր՝ զորդի թագաւորին Հայոց զՎրոյն՝[1] զքեռորդի Համազասպայ: Եւ լուաւ նոյա թագաւորն Հայոց, և եկն 'ի Վիրս: Եւ եկին առ նա իշխանքն արևմտից կողմանն հնգեքեան, և իշխանն Ունձրխեւոյ և իշխանն Ծունդայ. կոչեցին և զզօրսն Օսաց, և եկին խնդութեամբ վասն վրիժուց արեանն՝ զոր պարտէր նոցա Համազասպ: Կոչեաց (Համազասպ) յօգնութիւն զտունն Պարսից. և եղև պատերազմ սաստիկ, և յաղթեցաւ Համազասպ, և սպանաւ 'ի պատերազմին, և հարան զօրքն Պարսից:

Եւ թագաւորեաց Վիրոն[2] 'ի վերայ Վրաց, և ածաւ նմա 'ի կնութիւն յերկրէն Յունաց դուստրն Լողոթացւոյն, որում անուն էր Սեփելիա. նա եբեր ըզպատկերն Ափրոդիտեայ; և կանգնեաց զնա 'ի գլուխն Մցխիթոյ: Եւ էր թագաւորն ողորմած և նեղելոց վըրէժխնդիր. և սակաւ ինչ տեղեկացեալ Տեառն մերոյ տնօրէնութեանն՝ սիրէր զՔրիստոս. և արգել զմարդազոհութիւնն 'ի Վրաց, սակայն երկրպագէր կռոց և զոհել տայր արջառս և ոչխարս: Եւ կոչեցաւ անուն նորա Րէվ, որ ասի Յաղթող. և փոխեաց զսա որդի իւր Վաչէ[3]:

1 Վրոյնս այս որդի է Արտաշիսի և Սաթինկան. ոչ յիշի 'ի Խորենացւոյ, այլ 'ի պատմութեան Նահատակութեանն Ոսկեանց, յորմէ առնուն և Յայսմաւուրք մեր, և ասեն. «Իսկ որդիք Թագուհւոյն՝ Վրոյն և Վնոյն, .... աղաչէին զսուրբ Ոսկեանսն՝ տալ նոցա «(Սուքիասանց) հրաման՝ դառնալ առ Թագուհին. և սոքա ասեն. Ինքեանք ընտրեսցեն զօգուտ իւրեանց: Ընդ որ բարկացեալ որդիք Թագաւորին՝ զՈսկեանսն սպանին, և զԽաչադրաս «ընկերօքն իւրովք թողին, երկուցեալ 'ի մօրէն իւրեանց, զի ազգականք էին տիկնոջն Սաթենայ. վասն որոյ ի նոսա խնայեցին»:

2 Իննևտասներորդ արքայ, արշակունի, իշխեաց զամս 27, Յ. Ք. 186-213:

3 Վաչէ եկաց քսաներորդ արքայ, արշակունի, ընդ ամս 18, Յ. Ք, 213-231. յետ որոյ թագաւորեցին յԱրշակունեաց՝ որդի նորա Բակուր, 21դ արքայ, 15 ամ, 231-246 Յ. Ք. և զկնի որդի սորա Միհրդատ, 22դ արքայ, զամս 16, 246-262 Յ. Ք. և յետ այնորիկ որդի նորա Ասփակուր կամ Ասպարագուր, զորմէ խօսի պատմիչն 'ի յաջորդ գլուխ բանիցն, զանց զառաջնովքն արարեալ:

# ԳԼՈՒԽ Է

*Ցուցակս բառնալոյ ազգին Արշակունեաց յԱրտաշրէ, և վասն պատերազմացն և դաւադիր սպանմանն Խոսրովու Հայոց արքայի։ — Թագաւորել Միհրանայ ՚ի Վիրս, և պատերազմունք նորա ընդդէմ Հիւսիսայնոց։ — Ժառանգէ Միհրան գաւառս ինչ զկնի մահուանն Արտաշրի, և վերստին պատերազմունք նորա ընդ ազգացն հիւսիսոյ։ — Դարձ Տրդատայ ՚ի հայրենին թագաւորութիւնն, և ընդ Կոստանդիանոս մարտ եղեալ ընդդէմ Միհրանայ և Պարսից՝ ստիպել զնոսին ՚ի հաշտութիւն և ՚ի ծառայութիւն։*

Յայնմ ժամանակի թագաւորեաց Պարսից Քարսէ-Շարվան, որդի Սասանայ, որ եբարձ զԱրշակունիս, որ կոչին արդ Բիւրոյք [1]։ Եւ թագաւորն Հայոց Խոսրով կռուէր ընդ նմա՝ օգնականութեամբն Ասպաբագուրայ [2], որ ածէր ընդ դուռն կովկասու զԼեխս և զԼեկս և զՕսս և զխազիրս՝ առ թագաւորն մեծ Խոսրով։ Եւ մտանէր նա բազմախուռն ամբոխիւ ՚ի Պարսս, հարկանէր զզօրսն Պարսից. և փախստական լինէր թագաւորն Պարսից Քարսէշար, որ նա ինքն է Արտաշիր։ Խորհէր այնուհետև ընդ մեծամեծս իւր թէ զինչ արասցեն յերեսաց թագաւորին Հայոց, որ տասն ամ նեղէր զնոսա։ Ապա յառաջ եկաց ոմն ազգային Խոսրովու, անուն Անակ կոչեցեալ, և ասաց ՚ի լուր ամենեցուն. Պարտ է քեզ ծառայել հարկատրութեամբ Խոսրովու, և հանդարտին Պարսք ՚ի չարեաց նորա։

1 Խառնակութիւն երեք աստ իմաստիցն։ Պրոսէ կամի ընթեռնուլ որ նշէ Արտբէրոյթ. և աստ կրկնակի սխալեալ հայ թարգմանչին, նախ փոխանակ ընթեռնլոյ զվրացերէնն բառ արտշիրոյիտ, վրէպ ընթերցմամբ նմանաձև տառի միոյ՝ ընթերցեալ աստ, արտբէրոյիտ, և երկրորդ՝ զյարաբերականն որ ընծայէ Արշակունեաց, մինչդեռ վերաբերի առ որդին Սասանայ, որով պարտ է ընթեռնուլ որ նշէ Արտաշիր։

2 Քսաներորդ երրորդ արքայ, արշակունի, իշխեաց ընդ ամս 3, Յ. Ք. 262–265։

Եւ գաղտ մերձեցեալ յականջս նորա՝ ասաց. Երթայց առ նա ընտանութեամբ սիրոյ, որպէս ապստամբեալ 'ի քէն, և սպանից[1] զնա նենգութեամբ: Զոր և արարն իսկ: Եւ եկն առ նա հանդերձ եղբարբն իւրով. և 'ի գալ միւսոյ ամին՝[2] 'ի յորսս սպան զնա, յորժամ կամէր ելանել 'ի Պարսս: Եւ մեռաւ ինքն և իւրքն ամենայն, բայց 'ի յերկուց տղայոց, զոր առեալ դայեկացն՝ փախեան ոմն 'ի կողմն Յունաց և ոմն 'ի Պարսից:

Եւ լուեալ զայս Թագաւորին Պարսից՝ և եկն 'ի Մցխիթա[3]. և ետ նոցա երդումն, և Թագաւորեցոյց նոցա զմանուկն Միհրան[4] հնդամեայ[5]. և կացոյց զա-

1 Յօրինակին պակասի և սպանից:

2 Խորենացին ունի. «Յետ անցանելոյ երկուց ամաց՝ յերրորդումն սպանանէ զԽոսրով»:

3 Աստէն յօրինակի մերում պակասեն տողք ինչ, որով անկցորդ ընդ առաջնոցն մեան բանքն, զորս առեալ 'ի Պրոսեայ Թարգմանեմք 'ի հայ:

«Եւ լուեալ զայս արքային Պարսից՝ եկն 'ի Հայս, և կոտորեաց զամենայն տոհմն Խոսրովու, որոյ որդի մի միայն, Տրդատ անուն, զերծաւ առ Յոյնս: Իսկ Ասպակուրայ՝ արքային Վրաց, անցեալ յաշխարհն Օսաց՝ առ 'ի ժողովել իւր զօրս, անդէն մեռաւ: Եւ զի չէր նորա զաւակ արու, այլ դուստր մի միայն, չիջաւ այնու տոհմն Փառնաւազեանց, որոց՝ զկնի Աղեքսանդրի՝ քանեւութ համարին Թագաւորք: — Յետ այսորիկ ժողովեցան աւագանին Վրաց 'ի Մցխեթա, առ կուսակալն Մաժան, գիտել զխորհուրդս մտաց նորա. որոց ետ պատասխանի, զի Եթէ դեռևս կենդանի կայր արքայն մեր՝ զգլուխս մեր դնէաք 'ի վերայ նորա, և եթէ ապրեալ էր մեզ ժառանգ արքայութեանն՝ ամրացեալք 'ի բերդս մեր՝ և զմեռելոտիս անգամ, եթէ հարկ 'ի վերայ կայր, ուտել յանձն առնուաք, որպէս և հարքն մեր: Եւ զի 'ի զուր է արդ այս ամենայն, խնդիր արասցուք առ Թագաւորն Պարսից՝ զհարճորդւոյ նորին զՄիհրանայ՝ տալ մեզ զնա 'ի Թագաւոր և 'ի փեսայ Աբեշուրայ՝ դստեր արքային մերոյ Ասպակուրայ: Ընդ որ համախոհ գտեալ աւանին՝ հրեշտակ առաքեցին առ Թագաւորն Պարսից ասել՝ զի օրիորդն արքայազուն է յարենէն Արբակունեաց կամ Արշակունեաց և Փառնաւազեանց, որպէս և Նեբրովթեանց. և զի մերձաւորք են նոցա սահմանք Օսքն և Ալանք և Լեկք և Սոնք և Խազիրք, և այլ ամենայն ազգք հիւսիսոյ: Ընդ որ հաճեալ արքային Պարսից՝ եկն 'ի Մցխեթա, և եմուտ յուխտ ընդ նոսա», և այլն. — տես և անդր յաջորդեն բանք օրինակի մերում:

4 Զորրորդ հարստութիւն, Սասանեան կամ Խոսրովեան: Միհրան եկաց քսաներորդ չորրորդ արքայ, Խոսրովեան, ընդ ամս 77, Յ. Ք. 265–342:

5 Վախթանգ դնէ Է-ամեայ. չփոթութիւն Թուի 'ի հայումս ընդ Ե և ընդ Է:

ւառապետ և սնուցող տղային զդայեակն իւր զՄիր-վանոս, թողեալ առ նմա քառասուն հազար յընտիր արանց Պարսից. և ասաց՝ հինգ հազար[1] 'ի նոցանէ լինել առ թագաւորին, և այլն նստցին 'ի Հերեթ, և կռուեսցին ընդ խազրաց, և զի պաշտեսցէ որդի նորա զհուր, և երկիր պագցէ կռոցն վրաց. քանզի զայն հայցեցին Վիրք՝ զի մի հանցէ զնոսա 'ի կրօնից իւրեանց, զի լաւ է, ասեն, մեռանել մեզ, քան 'ի բաց կալ յօրինաց հարցն մերոց։ Եւ խաղաց թագաւորն Պարսից, և գնաց առ ստորոտովն կովկասու յաշխարհն իւր, գերելով զծործորս լերինն։ Իսկ Միհրան մնեալ և հասեալ յարս՝ ոփրեաց զՎիրս, և նոցա լեզուաւն վարէր, և երկրպագէր հինգ[2] պատկերաց առընթեր կրակարանին։ Եւ 'ի հնգետասան ամի նորա մեռաւ կինն. և բերին նմա կին 'ի Պոնտոսէ՝ զՍննա՝ դուստր Ուլխտոսի։ Եւ միշտ կռուէր Միհրան ընդ խազիրս. քանզի ջանս եդին խազիրք առնուլ զԴարբանդն, և բանալ զդուռն զայն, և ելանել 'ի վերայ Պարսից. և ոչ տայր նոցա թոյլ Միհրան։

Ի քառասուն ամին սորա մեռաւ հայր նորա Արտաշիր, և էառ զթագաւորութիւնն կրսեր եղբայր նորա Բարտամ[3]։ Եւ յորժամ լուաւ Միհրան՝[4] չոգաւ ի Բաղդատ[5] բազմութեամբ զօրաց, և յինքն առնուլ ջանայր զթագաւորութիւնն Պարսից՝ որպէս զաւագ

1 Վախթանգ ունի է-ըն հազար. դարձեալ խառնակութիւն 'ի հայումս ընդ Ե և ընդ Է։

2 Դարձեալ և աստ վրէպ ընթերցուածն է և է տառից, զի Վախթանգ ունի է-ըն պատկերաց, որք էին այսոքիկ նախայիշատակեալք, Գացայ, Գայիմ, Արմազ, Այինանա, Դայնանա, Զադէն, Աֆրոդիտէ։

3 Անծանօթ է ինձ Բարտամ անուն թագաւոր, որպէս և պատմեալքն աստ զնմանէ, յաջորդ Արտաշրի և կամ 'ի կարգի պայազատաց նորին, որք համարին զկնի Արշաւրի՝ Շապուհ, Ներսեհ, Որմիզդ, միւս Շապուհ, Կրման, Յազկերտ Ա., Վռամ, Յազկերտ Բ., Պերոզ, Վաղարշ, Կաւատ, Նուշիրուան, միւս Որմիզդ, Խոսրով և Յազկերտ վերջին, առ որով բարձաւ թագաւորութիւն տանն Սասանեանց՝ յԱրաբացւոց։

4 Յոր. Միրեան, որպէս և ուրեք ուրեք գրի Միհրան. կոչումն Միհրան է ըստ հնչման Պարսից, իսկ Միրեան ըստ Վրացւոց։

5 Զիարդ մարթ իցէ արդեօք նոյն համարել և ոչ ուրիշ զտեղիս զայս 'ի ծանօթն Պաղտատայ, հիմնելոյ զկնի ութհարիւր ամաց յետ Քրիստոսի։

# ԳԼՈՒԽ Ը

Գալուստ Ս. Նունեայ 'ի Վիրս, որոյ հարցեալ 'ի թագուհւոյն Վրաց՝ մանրապատում ուսանի զվարուց իւրոց, և թէ որպէս ազդեալ 'ի տեսլեան, 'ի հրամանէն Աստուծոյ եկեալ 'ի Վիրս՝ աղօթիւք խորտակէ զկուռս. յետ որոյ առանձինն բնակելով յանձնանօրս, յածախէ առ Հրեայս Մցխեթայ, որք ընդ Աբիաթարայ քահանայի դառնան 'ի հաւատս. և զի լուեալ զայս ամենայն հաւատայ 'ի Քրիստոս և ինքնին թագուհին Վրաց:

Ցայնմ ժամանակի երանուհին Նունի՝ Մայրն Վրաց եկն 'ի Մցխիթա, և եղև անդ ամիսս երիս: Եւ եհարց զնա թագուհին Վրաց Սողոմոնի՝ [1] թէ ուստի իցէ: Եւ ասէ ցնա Նունի. Լուր 'ի սկզբանէ վասն իմ. էր երբեմն զի ազգն Բրանջաց [2] կռուէին ընդ Հռոմայ, և այր ոմն Զաբողոն անուն կապադովկացի յաղթեաց նոցա Քրիստոսի զօրութեամբն, և ըմբռնեաց զթագաւորն և զզօրսն. և նոցա զարմացեալ խնդրեցին զշնորհս մկրտութեանն. զոր տուեալ նոցա, արձակեցին յաշխարհն իւրեանց՝ լուսաւորեալս 'ի Քրիստոս: Գնաց և ինքն Զաբողոն զկնի նոցա, և արար զազգն Բրանջաց քրիստոնեայ: Եւ եկն առ թագաւորն, և առեալ 'ի նմանէ բազում պարգևս՝ չոգաւ յԵրուսաղէմ պատուել զսուրբ տեղիսն: Եւ եգիտ անդ երկուս որբս, եկեալ 'ի Կլաստրատայ՝ զկնի մահուան ծնողաց իւրեանց քրիստոնէից, անուն միոյն Ցուբնաղ, և քեռն իւրոյ Սուսան, որ ծառայէր զՆիոփոր [3] Բեդղայեմացի. և էառ

1 Վերոյիշեալն Սողոմէ՝ դուստր Տրդատայ:

2 Անծանօթ է ազգն և աշխարհ Բրանջաց առ գիտունս. զորս Վախուշտ նոյն համարի ընդ Պարցհելոնացիս՝ 'ի Կադալոնիա Սպանիոյ. այլ ընծայութիւնքն զորս առաջի առնէ՝ ոչինչ իւիք զօրեն 'ի հաստատութիւն կարծեացն. մինչդեռ մերձաւորութիւն հնչմանն թուի յիշեցուցանել զՓռանկս: ԶԲրանջաց յիշատակ առնէ մատենագիրս և այլուր ուրեք ուրեք 'ի յաջորդութեան բանիցն:

3 Ցօրինակին խառն գրի Նիոփոր և Նիափոր:

Զաքողոն զՍուսան՝ իւր 'ի կնութիւն, և գնաց 'ի կլաստատաս քաղաք. և ծնայ ես 'ի նոցանէ: Եւ իմ եղեալ երկոտասանամենայ՝ եկին յԵրուսաղէմ. և հայր իմ [1] չոգաւ յանապատ, զիս յԱստուած յանձնեալ և 'ի շնորհսն Քրիստոսի, զի նուիրեցայց կուսութեամբ երկնաւոր փեսային: Եւ մտի ես 'ի տուն Նիկոփորայ հայկազնոյ, 'ի Դունայ քաղաքէ, և սպասաւորեցի նմա զամս երկուս. և հանապազորդ տեղեկանայի վասն տնօրէնութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, և թէ որպէս եղև կատարումն, և ուր են պատանք թաղման Տեառն մերոյ: Եւ ուսուցին զիս եթէ գրեալքն 'ի մարգարէս լցան 'ի Տէրն, և խաչեցաւ և յարեաւ, և ել յերկինս և գալոց է: Եւ զպատանսն կինն Պիղատոսի խնդրեաց, և հաւատաց 'ի Քրիստոս, և չոգաւ 'ի Պոնտոս 'ի տուն իւր. և զկնի ժամանակաց անկաւ 'ի Ղուկաս աւետարանիչ, և նա գիտէ զինչ արար: Եւ վարշամակն, ասեն, Պետրոս տարաւ ընդ իւր, և փորանկեալ պատմուճանն եհաս ծմակային երկրին, և կայ 'ի քաղաքն Մցխեթոյ. և խաչն Տեառն յԵրուսաղէմ թաղեալ կայ, և յայտնի՝ յորժամ կամի: Եւ իմ լուեալ զայս ամենայն՝ գնացի առ Պատրիարքն, և օրհնեաց զիս: Եւ չոգայ 'ի Հռոմ [2], թերևս գտից ինչ անդ մասն 'ի շնորհացն Քրիստոսի. և զերեսս իմ հաստատեալ 'ի յոյսն կենդանի՝ գտի զվանսն Պօղոսի, յորում բնակէին կուսանք անձինք երեքարիւր: Եւ յարեաւ անդ 'ի մեր վերայ փորձանք, և եկաք 'ի Հայս: Եւ յղեաց կայսրն

1 Յօրինակէն չիք Նմ: Զոգաւ յանապատ, այն է՝ եղև միայնակեաց:

2 Հմուտք ոմանք 'ի նորոց պատմագրաց և քննադատից, թուի ինձ եթէ իրաւամբ զՀռիփսիմեանս ոչ համարին եկեալս 'ի քաղաքէն Հռոմայ 'ի Հայս, այլ յաշխարհէն Հռոմայեցւոց, 'ի մէջ ածելով առ 'ի հաւաստիս պատմականս՝ ընդ այլոց զօրաւորագունից՝ և զբանս ինչ Թղթոյ կայսերն առ Տրդատ, աւանդեալ յԱգաթանգեղեայ. յորում գրէ կայսրն առ Տրդատ զի չէ նմա հնար գտանել 'ի մէջ Յունաց աշխարհին զհամանմանն Հռիփսիմեայ. այս բանք թերևս հաւատայուցանեն զմեզ բնակութեան կամ վանաց երեքհարիւր կուսանացն Հռիփսիմեանց՝ գտանելոյ յաշխարհին Յունաց և ոչ 'ի Հռոմ, ուստի անմարթ իմն էր գոգցես 'ի կայսերական քաղաքէն փախչել այնքան կուսանաց, որք յիշին յանհիչափ 'ի պատմագրաց. և յայլոց՝ եօթանասուն թուով, ընդ Հռիփսիմեայ և Գայիանեայ, և առանց յայտնի լինելոյ՝ գալ մինչև 'ի Հայաստան, զերծեալք 'ի վտանգաց ծովու և ցամաքի:

թուղթ առ Տրդատ. և արարեալ խնդիր, գտին զմեզ 'ի հնձանս այգեաց: Եւ ջանս եդեալ թագաւորին՝ ոչ կարաց հաւանեցուցանել ինքեան զհարսն Քրիստոսի Հռիփսիմէ. և սուր եդեալ կոտորեաց 'ի մէնջ երեսուն և եօթն ոգիս. և այլքն ցրուեցան: Եւ մնացի ես 'ի ներքոյ վարդենեաց՝ որ ոչ էր ծաղկեալ. և ամբարձեալ զաչս 'ի վեր՝ տեսի զհոգիս սրբոյն, զի գնային ընդ երկինս: Եւ զօրապետ մի էր կրօնաւոր, զօրք հրեղէնօք գային ընդ առաջ, ունելով բուրվառ 'ի ձեռին իւրում. և 'ի բուրմանէ խնկոյն լցան տիեզերք. և խնկարկեալ սրբոցն՝ դառնային նոքօք անդրէն, և մտանէին 'ի ներքին կողմ վարագուրին: Եւ իմ աղաղակեալ առ Տէր, ասեմ. ընդէ՞ր թողեր զիս աստէն, տէր իմ Յիսուս: Եւ ասացաւ առ իս. Մի՛ երկնչիր, զի ընդ նոյն ելանելոց ես առ քորսն քո. այլ արի գնա դու 'ի կողմն հիւսիսի, ուր հունձք բազում են և մշակ ոչ գոյ. և զկնի սուղ ժամանակի թուփդ այդ փշալի՝ ծաղկեալ փթթի վարդիւք: Եւ իմ յարուցեալ եկի յՈւրքանիս Հայոց, և ձմերեալ անդ, և 'ի յունիս ամսեան եկի 'ի լեառն Ծաւախեթոյ. և 'ի ծովն փառնաւայ եկեալ՝ տեսի անդ ձկնորսս 'ի ծովուն, և հովիւս առ եզր ծովուն. և լուայ՝ զի երդնուին յԱրամազդն և 'ի Զադէն. զի տեղեակ էի լեզուին Հայոց, ուսեալ 'ի տանն Նիոփորայ Դունացւոյ: Եւ հարցեալ զուստին՝ ասեն. Ի Դարբայ, 'ի Լրբնայ, 'ի Սափուրսլոյ, 'ի Քինծերոյ, յՈւպատէն Մցխեթոյ. ուր չաստուածք փառաւորին [1], և թագաւորք թագաւորեն. և գետս այս որ ելանէ 'ի ծովէս՝ անդր երթայ: Եւ իմ առանձնացեալ եդի զգլուխ իմ և ննջեցի: Եւ տուաւ ինձ գիր մի հռոմայերէն կնքեալ մատանեաւ. և գիր կնքոյն էր անուն Յիսուսի Քրիստոսի: Եւ ասէ ցիս այրն՝ որ ետ ցիս զթուղթն. Արի՛ գնա և քարոզեա՝ զոր ինչ գրեալ է այդր: Եւ ասեմ ցնա. Ո՞վ եմ ես, կին մի անգէտ և տկար: Եւ ասէ ցիս. Ի շնորհս քրիստոնէութեան և յաշխարհն կենաց, որ է վերինն Երուսաղէմ, ոչ է անդ արու և էգ. և տկարութիւն և տգիտութիւն ոչ ասի, քանզի Քրիստոս Աստուծոյ զօրութիւն և Աս-

1 Յօր. Փառաւորէին:

տուծոյ իմաստութիւն է. և Մարիամ Մագդաղենացին քարոզեաց զյարութիւնն Քրիստոսի՝ Առաքելոցն և այլոց բազմաց, և ոչ եղև ամօթ ինչ առողին և կամ լողացն։ Եւ բացեալ զգիրն՝ էր անդ կարճառօտ գրեալ զամենայն զօրութիւն աւետարանին, 'ի տասն բան բովանդակեալ։ Եւ իմ ընթերցեալ և իմաստնացեալ՝ զարթեայ. և խնդրեալ 'ի Տեառնէ, եկի զկնի գետոյն յարևմտից կուսէ, մինչ դարձաւ ջուրն ընդ արևելս. և հասի յԱւրբնիս, և եղէ անդ ամիս մի. և զկնի վաճառականաց եկի 'ի Մցխեթա։ Եւ յաւուր տօնի Արամազդայ՝ զկնի թագաւորին և ամենայն ժողովրդեանն. և տեսի անդ այր մի՝ պղնձի զրահ և սաղաւարտ զգեցեալ ոսկի, երկու ակամնք զմրըխտիւք և միով բիւրղիւ զարդարեալ, սուսեր 'ի ձեռին իւր ունելով որպէս փայլակն, և շարժէր ընա՝ ահ տանելով ժողովրդեանն։ Եւ նոքա սարսէին և ասէին. վայ մեզ, թէ սխալեցաք 'ի զոհն կամ մեղաք բանիւ ընդ Հրէի կամ ընդ մոգուց, և մեռանելոց եմք յԱրամազդայ։ Եւ կայր ընդ աջմէ նորա պատկեր ոսկի՝ անուանեալն Գացայ [1], և 'ի ձախմէ նորա պատկերն արծաթի՝ կոչեցեալն Գայիմ։ Եւ յիշեցի զբանն Յուբնաղայ պատրիարքին Երուսաղեմի, որ ասաց ցիս, եթէ հասանելոց ես 'ի յերկիր պատերազմողաց ճշմարտին Աստուծոյ. և յոգւոց ելեալ լացի, և հայցեցի յԱստուծոյ ողորմութիւն 'ի վերայ մոլորելոցն, և ասացի. Աստուած հօր և մօր իմոյ, սաստեա դիւացեալ պատկերացս այսոցիկ, և կորո զսոսա, զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտդ Աստուած։ Եւ եղև յանկարծակի հողմն սաստիկ և բարբառ որոտման և արկուածք շանթից և կարկուտ 'ի կշիռս լտեր, և հոտ գարշ և զազիր և խաւար թանձրամած, և արար աներևոյթ զպատկերսն. և ցրուեցան ամբոխն, և մտին 'ի թաքուստ։ Եւ յաւուրն երկրորդի ելեալ արտաքս թագաւորն և ամենայն ժողովուրդն, խնդրէին զպատճառս իրացն գտանել։ Յայնժամ ասէին ոմանք. Քաղդէացւոց աս֊

1 Նոյն է՝ զոր յառաջն Գացիմ անուանեաց։ Սեփական իմն մոլութիւն է Թարգմանչին և կամ ընդօրինակողի պատմութեանս՝ ազգի ազգի ծեքծեքմամբ խեղաթիւրել զմի և նոյն անուն։

տուածն Թրուջան և մերն Արամազդ թշնամիք են 'ի սկզբանէ. և երբեմն մեր աստուածն կորոյս զնա ջրով, և արդ նա էառ զվրէժն։ Եւ կէպք զճշմարիտն ասէին, թէ Մեծ Աստուածն՝ որ եհար զթագաւորն Հայոց, և դարձեալ բժշկեաց Հայաստանեայք հանդերձ, նա արար զսքանչելիս զայս։ Եւ իմ գտեալ զակն բիւրեղ՝ եկի առ ծառոյն Բանչի, զոր ասեն Հովանի Բարտոմայ արքայի, և աղօթեցի անդ զվեց օր։ Եւ 'ի յաւուր մեծի Գունափոխութեան Տեառն, յորժամ եցոյց Տէրն զպատկերն Հօր՝ գլխաւորաց Առաքելոց և մարգարէից, եկն առ իս աղախին մի արքունի՝ Շուշան անուն, և տեսեալ զիս՝ զարմացաւ. և ածեալ թարգման հռոմայերէն՝ եհարց զիս, զթալով 'ի վերայ իմ՝ որպէս յօտարի. և կամեցաւ տանել զիս յարքունիս։ Եւ ես ոչ գնացի ընդ նմա. այլ գնացեալ անտի գտի կին մի Անաստու [1] կոչեցեալ, որ էր ամուսին առն՝ որ պահէր զքուրաստանն արքունի, և ընկալաւ զիս խնդութեամբ. և եղէ 'ի տան նոցա զինն ամիս։ Եւ ոչ գոյր նոցա զաւակ, և վասն այնորիկ էին 'ի մեծի տրտմութեան։ Եւ այր մի լուսաւոր ասէ ցիս. Մուտ 'ի բուրաստանդ, և յարմատոյ շոճի թփոյն առ վարդենեաքն՝ առցես հող, և տացես դոցա ուտել յանուն Տեառն, և տացի դոցա զաւակ։ Եւ արարի այնպէս. և ետու նոցա յանուն Յիսուսի Քրիստոսի Աստուծոյն Սաբայովթայ, որ եկն խոնարհութեամբ, և գալոց է փառօք իւրովք դատել զաշխարհս ըստ արժանեաց։ Եւ նոցա լուեալ հաւատացին 'ի Քրիստոս, և առին զխոստացեալ զմանուկն։ Եւ իմ ելեալ 'ի տանէ նոցա, և արտաքոյ պարսպին 'ի պրակս ճշենեաց արարի ինձ դադարս. և անդ կացի ամս երիս. խաչ մի ձևացուցեալ՝ երկրպագէի առաջի նորա սրբոյ Երրորդութեանն 'ի տուէ և 'ի գիշերի։ Եւ օր ըստ օրէ գնայի առ Հրեայսն՝ սակս լեզուոյն, և 'ի տեղեկութիւն՝ Տեառն պատմուճանին։ Եւ քահանայն Աբիաթար, և դուստր [2] իւր Սիդոնա հա-

1 Վախթանգ. դնէ Անաստասիա։

2 Վախթանգ. ունի. Եւ կին նորա Սիդոնիա. որ ոչ թուի ուղիղ, քանզի սուղ ինչ զկնի ինքնին Աբիաթար 'ի բանս իւր դուստր կոչէ ինքեան զՍիդոնիա։

ւատացին 'ի գալուստն Քրիստոսի, և վեց կին հրեայ ընդ նոսա. և հարցեալ ուսցիս յԱբիաթարայ զճշմարտութիւնն ։

Եւ զայս ամենայն լուեալ իմաստուն թագուհին՝ զարմանայր և հաւատայր ասացելոցն ։ Եւ յորժամ լուաւ զմեծ սքանչելիսն, որ եղև առ հայրն իւր Տրդատիոս, առաւել ևս հաստատէր 'ի հաւատս, և փառաւորէր զԱստուած յանպատում փառս իւր ։

# ԳԼՈՒԽ Թ

*Պատմէ Աբիաթար քահանայ թէ որպէս գիր ընկալեալ ըզ-Քրիստոսէ 'ի Հրէից Անտիոքայ, և ստուգեալ 'ի կատարման աւուրցն նշանակելոց 'ի Դանիելէ, և լուեալ 'ի Ս. Նունեայ՝ մըկըրտեալ հաւատաց 'ի Քրիստոս: — Խնդրեալ 'ի լսողացն պատմէ զանօրէնութեանն Քրիստոսի, և զերթալոյ իւրոյ ընդ այլոց ոմանց յԵրուսաղէմ, և բերելոյ ընդ իւրեանս զպատմուճանն Տեառն: — Զայրացեալ Հրէից՝ մինչև խնդրել քարկոծել զնա, սանձահարին 'ի հրամանէ թագաւորին, որ դիւրութիւն առնէ քրիստոնէից:*

Իսկ քահանայն Աբիաթար պատմեաց 'ի լուր ամենեցուն՝ զայս ձև օրինակի բանի, եթէ Յաւուրն յորում եկն սուրբն Նունի 'ի Մցխիթա՝ քահանայ էի ես վիճակաւ ազգին իմոյ. և բերաւ առ իս գիր յԱնտիոքայ 'ի Հրէից անտի՝ որ անդ կային, եթէ Թագաւորութիւնս հերձաւ ընդ երիս, և իշխեն մեզ Հռոմք և Յոյնք և Հայք. և լռեցին մարգարէքն մեր, և քանդեցաւ տաճարն մեր: Եւ զայս գիտեմք 'ի գրոց, զի յորժամ մեղանչէին հարքն մեր, Աստուած բարկանայր, և տայր զնոսա 'ի գերութիւն. և յորժամ զփորձն տեսեալ զղջանային, և կարդային առ Տէր աղօթիւք՝ հաշտէր Աստուած, և առնէր նոցա դարձ և ողորմութիւն. և եօթն անգամ եղև այս յաւուրսն առաջինս: Իսկ յորմէհետէ խաչեցին հարքն մեր զորդին աղքատ կնոջն տառապելոյ՝ զանուանեալն Քրիստոս, այս երեքհարիւր ամք են՝ զի բարկութիւն Տեառն յաճախէ 'ի մեզ, և աղաղակեմք առ նա զցայգ և ըզցերեկ, և ոչ տայ մեզ պատասխանի, ոչ հաշտի ընդ մեզ: Ուստի իմանալ արժան է եթէ նա է Որդին Աստուծոյ, նկատեալն յօրինաց և 'ի մարգարէից: Եւ դու տես և քննեա իմաստութեամբ քո 'ի ծանօթութենէ գրոց՝ եթէ որպէս կատարեցան ամենայն գրեալքն, և

յերկնից էր մարդն այն ստուգապէս: — Իսկ ես 'ի տրտմութեան մեծի եղեալ զբազում աւուրս, և ապա խնդրեալ գիրս՝ գտի զժամանակն նշանակեալ 'ի Դանիելէ՝ 'ի գլուխ ելեալ առ Օգոստոսիւ կայսերբն Հռոմայեցւոց: Եւ մինչ յայսոսիկ էի ես՝ տեսի զսուրբն Նունի, և տեղեկացեալ լուայ 'ի բերանոյ նորա ըզբանս գրոց մերոց մարգարէից, և զօրախութիւն տընօրէնութեան նորա կարգաւ, զամենայն՝ 'ի ծննդենէն մինչև ցհամբառնալն յերկինս. և հաւատացի ըստուգութեամբ՝ եթէ նա էր յոյսն հեթանոսաց, և փըրկութիւն ժողովրդեան իմում Իսրայելի: Եւ ահա եղաք արժանի ես և զաւակս իմ ջրոյ Նիեբազոյ՝ որ է Բեթղաէմի, որում ցանկացեալ Դաւթի, և ոչ եհաս. և յիշեաց զմեզ Տէր ըստ հաճոյս ժողովրդեան իւրոյ, և այց արար մեզ 'ի փրկութեան իւրում, և բնակեցաք մեք 'ի տան Տեառն, զի յաւիտենից օրհնեսցուք զՏէր, քանզի զմեզ երանեաց սուրբն Դաւիթ. և տացէ ինձ Աստուած և այլ սքանչելիս և բարութիւնս տեսանել 'ի քաղաքիս 'ի ձեռն սրբուհւոյն Նունեայ:

Եւ զարմացեալ լուողացն՝ ասեն ցԱբիաթար. Զոր ինչ գիտես յաղագս այդորիկ՝ պատմեա մեզ: Եւ ասէ ցնոսա. Լուաք մեք 'ի հարցն մերոց, զոր պատմեալ էին հարքն նոցա, եթէ յաւուրս Հերովդի արքայի՝ եկն համբաւ առ Հրեայսն Մցխիթոյ, եթէ թագաւորք 'ի Պարսից եկեալ առին զԵրուսաղէմ, և քահանայքն Բուդայոյ և կոդի, Մղարացիքն դպիրք, և կանանացիք Թարգմանիչք դիմեցին փախստեամբ յարևելս, և 'ի սուգ մտին ամենայն Հրեայք: Որ և զկնի սակաւուց հնչեաց լուր աւետեաց եթէ Պարսիկքն՝ որ յԵրուսաղէմ, ոչ եկին 'ի պատերազմ, այլ յերկրպագութիւն կուսորդւոյ միոյ՝ ծնելոյ 'ի զաւակէ Դաւթի, առաջնորդ ունելով 'ի յերկնից՝ աստղ բանական և իմաստուն. զոր գտեալ յանապատի՝ փառաւորեցին զնա իբրև զԱստուած. զի փոխանակ զինուց պատարագս ունէին ընդ ինքեանս, ոսկի արքունական և զմուռ բըժշկութեան և կնդրուկ նուէր Աստուծոյ. և զայսոսիկ մատուցեալ մանկանն՝ գնացին: Եւ լուեալ զբանն՝ ազգին Հրէից՝ խնդացին յուրախութիւն մեծ: Եւ ըզկնի ամաց երեսնից եկն գիր յԵրուսաղեմէ, յԱննայէ

քահանայէ՝ առ հայր[1] մօրն իմոյ՝ յԻլիոս, եթէ ընծայեալն 'ի մոգուց մանուկն Յիսուս՝ այր եղեալ՝ ասէ զանձն Որդի Աստուծոյ. եկայք, որ կարողքդ էք, զի կատարեսցուք առ նա զօրէնսն Մովսիսի՝ սպանանելով զնա։ Եւ չոգաւ Իլիոս քահանայն՝ հմուտ օրինացն, 'ի ցեղէն Եղիազարու, յազգէ տանն Հեղեայ. և ունէր նա մայր 'ի նոյն ազգէ, որ պատուիրեաց նմա և ասէ. Մի հաղորդիր, որդեակ, խորհրդոց Հրէիցն. քանզի պատգամս մարգարէից և առակ օրինաց, և բանն Աստուծոյ կենդանւոյ[2]։ Գնաց ընդ նմա և Ղունկիանոս կարմնացի. և երթեալ՝ դիպեցան աւուրն խաչելութեան։ Եւ իբրև պասանիկն[3] պնդեաց զբևեռսն, զմայր Իլիոսի ընդոստոյց[4] մասն մարգարէութեան՝ որ 'ի նմա, և ասաց. Ի խաղաղութիւն հեթանոսաց՝ թագաւորդ Իսրայելի, փրկիչ աշխարհի. և երիցս, վայ ձեզ՝ սպանողք արարչին ձերոյ[5]. այլ խնայեա 'ի մեզ, տէր Աստուած մեր։ Եւ հանգեաւ՝ 'ի Քրիստոս հաւատացեալ նոյն ժամայն։ Իսկ փորանկեալ պատմուճանն վիճակաւ հասեալ եղև Մցխիթայ Հրէիցս. և առեալ Իլիոս՝ եբեր զնա 'ի տուն իւր։ Եւ ընդ առաջ երթեալ քոյր նորա՝ առեալ համբուրէր, և դնէր 'ի վերայ լանջացն, և աւանդէր զհոգին՝ Քրիստոսի, երիս ունելով պատճառ, զմահն Տեառն, և զմօրն մահն, և զեղբօրն միաբանիլն ընդ Հրեայսն։ — Եւ Ադրիկ էր թագաւոր Վրաց, լուեալ աքանչացաւ, բայց ոչ կամեցաւ առ ինքն ունել զպատմուճան մեռելոյն. և պահեցին զնա 'ի ներքոյ նոճի ծառոյն՝ որ բերեալ էր

1 Թերևս ճշմարտագոյն լիցի ասել առ հօր մօրն իմոյ. քանզի որպէս մարթ է զպապ Աբիաթարու ժամանակակից ասել Քրիստոսի, մինչդեռ 'ի մահուանէ Քրիստոսի ցԱբիաթար գտանի միջոց երեքհարիւր ամաց։

2 Այս է՝ Քրիստոս է պատգամս մարգարէից և առակեալն յօրէնս և ինքնին բանն Աստուծոյ։

3 Անծանօթ է ինձ նշանակութիւն բառիս, զոր անտեղի համարիմ անուն յատուկ ասել. նշանակիցէ թերևս դահիճ, և կամ մանաւանդ բռնօղ, առեալ 'ի յունէն πασσαχίζων.

4 Յօր. Ընդ ոստոյ։

5 Պրոսէ Թարգմանէ. Եւ երիցս յաւել. Վայ ձեզ. և այլն։ Ըստ Վախթանգայ մայրն Իլիոսի 'ի Մցխեթա կալով՝ լուաւ զձայն բևեռելոյն զՔրիստոս 'ի խաչին յԵրուսաղէմ, և հաւատաց 'ի նա։

զտունկ նորա 'ի Լիբանանէ։ Եւ ահա տունն Իլիոսի, որ կայ յարեւմտից Մոգթայ կամրջին։

Իբրեւ լուէին զայս ամենայն Հրեայքն՝ ամաչէին յանձինս իւրեանց, եւ խորհեցան քարկոծել զնա. քանզի կորովի իմաստութեամբն իւրով 'ի Հին Կտակարանաց անտի ճշմարտէր զաստուածութիւնն Քրիստոսի՝ ընդ Հօր եւ ընդ Հոգւոյն փառաւորել։ Եւ լուեալ թագաւորին զաղմուկ Հրէիցն՝ սաստեաց նոցա. եւ հրամայեաց մի՛ արգելուլ զքարոզութիւնն զայն յաշխարհէն իւրմէ. քանզի լուեալ էր զհրաշսն՝ որ եղեւ 'ի Հայս եւ 'ի Հռոմս։

---

# ԳԼՈՒԽ Ժ

Քարոզութիւն և տեսիլ Ս. Նունեայ. — Սքանչելիք բժշկութեան 'ի վերայ ախտացելոյ որդւոյն մանկան. — Սքանչելիք ցուցեալք 'ի թագուհին Նանա. — Գիրք ազգին Նեբրովթայ և շինութեան Քաղանէի. — Յաղագս բժշկութեան մոգի միոյ, մերձաւորի արքային Միհրանայ. — Շարժեալ 'ի սքանչելեաց՝ հաւատայ Միհրանայ 'ի Քրիստոս և դիմէ առ Ս. Նունէ. — Հիմնարկութիւն առաջին Եկեղեցւոյ 'ի Վիրս, և վրդովմունք ոգւոյն չարութեան, և սքանչելիք ցուցեալք յԱստուծոյ։

Յայնժամ սուրբն Նունէ համարձակէր հաւատացեալ աշակերտօքն՝ տարածանել զհաւատսն Քրիստոսի պէսպէս նշանօք, զոր առնէր նկարեալ խաչիւն։ Եւ տեսանէր երիցս անգամ 'ի նիրհելն իւրում 'ի վերայ ծնկացն՝ զի երամք սեւաթոյր թռչնոց իջեալ 'ի գետ անգր՝ եղանէին սպիտակացեալ 'ի բուրաստանն, և արածէին 'ի ծաղիկս նորա. և սակաւ ինչ առեալ անտի՝ տային տեառն ծաղկոցին։ Եւ պատմեաց զատերն Աբիաթարայ՝ զտեսիլն. և նա ասէ. Եկ[1] և պանդուխտըդ՝ ժառանգեցուցիչ դրախտին և ծառոյն կենաց. այդ աւետիքն է հարցն մերոց, և գործ երկնաւոր մարդոյն Յիսուսի և անմեղ արեան նորա։ Այլ դու, Երուսաղէմ, Երուսաղէմ, սփռեա զթեւս քո, և հաւաքեա զվիճակեալս երկնաւորին, ընդ որ և զմեզ ժողովեսցես 'ի ձեռն սրբուհւոյս այսորիկ, որ առնէ զտեղիս զայս դրախտ փափկութեան։ Իսկ սուրբն Նունէ յաւելոյր 'ի ճգնութիւն և յաղօթս հանապազորդ. և զարմանային ընդ ժուժկալութիւն նորա հեթանոսքն։

Յաւուրսն յայնոսիկ կին ոմն շրջեցուցանէր զմանուկ ախտացեալ անբժշկելի ցաւօք, թերևս թէ գտցէ

1 Կարծեմ 'ի նմանաձայնութենէ բառին չփոթեալ զէկն՝ իբրև բայ հրամայական թարգմանէ Պրոսէ. « Viens, étrangère, qui nous fais, etc. »։

զոք ապրեցուցիչ տղայոյն՝ հնարիւք դեղոց. և էր ինքն չարաբարոյ և հայհոյիչ Քրիստոսի, և զբազումս արգելոյր 'ի քարոզութենէ Նուննեայ։ Բայց յորժամ թափեցաւ յամենայն հնարից, տարաւ ընկէց զմանուկն առաջի սրբոյն Նուննեայ։ Եւ ասէ սուրբն. Բժշկութիւն մարդկային ես ոչ ունիմ, բայց զՔրիստոսն իմ՝ զարարիչն երևելեաց և աներևութից։ Եւ եդեալ զտղայն 'ի մահիճս իւր՝ խաչակնքեաց ասելով. Աստուած իմ Յիսուս, թագաւոր յաւիտենից, բժշկեա զմանուկս զայս յանուն զօրութեան քո, զի գիտասցեն հեթանոսք, եթէ դու ես կեցուցիչ ազգի մարդկան, որ քո իսկ են արարածք, և քեզ իսկ պարտին երկրպագութիւն և պատիւ և փառք յաւիտեանս, ամէն։ Եւ զայս ասացեալ՝ ետ զմանուկն բժշկեալ և գեղեցկացեալ և լի զուարթութեամբ՝ ցկինն։ Եւ նորա ասացեալ՝ եթէ Ոչ գոյ այլ Աստուած, բայց 'ի քէն Քրիստոս, տէր և իշխան կենաց և մահու. գնաց խնդութեամբ, և պատմեաց ամենեցունց. և դարձաւ առ Նունի, և ոչ մեկնէր 'ի նմանէ։

Յաւուրսն յայնոսիկ անկաւ թագուհին Նանա յախտս անբժշկելի, և զպարտութիւն խոստովանեցան ամենայն ճարտարքն յարուեստ բժշկութեան, եթէ անհնար է ցաւդ այդ բժշկել 'ի մարդկանէ։ Եւ պատմեցին վասն Նուննեայ՝ թագուհւոյն. և առաքեաց ածել զնա առ իւր։ Եւ չոգան գտին զնա յաղօթս 'ի մացառս պուրակին[1] մոշենեաց առաջի խաչին. և պատմեցին նմա զբանս տիկնոջն. և ասէ ցնոսա. Յայամ ժամու ես ոչ իշխուցանեմ զխիրտ 'ի Տեառնէ իմմէ. եթէ կամի նա՝ առ մեզ եկեսցէ։ Եւ լուեալ զբանն տիկնոջն, ասէ. Բարձէք և տարայք զիս առ նա։ Գնացին զհետ նորա յոյժ բազմութիւն արանց և կանանց. և տարեալ եդին զնա 'ի մահիճսն Նուննեայ. և նորա աղօթեալ յերկար՝ եդ զխաչն 'ի վերայ նորա չորեքկուսի, և նոյնժամայն նստաւ ողջացեալ։ Եւ յարուցեալ 'ի տեղւոջէն՝ գնաց 'ի տուն իւր, փառաւորելով զՔրիստոս Աստուած, ամենայն բազմութեամբն հանդերձ։ Եւ յայնմհետէ աշակերտեալ ճշմարտութեանն՝ ուսանէր զօրէնսն Քրիս-

1 Յոր. Պարուկէն։

տոսի 'ի սրբոյն Նունեայ և յԱբիաթար քահանայէն, որ և Պօղոսն կոչեցաւ 'ի հաւատալն ։

Եւ թագաւորն Միհրան զարմացեալ լինէր, և հարցանէր զՊօղոս՝ եթէ որպէս եղև Աստուած մարդ, և զինչ են ուսմունքդ այդ և անուն քրիստոնէութեան ։ Եւ նա պատմէր նմա ըստ կարի զամենայնն կարգաւ ։ Եւ Միհրան ունէր գիրք մի, որ պատմէր յաղագս ազգին Նեբրովթայ և շինութեան Քաղենեայ. և ետ բերել զայն առաջի իւր. և ընթերցեալ զայն, եգիտ 'ի նմա այսպիսի ինչ բան, եթէ Յորժամ՝ սկսան շինել զաշտարակն և զքաղաքն Քաղանէ, եկն ձայն 'ի բարձանց՝ որ ասէր. Ես եմ Միքայէլ, իշխան արևելեան մասինս. թողէք զոր շինէքդ, զի Աստուած կործանելոց է զդա ։ Բայց յետին ժամանակս գայ արքայն երկնաւոր, և կատարէ որում ցանկացեալ էք. և տեսանեն զանարհամարհն՝ արհամարհեալ 'ի մէջ ժողովրդոց, և սէր նորա հալածէ զվայելչութիւն աշխարհի. զի թագաւորք թողուն զթագաւորութիւնս, և սիրեն զաղքատութիւնս, և ոչ զփառսդ՝ զոր դու խնդրես, ո՛ Նեբրովթ [1] ։ Եւ ընթերցեալ զայս թագաւորն՝ մտախորհ լինէր և հիանայր՝ եթէ զի վկայեն Քրիստոսի ներքին և արտաքին գիրք. և ոչ կարէր զպաշտօն հայրենի սովորութեանն թողուլ՝ զարեգակն և զհուր, և զԱրամազդ և զայլ պատկերս ։

Յաւուրսն յայնոսիկ հիւանդացաւ մօգ մի ազգական թագաւորին. և ասէ ցսուրբն Նունէ՝ Միհրան. Դու դուստր ես Արամազդայ և կամ զաւակ Ջադինայ, որք բերին զքեզ աստ իբրև զօտար, և շնորհեցին քեզ զարիութիւն [2] բժշկութեան, զի փառաւորես զքեզ. և արդ, արա բժշկութիւն ընտանւոյս իմոյ անուամբ նոցա, և մի՛ մոլոր հաւատոյն Յունաց պատմող լինիցիս. զի թէպէտ և Թրուշան աստուածն Պարսից [3] ամպով և կարկտիւ վանեաց և տարաւ զնոսա, այլ տեղին կայ

1 Վախթանգ յաւելու. Եւ տեսցէ զքեզ 'ի նեղութեան քում և փրկեսցէ ։

2 Թուի՝ զօրութիւն ։

3 Ի վերոյ զԹրուշան՝ աստուած ասաց Քաղդէացւոց, և աստ Պարսից ։

հաստատուն, և այն պատերազմ սովորութիւն է աշխարհակալաց. այլ և հին աստուածք հարցն մերոց կան, Գայիմ և Գացիմ, և են արեգական ծագողք և անձրևաց տուողք և արդեանց երկրի բուսուցիչք: Պատասխանի ետ սուրբն և ասէ. Կին մի գերի եմ ես, ստեղծուած և երկրպագու աներևոյթ և անծանօթ աստուածութեանն՝ Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, որ է արարիչ երկնի և երկրի. որ վասն բազում ողորմութեան իւրոյ՝ տայ արհամարհողաց իւրոց կենդանութիւն և սնունդ և պատիւ, որպէս և քեզդ. զի ետ քեզ միտս և բան՝ զի գիտասցես զերկնից բարձրութիւնն և զաստեղաց դիրս և զծովու խորութիւն և զերկրի լայնութիւն, և սոքօք ճանաչեսցես զկառավարն սոցա և զյօրինիչն: Եւ ասեմ քեզ՝ եթէ անհաս մեծութիւնն այն՝ որ զգեցուցանէ զերկինս ամպօք, և որոտայ ձայնիւ օդոց, և 'ի ձեռն մեծի կիտոսին շարժէ զամենայն երկիր, Նա իջեալ 'ի բարձանց ողորմութեամբ, և առեալ զմեր բնութիւնս՝ կատարեաց ժամանակս երեսուն և երից ամաց. և յանմիտ ազգէն անարգեցաւ և խաչեցաւ, կամօք և ոչ 'ի հարկէ. և երեքօրեայ յարուցեալ՝ վերացաւ յերկինս. և քարոզս առաքեաց յաշխարհ՝ հաւատալ յանուն Նորա, և կեալ աստուածպաշտութեամբ, 'ի բաց կացեալ 'ի կռոցն սնոտեաց. զոր և ես քեզ աւետարանեմ, զի հաւատասցես եթէ զոր ինչ առնեմ ես՝ անուամբ Նորա: Եւ կայ աստ պատմուճան մի Նորա ծածկեալ. և որպէս ասեն՝ մաշկեակն Եղիայի, տեառնն Աստուծոյ՝ աստ է: Եւ զի յայտնապէս ուսջիք զասացեալս՝ բերէք առ իս զմոգն Խորասանեան, զԹշնամին ճշմարտութեան. և ուրացցի զաղանդ իւր, և հաւատով դաւանեսցէ՝ զոր ինչ տամ Նմա ասել: Եւ իբրև ածին առ Նա 'ի դրախտ անդր, 'ի ներքոյ տնկոյն շոճեաց, դարձոյց զնա յարևմուտս, և ասել ետ երիցս, եթէ Հրաժարեմ 'ի քէն սատանայ. և դարձուցեալ յարևելս՝ ասել ետ. Անկանիմ առ քեզ սուրբ Երրորդութիւն, և դիմեմ 'ի քեզ խաչեալդ Աստուած: Եւ ելաց Նունի, և տեառնագրեաց խաչիւն, և ել 'ի Նմանէ ոգին չար իբրև զծուխ. և ողջացաւ այրն 'ի դիւէն և 'ի ցաւոցն, և հաւատաց 'ի Քրիստոս ամենայն տամբ իւրով. և փա-

ռաւորեցին տեսողքն զՀայր և զՈրդի և զՀոգին սուրբ, յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Յետ այսորիկ գնաց Թագաւորն յորս ընդ Մուխնարն, յամսեանն յուլիս՝ 'ի քսանն, յաւուր շաբաթու: Եւ մինչ էին 'ի ճանապարհին՝ հնչեաց սատանայ 'ի սիրտ Թագաւորին, և ասէ ցչորս խորհրդակիցսն իւր. Ընդէ՞ր հեղգացաք մեք 'ի պաշտելոյ զդիսն՝ յորմէհետէ եկն կախարդդ այդ, և քարոզեաց զքրիստոնէութիւն. և արդ կորուսցուք զմոլորեալսն 'ի նմանէ՝ նովաւ հանդերձ, և յաճախեսցուք 'ի պաշտօնն հայրենի: Եւ նոցա լուեալ՝ խնդացին, և առաւել ևս յորդորեցին: Առեալ զխորհեալսն, և շրջեալ նոցա ընդ Մուխնարայ սահմանն՝ եկին 'ի լեառն Թխուլթոյ, զի 'ի բարձրութենէ անտի տեսցեն զկազըս և զՈւփլիսցիխէ: Եւ ահա եղև 'ի վերայ մէգ և մառախուղ, և խաւարեցաւ արեգակն 'ի մէջօրէի, և եղև գիշեր. և անկաւ 'ի վերայ արհաւիրք, և թողեալ զԹագաւորն՝ ցրուեցան: Եւ նա 'ի դողման եղեալ, և յուսահատեալ 'ի կենաց, ասաց. Յիսուս Քրիստոս, Աստուած Նունեայ, ստացիր զիս քեզ 'ի ծառայութիւն, և հան 'ի դժոխոց զանձն իմ, զի աստուածքն իմ չկարացին ինձ օգնել. և հաւատամ զի դու կարող ես, և քո է օր և գիշեր: Խաչեալդ Տէր, խաչիւ քո կեցո զմեզ. զի կարծեմ ես եթէ 'ի վերայ ամենեցունց ոչ է խաւարս այս, այլ մեր միայնոյ, որ զկնի լուսոյդ եկեղութեան՝ սիրեմք զխաւարն: Եւ զայս իբրև ասաց՝ ծագեաց արեգակն պայծառ օդով. և գտին զնա զօրքն իւր: Եւ իջեալ յերիվարացն՝ անկան 'ի վերայ երեսաց իւրեանց, և երկրպագեցին խաչելոյն, ասելով. Դու ես Աստուած յերկինս 'ի վեր և 'ի վերայ երկրի, և քո է լոյս, և քո է խաւար. զքեզ օրհնեմք Տէր տերանց և Աստուած աստուածոց. և զի ստացար զմեզ քեզ՝ 'ի տեղւոջս յայս, աստ կանգնեսցուք զնշան խաչի քո, որով փառաւորի անուն քո անպատում սքանչելեօքս, անուն քո յաւիտեանս [1]: Եւ դարձան 'ի տուն, աւետաւորս ար-

1 Ըստ ոմանց՝ այս վէպք դարձին Միհրանայ Ճարտարադիւտ իմն մտահաճոյ յօրինուած համարին, ըստ նմանութեան օրինակի դարձին Տրդատայ Մեծի. այլ ինձ՝ որոց զայս ասիցեն՝ առաւելա-

ձակելով յառաջագոյն՝ որոց նստէին 'ի սուգ՝ վասն չար համբաւոյն զոր լուեալ էին. իսկ իբրև լսեցին զխաղաղութեամբ դառնալն, ելին մեծաւ ուրախութեամբ ընդ առաջ թագաւորին ամենայն բազմութիւն քաղաքին: Եւ ասէ թագաւորն. փառք տուք 'ի մի բերան Քրիստոսի Աստուծոյ, արարչին երկնի և երկրի: Եւ ո՞ւր է սուրբն Նունի մայրն իմ, քանզի Աստուած նորա՝ Աստուած իմ է: Ասեն ցնա. Ահա աղօթէ վասն քո 'ի Մորենւոջն, յխսուն ոգւովք: Եւ չոգան առ նա, և անկեալ երկրպագէին նմա: Եւ նա բուռն հարեալ կանգնէր զնոսա, և դարձուցանէր յարևելս, և խրատ տայր՝ փրկողին իւրեանց Քրիստոսի երկրպագել, և խոստովանել զնա Որդի Աստուծոյ կենդանւոյ: Եւ լայր ամենայն բազմութիւնն 'ի տեսանելն զթագաւորն, և տային օրհնութիւն Աստուծոյ կենդանւոյ:

Ապա գրէ սուրբն Նունի առաջի Հեղինեայ տիկնոջն Հռովմայ թուղթ, և Միհրան առ մեծն կոստանդիանոս, զի Տէր այց արար տանս Վրաց՝ մեծաւ ողորմութեամբ. և առաքեցէք մեզ քահանայս՝ տալ մեզ կեանս ջրով և հոգւով[1]: Եւ ինքն սրբուհին Նունի ոչ

գոյն քմահաճոյ երևին կարծիքդ. զի չունին ինչ ընծայութիւնս հաւաստեաց, և մերժել կամին զգերբնականն՝ 'ի հակառակս ելեալ աւանդութեան ոչ միայն ազգին Վրաց, այլ և վկայութեան մերոյ Խորենացւոյ, որ և աւանդէ զայն ըստ այսմ օրինակի. « Եւ եղև ընդ աւուրսն ընդ այնոսիկ ելանել Միհրանայ յորս. մոլորեցաւ 'ի դժուարս լերանց խաւարեալ օդով, այլ ոչ տեսանելեօք...: Այսպիսի խաւարաւ ըմբռնեալ Միհրան, որ եղև նմա առիթ մշտնջենաւոր լուսոյն...: Եւ երկիւղիւ մեծաւ պաշարեալ, խնդրեաց աղօթիւք լուսաւորիլ օդոյն և դառնալ խաղաղութեամբ, պաշտել զԱստուածն Նունէի խոստանայր. որում հանգիպեալ՝ կատարեաց զասացեալսն »:

1 Ըստ բանից Խորենացւոյն՝ « Նունէի խնդրեալ արս հաւատարիմս, յղեաց առ Ս. Գրիգոր, եթէ զի՞նչ հրամայեսցէ նմա գործել այնուհետև. քանզի յօժարութեամբ ընկալան Վիրք զքարոզութիւն աւետարանին: Եւ հրաման ընդունի՝ կործանել զկուռս, որպէս ինքն արար, և կանգնել զպատուական նշան խաչին՝ մինչև ցօր տալոյ Տեառն հովիւ յառաջնորդութիւն նոցա: Եւ իսկոյն կործանեաց զամպրոպային պատկերն Արամազդայ, որ կայր մեկուսի 'ի քաղաքէն՝ գետոյն հզօրի ընդ մէջ անցանելով. զոր սովոր էին երկրպագել այգուն այգուն 'ի տանեաց իւրաքանչիւր, զի հանդէպ նոցա երևէր. իսկ եթէ ոք զոհել կամէր, անցեալ ընդ գետն՝ առաջի մեհենիցն զոհէր »: Յետ այսոցիկ բանից յաւելու ասել թէ որպէս

դադարէր 'ի քարոզութենէ երկոտասան կանամբք, որք միշտ ընդ նմա լինէին: Եւ խորհի այնուհետև թագաւորն շինել եկեղեցի, մինչև քահանայքն եկեսցեն: Եւ մտին 'ի դրախտն, և հատին զծառն չոճի, և կազմեցին 'ի նմանէ վեց սիւն, և արկին զհիմունսն, և կանգնեցին զվեց սիւնսն. և զեւթներորդն՝ որ մեծն էր քան զամենայն՝ ոչ կարացին շարժել 'ի տեղւոյն՝ ոչ բազմութեամբ և ոչ հնարիւք մեքենայից, մինչև 'ի մտանել արեգականն. և ապա թողին և գնացին մեծաւ հիացմամբ: Եւ սուրբն Նունէ երկոտասանիւքն մնաց անդէն զգիշերն, և աղօթէր արտասուօք: Եւ 'ի մէջ գիշերին լինէին արհաւիրք և շարժմունք և որոտմունք, որպէս թէ փլանել երկուց լերանց՝ Արմազայ և Զադէի, և աւերել զերկոսին գետսն՝ Կուր գետոյ և Արագոյ, և դառնալ նոցա 'ի վերայ քաղաքին և բերդին: Եւ զարհուրեցան կանանին որ ընդ Նունեայ, և սկսան փախչել: Եւ ասէ սուրբն. Մի՛ զարհուրիք, զի ցնորք է այս և ոչ ճշմարտութիւն. քանզի լերինքն կան հաստատուն, և գետքդ գնան զընթացս իւրեանց, և խաղաղեալ ննջեն մարդիկ քաղաքիս. այլ անհաւատութիւնն լեռնացեալ՝ փլաւ ստուգապէս, և արիւն մանկանցն՝ կռոցն մատուցեալ՝ անդրէն դարձաւ, զոր գետքդ նշանակեն, և ձայնք ողբէլալեաց, որք աշխարեն զկորուստ իւրեանց՝ մոլորեցուցիչք դեք պիղծք: Եւ զայս ասացեալ՝ յորդորէր զնոսա 'ի ժրութիւն, և յորդէր[1] ինքն զաղբիւրս արտասուաց: Եւ մինչչև էր հաւու խօսեալ՝ լինէր խռովութիւն և աղաղակ, երբև զօրու ծանու պատել զքաղաքն, և առնուլ զնա և կոտորել. և տալ հրաման 'ի ձայն զօրութեան, եթէ Տայ ձեզ հրաման Խորա թագաւորն Պարսից, և արքայից արքայն Խորախոսրով հրամայէ. և թէ Հրեայքդ 'ի բաց կացէք և զատարուք, և մի՛ մեռանիք. և թէ Ա-

առ 'ի բառնալոյ Տեառն զարհամարհութիւն ժողովրդեան ընդ անշուք փայտ խաչին, որք այպանէին «այնպիսեաւ լի լինել ամենայն անտառաց իւրեանց», առաքեաց յերկնից սիւն ամպոյ լուսաւորութեան և բուրումն անուշահոտ, և երկոտասան աստեղս ծաղկեալ 'ի լոյսն՝ տպաւորմամբ ըստ ձեւոյ և չափու փայտեղինին. յոր հաւատացեալ երկրպագէին՝ ընդունելով շնորհս բժշկութեանց:

1 Յօր. Յորդորէր:

Հա սպանաւ Միհրան [1] թագաւորն ։ իսկ սուրբ առաքելուհին տարածեալ զբազուկսն՝ ասէ · Գնացէք 'ի խաւարն արտաքին, ահա եկն խաչեալն՝ սպանիչն ձեր, և երթա՛յք 'ի կողմն հիւսիսոյ ։ Եւ նոյնժամայն եղեն աներևոյթ ։ Եւ մօտ ընդ առաւօտն երևէր պատանի մի հրեղէն, ծածկեալ 'ի լոյս անմատչելի, և խօսէր ընդ սուրբն Նինայ բանս երիս . և ապա երթայր առ սիւնն, վերացուցանէր զնա 'ի բարձունս ։ Եւ տեսանէր զամենայն՝ կին մի Սիդինա անուն, որ և գնացեալ առ Նինաւ՝ ասէ · Զի՞նչ էր այս, սուրբ դշխոյ ։ Եւ նա ասէ ցնա · Լուռ լեր և աղօթեա ։ Եւ ահա տեսին զի գնայր սիւնն՝ վառեալ լուսով մեղմութեամբ, և իջանէր 'ի հաստեալ արմատոյն իւրոյ ։ Եւ ընդ լուսանալն՝ եկն թագաւորն, և ամբոխ յոյժ ընդ նմա, և տեսին զի սրացեալ էր սիւնն, և եկն առանց ձեռին, և հաստատեցաւ 'ի վերայ սարսխին . և ամբարձեալ զձայնս իւրեանց՝ ետուն փառս Աստուծոյ ։ Եւ յաւուր յայնմիկ եղեն բազում սքանչելիք 'ի տեղւոջն . զի Հրեայ մի կոյր 'ի ծնէ՝ մերձ տարան սեանն, և առժամայն բացաւ ։ Եւ ապա թագաւորազն մի Համազասպունի, ութամեայ, անդամալոյծ [2], բերեալ մօրն, և եդեալ առաջի սեանն մահճօքն, և աղաչէր զՆինաւ վասն փրկութեան մանկանն ։ Եւ նորա հասուցեալ զձեռն իւր 'ի սիւնն՝ եդ 'ի վերայ մանկանն, ասէ · Յիսուս Քրիստոս, որ եկիր մարմնով վասն փրկութեան աշխարհի, օգնեա տղայոյս այսորիկ ։ Եւ առժամայն յարեաւ մանուկն, և եկաց 'ի վերայ ոտից իւրոց . և ամենայն բազմութեանն տեսեալ՝ տային օրհնութիւն Աստուծոյ . և անկաւ ահ 'ի վերայ ամենեցուն ։ Եւ թագաւորն արար ծածկոյթ սեանն . և կատարեցին զեկեղեցին շինելով 'ի փառս Աստուծոյ ։

1 Յօր . Միհրան . զոր Պրոսէ վրէպ ընթերցմամբ թարգմանէ . En voici un qui a été tué par ordre du roi; այսինքն է . Ահա սպանաւ մի (ոմն) հրաման(աւ) թագաւոր(ի)ն ։

2 Երկբայական մնայ իմաստն, եթէ թագաւորա՞զն իցէ յութամեայ տիս, կամ թէ որդեօք յութ ամաց հետէ անդամալոյծ . զվերջին կարծիս ընտրեալ ունի Պրոսէ ըստ Վախթանգայ . բայց բանքն գոլով աստանօր զմանկանէ միոյ, զառաջինն կալեալ զիմաստ՝ ըստ այնմ յաւելաք և զստորակէտն ։

# ԳԼՈՒԽ ԺԱ.

Գալուստ քահանայից և եպիսկոպոսի 'ի Յունաց, և մկրտել ամենայն Վրաց ընդ Միհրանայ, և ձեռն արկանել 'ի շինել զեկեղեցիս, և հանգուցանել 'ի նոսին զնշխարս սրբոց: — Կանգնումն նշանի Ս. Խաչին 'ի տեղիս ինչ յայտնեալս յերկնուստ: — Սքանչելիք ցուցեալք 'ի նշանէ Ս. Խաչին կանգնելոյ: — Կոստանդիանոս տայ արձանագրել 'ի մատենի զպատմութիւն դարձելոյ 'ի հաւատս Հայոց և Վրաց: — Կամեցեալ Միհրանայ զօրութեամբ զինու տարածանել զհաւատսն խափանի 'ի Ս. Նունեայ. որոյ շրջեալ քարոզութեամբ բանին 'ի կողմանս հիւսիսոյ՝ փոխի 'ի Տէր: — Կոստանդիանոս արձակել զԲանքար՝ զորդի Միհրանայ, որ կայր 'ի պատանդի. որ և 'ի մեռանել երեց եղբօրն՝ ընդունի զթագն արքայական 'ի ձեռանէ Միհրանայ՝ հօր իւրոյ, 'ի մահու նորին, որոյ պատուէրս տուեալ որդւոյն և կնոջն՝ ննջէ 'ի Տէր:

Իսկ թագաւորն Կոստանդիանոս տեսեալ զհրեշտակսն Միհրանայ՝ խնդաց յոյժ վասն դարձի Վրաց 'ի Քրիստոս, և զի հաւատաց եթէ բնաւին 'ի բաց կացին 'ի միաբանութենէն Պարսից. նոյնպէս և դշխոյն Հեղինէա. և փառաւոր առնէին զԱստուած: Եւ առաքեցին եպիսկոպոս մի Յովհաննէս կոչեցեալ, և քահանայս երկու և սարկաւագս երիս, և խաչ ընդ նոսա և պատկեր փրկչական: Եւ եկեալ լուսաւորեցին մկրտութեամբ զթագաւորն [1] և զկին իւր և զորդիսն և զարս երևե-

[1] Վախթանգ զմկրտութիւն թագաւորին 'ի ձեռն Ս. Նունեայ ասէ կատարեալ, և ոչ քահանայիցն. զի գրէ. «Միհրան թագաւոր մկրտեցաւ 'ի ձեռն Ս. Նինէի, և յետոյ թագուհին և որդիք նորա՝ 'ի ձեռն քահանայից և սարկաւագաց. յետ սոցա եպիսկոպոսն՝ 'ի յարդարեալ տեղւոջ մերձ առ դուռնն Մոկթայ առ Կուր (Մթուար) գետով, յորում վայրի շինեալ կայր տունն Ելիոսի, 'ի տեղւոջ յայնմիկ մկրտեաց զաւագանին մի ըստ միոջէ, յորմէ և կոչումն տեղւոյն Մթավարթա-Սանաթլաւի (մկրտարան Մթավարաց): Իսկ 'ի ստորև՝ առ գետափամբն՝ երկոքին քահանայքն և սարկաւագունք՝ մկրտէին զժողովուրդն, որոց շուրջ զնովաւ կուտեալ՝ այր քան զընկեր աղաչէին կանխել հասանել շնորհին»:

լիս, 'ի տեղւոջն որ կոչի Մոկթա, և կոչեցաւ տեղին՝ Գլխաւորաց լուսատու։ Եւ մկրտեցան ամենայն Վիրք, բայց 'ի Մթեւուլեացն, և 'ի Կովկասու, և 'ի Հրէիցն՝ որ 'ի Մցխիթա. այլ 'ի Բարաբբայնոցն մկրտեցան յիսուն այր [1]. և սիրեաց զնոսա թագաւորն, և ետ նոցա զԴիդիցիխէ։ Եւ փերոզ՝ որ ունէր զտունն Ռանայ մինչ 'ի Պարտաւ, որ փեսայ էր Միհրանայ, ոչ լուաւ բանին կենաց։ Եւ առաքեաց Միհրան զՑովհաննէս եպիսկոպոս և այր մի աւագ ընդ նմա առ Կոստանդիանոս, և խնդրեաց յոլովութիւն քահանայից, և մասն 'ի խաչէն Տեառն [2], և քարակոփս 'ի շինութիւն եկեղեցեաց։ Եւ նա առաքեաց զամենայն զոր խնդրեաց, և զտախտակն ոտիցն Տեառն, և զբևեռս ձեռացն, և այլ սպասս եկեղեցւոյ և ծախս, զի յանուն նորա շինեսցեն եկեղեցի յերկիրն Քարթլայ։ Եւ եկն եպիսկոպոսն յերկիրն Ուշէթ, և էարկ հիմն եկեղեցւոյ, և եդ անդ զբևեռսն, և եթող անդ շինողս և ծախս։ Եւ անցեալ 'ի Մանկլիս՝ և անդ եդ հիմն եկեղեցւոյ, և եդ անդ զտախտակն սուրբ։ Եւ լուաւ թագաւորն, և տրտմեցաւ վասն մասանցն այլուր դնելոյն, և ոչ յարքունական քաղաքին, և զի ոչ անդր եկին դեսպանքն նախ։ Եւ ասէ սուրբն Նինաւ. Մի՛ դժուարիր, արքայ, զի յամենայն տեղիս արժան է սերմանել զանուն Տեառն. և կայ աստ մեծ սրբութիւն և յիշատակ 'ի Տեառնէ՝ պատմուճանն սուրբ։ Եւ լուաւ թագաւորն յԱբիաթարայ զամենայն որպիսութիւն պատմուճանին, և փառաւորեաց զՔրիստոս՝ ասելով. Օրհնեալ է տէր Աստուած, որ եհան զնա յատելեաց իւրոց Հրէիցն, և շնորհեաց մեզ հեռաւորացս ողորմութեամբն իւրով։ Եւ սկսան ապա քարակոփքն 'ի գալ եպիսկոպոսին՝ շինել եկեղեցի արտաքոյ քաղաքին, որ է այժմ եպիսկոպոսարան։ Եւ ասաց սուրբն Նինաւ 'ի սկսանել

1 Վախթանգ ունի յիսուն տուն։

2 Գիւտ Ս. Խաչին եղև յամի Տեառն 326–327 'ի ձեռն Հեղինէ դշխոյի. իսկ զժամանակ դառնալոյ Վրաց աշխարհին 'ի հաւատս, ոմանք զհետ գնալով Վախուշտ պատմագրի, կարգեն գրեաթէ 10 ամօք յառաջ, և այլք՝ զամս ինչ զկնի քան զայս Թուականս։ — Խնդիր ստուգութեան ժամանակաց նախնի հնաւանդ վիպաց՝ է կարծեաց բաւիղ անելանելի։

գործոյն. փառաց բաշխողդ Քրիստոս՝ Որդի Աստուծոյ, նկիր լրմամբ և զօրութեամբ քո յազգն Դաւթի. և 'ի միածին մօրէ՝ ծնար միածինդ Աստուած, լոյսդ ամենեցունց, պատկերդ Հօր, որ իբր կարօտ՝[1] առեր մկրտութիւն 'ի ջրոյ և 'ի Հոգւոյ, խաչեցար և թաղեցար 'ի սիրտ երկրի, յարեար երեքօրեայ, ելեր յերկինս, և գաս դատաւոր կենդանեաց և մեռելոց. դու լեր հովանի և ամրութիւն ամենայն յուսացելոց 'ի քեզ. և քեզ օրհնութիւն յաւիտեանս. ամէն:

Եւ պատմեցին ոմանք 'ի նմին ժամու եպիսկոպոսին՝ եթէ 'ի ստորոտս փոքու լերինն՝ կայ ծառ մի գեղեցիկ և անուշահոտ, և լինին 'ի նմանէ բժշկութիւնք էրէոց՝ որք վիրաւորին յօրսորդաց, յորժամ ուտեն 'ի թափել տերևոց նորա և կամ 'ի պտղոցն: Եւ ասէ ցնոսա. Ստուգապէս երկիրս այս խնամեալ է միշտ 'ի Տեառնէ՝ նախ քան զճանաչելն զնա: Եւ առեալ զՐէվ արքայորդին՝ չոգաւ եպիսկոպոսն[2], և կտրեալ զծառն ստովքն՝ բերին 'ի քաղաքն, մարտի քսան և հինգ՝ յուրբաթու. և լի էր տերևօք. և կանգնեալ զնա 'ի դրան եկեղեցւոյն՝ զաւուրս երեսուն և եօթն[3] մնաց անթառամ, որպէս յիւրական արմատոյն: Եւ 'ի մայիսի մի՝ կազմեցին երիս խաչս. զմին կանգնեցին. և 'ի տեսիլ ամենայն ժողովրդեանն՝ իջանէր յերկնից խաչ լուսեղէն՝ պսակեալ աստեղօք, և զգենոյր զփայտեղէնն՝ մինչև ցառաւօտն: Եւ ապա երկու աստեղք ելանէին անտի, մինն յարևելս սլացեալ և մինն յարևմուտս կոյս: Եւ ասէ սուրբն Նինաւ. Ելէք 'ի բարձր տեղիս, և դիտեցէք թէ ուր երթան աստեղքն: Եւ ելեալ տեսին և ասացին՝ թէ մին աստղն փայլէ 'ի ծայրս լերինն Թխոթոյ, որ ելանէ 'ի Կասբ, և միւսն յերկիրն Կախեթոյ 'ի Դաքայ: Եւ տարան զերկոսին խաչսն, և կանգնեցին 'ի տեղիսն՝ զոր Տէր եցոյց 'ի ձեռն փայլատակեալ աստեղացն. և զաւագ խաչն կանգնեցին 'ի վերայ

1 Բրոսէ Թարգմանէ. Source puissante du baptême par l'eau et par l'esprit; այսինքն է. Աղբիւր հզօր մկրտութեան ջրով և հոգւով. Թերևս զոր ինչ կարօտն՝ ընթերցեալ աղբիւր կարօղ:

2 Յօր. Առ եպիսկոպոսն. որով խանգարին միտք բանիցն:

3 Յօր. Երեսուն և հինգ. ուղղեցաւ 'ի Վախթանգայ:

վիմին՝ որ կայ հանդէպ քաղաքին. և կարգեցին զօր մեծի Զատկին՝ Տօն խաչին՝ ամենայն տանն Քարթլայ, զութ օր։ Եւ զկնի աւուրց՝ դարձեալ լուսով փայլատակեալ խաչն բորբոքէր յաւուր չորեքշաբաթու, ունելով 'ի գլուխն պսակ յերկոտասան աստեղաց։ Եւ 'ի տեսիլ սքանչելեացն՝ յոլովք 'ի հեթանոսացն դարձան 'ի Տէր և մկրտեցան. և հաւատացեալքն՝ են հաստատեալք 'ի հաւատս՝ տային օրհնութիւն Աստուծոյ, երկրպագութեամբ սրբոյ նշանին. քանզի իբրև զկայծակունս 'ի քրայից՝ հրեշտակք Աստուծոյ շրջէին զխաչիւն, և ելանէին 'ի վերայ նորա։

Յաւուրսն յայնոսիկ որդին Բէվայ [1], որ էր ժառանգ թագաւորութեանն, հիւանդացաւ մերձ 'ի մահ. և բերեալ հօրն՝ ընկէց առաջի խաչին, և առժամայն ողջ եղև. և փառք ետուն Աստուծոյ։ Եւ հայր մանկանն շինեաց 'ի վերայ խաչին մարմարեայ խորանս, և ամի ամի գայր նուիրօք պատարագաց յերկրպագութիւն խաչին։ Եւ կոյր մի երկու աչօքն՝ եկն անկաւ առաջի սրբոյ նշանին, և բացաւ զկնի եօթն աւուր։ Եւ կին մի՝ ութամեայ լլկեալ 'ի դիւաց, բերին մահճօք, և ընկեցին յոտս խաչին. և զկնի երկոտասան աւուր գնաց ողջացեալ 'ի տուն։ Եւ մանուկ մի մեռեալ, եբեր մայր նորա ձգեաց առընթեր խաչին. և յոլովք ասէին ցնա. ի բաց տար և թաղեա զդա, և մի յանդգնիր. այլ նա ոչ հաւանէր զյոյսն իւր. և 'ի ժամ երեկոյին յարեաւ մանուկն, և տարաւ զնա մայր նորա 'ի տուն իւր. և զոր տեսեալ ժողովրդոցն՝ տային օրհնութիւն Աստուծոյ խաչեցելոյն։ Այլ և ոչ մերձ եկելոցն բաշխէին բժշկութեան շնորհքն միայն, այլ և հեռաւորացն՝ որք կարդային զանուն սրբոյ խաչին նունեայ. վասն որոյ և բազում կանայք ամուլք՝ առին զաւակս 'ի պարգևաց խաչին։

Յաւուրսն յայնոսիկ առաքեաց թագաւորն կոստանդիանոս [2] սարկաւագ մի, որ ունէր թուղթ 'ի Բրան-

1 Յօր. Երէվայ։

2 Վախթանգ կարգէ այսպէս. « Յաւուրսն յայնոսիկ եկն թուղթ 'ի սրբոյ պատրիարքէն Հռովմայ փռ Նինէ, առ թագաւորն և առ ժողովուրդ Վրաց. առաքեցաւ և սարկաւագ մի Բրանջ ա-

ջաց ազգէն, որք 'ի հօրէ Նորա [1] լուսաւորեալք էին. քանզի լուան Նոքա եթէ 'ի Հայս և 'ի Վիրս ծագեաց արեգակն արդարութեան մեծապայծառ ճառագայթիւք, և մեծամեծ գործք Աստուծոյ երևեցան առ Նոսա. և առաքեցին գրով զցնծութիւն սրտից իւրեանց, և ևս առաւել կամեցան տեղեկանալ 'ի ձեռն Բրանջ սպասաւորին, զի գրեալ զամենայն ստուգութեամբ՝ տարցի առ Նոսա, որ ինչ 'ի Հայս և 'ի Վիրս իրք եղեն 'ի փառս Աստուծոյ: Զոր իմացեալ սարկաւագին՝ գրեալ 'ի մատենի՝ տարաւ յաշխարհն իւր 'ի Բրանջս:

Յայնմ ժամանակի խորհեցաւ Թագաւորն Միհրան՝ պատերազմօք բռնութեան՝ ածել 'ի հաւատս զփերոզ փեսայն իւր և զՄթեւուլսն. և արգել զնոսա սուրբն Նունի, ասելով՝ եթէ Տէրն ոչ եկն սրով և աղեղամբ, այլ խաչիւ և աւետարանաւ: Եւ չոգան եպիսկոպոսն և Նինաւ, և իշխան մի ընդ նոսա՝ 'ի Ծրբին, 'ի Ճարթալ, 'ի Թխելա, 'ի Ծիլկան, 'ի Գօրամաղր. և ոչ ընկալան զբան Տեառն. և իջին 'ի Ժալէթ և յերծոյթ, և քարոզեցին անդ. և լուան Նոքա և մկրտեցան: Եւ փխացիքն Թողին զերկիրն իւրեանց, և գնացին 'ի Թոշէթ. և բազումք 'ի լեռնականացն կան մինչև ցայսօր 'ի կռապաշտութեան: Եւ սուրբն Նինաւ գնաց յերկիրն Ռանայ՝ քարոզել փերոզի, և դադարեաց մերձ 'ի սահմանս Կուխեթոյ, և հիւանդացաւ անդ [2]: Եւ Րէվ՝ որդի Թագաւորին, և Սողոմէ կին իւր, որք կային յՈւջարմա, եկին տեսանել

գաւ՞ շնորհս ունել և օրհնել զսուրբն Նինէ, և հայցել զօժանդակութիւն աղօթից Նորին: Ածեալ էր ընդ իւր սարկաւագին և թուղթ մի առ Ս. Նինէ 'ի Թագաւորէն Բրանջաց, որք 'ի հօրէ Նորա մկրտեալք էին »:

1 Այսինքն՝ 'ի հօրէ սրբոյն Նունեայ, ըստ վերոյգրելոցն:

2 Մերս Մ. Խորենացի համառօտիւ հատանէ զգովութիւն Սրբուհւոյս՝ յորժամ ասիցէ. « Իսկ երանելին Նունէ ել գնաց աշակերտել զայլ ևս գաւառսն Վրաց յանապակ լեզուէն, շրջելով անպաճուճաբար և առանց աւելորդաց, օտարացեալ յաշխարհէ և որ 'ի սմա. կամ թէ ճշմարտագոյն ասել 'ի խաչ ելեալ, 'ի կրթութիւն մահու զկեանսն առնելով, բանիւ՝ վկայ Բանին Աստուծոյ, և յօժարութեամբն իւրով՝ որպէս արեամբ պսակեալ: Զոր համարձակիմք ասել Առաքելուհի եղեալ, քարոզեաց 'ի Կղարջաց սկսեալ առ դրամբք Ալանաց և Կասբից մինչև 'ի սահմանս Մասքթաց »:

զնա։ Եւ Թագաւորն լուաւ, և առաքեաց զեպիսկոպոսն տանել զնա 'ի Մցխիթա. և ոչ կամեցաւ երթալ։ Ապա եկն առ նա Թագաւորն և կին իւր, և Պեղուժամր Սիւնեցին [1], և բազմութիւն ժողովրդոց. և նստեալ շուրջ զնովաւ՝ լային։ Եւ նա հայէր ընդ երկինս անքթիթ աչօք, լի զուարթութեամբ։ Յայնժամ ասեն ցնա Թագուհիքն. Մայր սուրբ, որպէս լուաք 'ի քէն, կային Որդւոյն Աստուծոյ բազմութիւնք մարգարէից, և եղեն նորա երկոտասան առաքեալք և եօթանասուն և երկու աշակերտք, և ոչ ոք 'ի նոցանէ առաքեցաւ առ մեզ, բայց միայն դու սրբուհի. և արդ պատմեա մեզ զորպիսութիւն ծննդեան և սննդեան քո առ մեզ։ Եւ ասէ ցնոսա սուրբն. Ջի՞ կամիք տեղեկանալ յաղագս տառապեալ աղախնոյս Քրիստոսի, որ այսուհետև կոչէ զիս առ ինքն, և 'ի մայրն իմ յաւիտենից. և պատմեալ է իմ յականջս Սողոմեայ, դստերդ արքային Հայոց, համառօտ զօրինակ գալոյն իմ այսր. տո՛ւք բերել քարտէս և մելան, և գրեցէք 'ի բերանոյ դորա. և զայլն դուք ինքնին գիտէք, զոր լուայքն և տեսէք։ Եւ խաղաղութիւն Տեառն եղիցի ընդ ձեզ. և յանձն առնեմ ձեզ զՅակոբ քահանայն, որ զկնի Յոհաննիսի լինելոց է եպիսկոպոս՝ 'ի կոչմանէ Հոգւոյն։ Եւ ապա ետ մատուցանել պատարագ եպիսկոպոսին Յոհաննիսի, և հաղորդեցաւ 'ի սուրբ խորհրդոյն. և յանձն արարեալ զինքն Թագաւորին երկնաւորի՝ կատարեցաւ 'ի Քրիստոս. և Թաղեցաւ 'ի նմին տեղւոջ [2], յերեքհարիւր երեսուն և երկու [3] ամի վերացման Տեառն,

1 Առ Վախթանգայ գրի անուանք Հերոժ Աւրխուանէլ. զոր թերևս ուղղագոյն իցէ ընթեռնուլ Պերոժաւր կամ Պերոզաւր Սիւնեցի. թէպէտ և անծանօթ է ինձ եթէ անուն նորին և եթէ յիշատակութիւն ինչ ուրեք 'ի պատմութիւնս զնմանէ։

2 Այն է՝ 'ի Հերեթ գաւառի, 'ի Բոդբէ գեղջ. զի ըստ Վախթանգայ՝ նա ինքն Ս. Նունէ խոստումն առեալ էր յարքայէն՝ յանուն Աստուծոյ՝ թաղել զնա 'ի տեղւոջն յայնմիկ, առ խոնարհութեան, զի անապատ և անշուք էր տեղին. զոր յակամայս բանադատեցաւ կատարել արքայն՝ առ 'ի լնուլ զվերջին հրաման և զկամս Սրբոյն Նունեայ։

3 Ըստ Վախուշտ պատմագրի՝ յամի Տեառն 329, իսկ ըստ Վախթանգայ՝ 338 'ի վերացմանէ Տեառն, և 5838 յարարչութենէ աշխարհի. թերևս վրիպակաւ չփոթեալ իցեն թիւքն ՅԼԲ և ՐՂԼԲ ընդ ՅԼԸ և ՐՂԼԸ։

և յելիցն Ադամայ 'ի դրախտէն՝ հինգ հազար ութհարիւր երեսուն և երկու ամի, հնգետասաներորդի ամի՝ մտից նորա 'ի Քարթլ։

Իսկ Թագաւորն կոստանդիանոս գրեաց թուղթ առ Միհրան, և արձակեաց զորդի նորա զԲաքար, որ կայր առ նմա պատանդ, և ասէ. Ես կոստանդիանոս ինքնակալ, նոր ծառայ Յիսուսի Քրիստոսի, նովաւ ազատեալ 'ի գերութենէ սատանայի, առաքեցի առ քեզ, Միհրան, Թագաւոր Վրաց՝ զորդիդ քո. զի Տէրն մեր լիցի 'ի միջի մերում երաշխաւոր, կալ քեզ մեզ հնազանդութեամբ [1], և նա հալածէ զխափանիչ դեն 'ի սահմանաց քոց։ Իսկ Միհրան արար ուրախութիւն մեծ Նանայիւ՝ մարբ մանկանն, և ամենայն աշխարհաւն՝ 'ի փառս Աստուծոյ։ Յետ այսորիկ կատարեաց զեկեղեցի եպիսկոպոսարանին, և ելից զարդուք։ Եւ յաւուրսն յայնոսիկ մեռաւ Ռէվ որդի նորա, կեցեալ ամս երեսուն և չորս։ Եւ 'ի նոյն ամի հիւանդացաւ Թագաւորն Միհրան. և կոչեաց զորդի իւր, և եդեալ զԹագն 'ի վերայ խաչին, և ապա առեալ անտի՝ դնէր 'ի գլուխ նորա, պատուիրելով նմա զկրօնս և զկարգս աստուածպաշտութեան։ Եւ ասէ ցկինն իւր. Երթ, բնակեա 'ի գերեզմանն սրբոյն Նունեայ, և անդ կեաց. և շինեա եկեղեցի, և պատուեա զտեղին, և բաշխեա զգոյսս մեր աղքատաց՝ ընդ երկուս հատեալ. և ես ահա երթամ՝ ուստի եկի. և գոհանամ զԱստուծոյ՝ որ դարձոյց զխաւարն իմ 'ի լոյս և զմահն 'ի կեանս և զձախ յաջ. և դուք ժրասջիք, և զմնացեալ կուռսն կործանեսջիք. և եղիցի ընդ ձեզ Տէր ամենակալ։ Եւ զայս ասացեալ՝ ննջեաց։ Եւ յերկրորդում ամին հանգեաւ Թագուհին Նանա 'ի Տէր։

1 Յօր. Հնազանդութիւն։

# ԳԼՈՒԽ ԺԲ

*Թագաւորել Բաքքարայ օգնականութեամբ Պարսից՝ հակառակ կամաց Հայոց, և գործք նորա և մահ. — Յաջորդութիւն եպիսկոպոսաց. և թագաւորել Միհրդատայ և ապա որդւոյ նորա Վարզաքարայ, և հալածել սորա Պարսից, և պարտիլ 'ի Յունաց. և զկնի սորին յաջորդութիւն թագաւորաց ունելից, որպէս և եպիսկոպոսաց, յետ Յակոբայ. — Յաղթութիւն Արշէի արքայի և որդւոյ նորա Միհրդատայ 'ի վերայ Պարսից. — Կարգ յաջորդութեան եպիսկոպոսաց, և յաղագս գործոց Մուշեղայ անարժան եպիսկոպոսի. — Թագաւորութիւն Միհրդատայ և ծնունդ Վախթանգայ, և իշխանութիւն Սակդխտոյ և մահ Մուշեղայ։*

Բայց ոչ տային Հայք թագաւորել Բահքարայ, զի կամէին զորդի դստերն Տրդատայ թագաւորեցուցանել։ Իսկ Բահքար ապաւինեցաւ 'ի Պարսս՝ տալով նոցա երկիր. և Պերոզի ետ 'ի Շամշոյտոյ մինչև 'ի գլուխ Աշոցաց [1]. և նոյնպէս աղաչանս արձակեալ 'ի Յոյնս, և յամենայն կողմանց ժողովեալ զօրս՝ տուին պատերազմ ընդ Հայս 'ի Ջաւախէթ, և հալածեցին զնոսա [2].

1 Ըստ Վախթանգայ՝ Բահքար եդ դաշն ընդ արքային Պարսից, որ՞էր որդի եղբօր հօր իւրոյ, և « փոխանակ աշխարհին Ռանայ՝ սկսեալ 'ի Պարտայ, զոր Պերոզի փեսայի նորա ընկալեալ էր 'ի Միհրանայ, ետ նմա զերկիրն ընդ ամենայն երկայնութիւն գաւառին, սկսեալ 'ի Շամշոյլտայ մինչև ցմուտս Աշոցաց. և յայնժամ Պերոզ ընկալաւ զքրիստոնէութիւն, մկրտելով ինքն և ամենայն ժողովուրդն իւր »։

2 Պատերազմն այսպիսի և պարտութիւն ոչ ուրեք յիշի առ պատմիչս ազգիս՝ ընդ Վրաց ազգին. և զի պատմիչս ոչ կարգէ զժամանակ իրացն՝ մարթ է կարծել մեզ յաւուրս Խոսրովու Երկրորդի լեալ. զորմէ ասէ Խորենացի՝ թէ « Գիտացեալ զթուլամորթութիւն նորա և զյուլութիւն՝ բնակչաց հիւսիսոյ Կովկասու, ի գաղտնի հրամանէ Շապհոյ Պարսից արքայի՝ միաբանեալ արշաւանօք 'ի մէջ աշխարհիս մերոյ հասանէին, մեծաւ ամբոխիւ, որպէս թէ երկու բիւրովք. (Ասողիկ՝ երիս բիւրս դնէ)... և զհիւսիսային մեր գունդն հարեալ... և հասեալ 'ի դրունս Վաղարշապատու՝ պաշարէին »։ Թէպէտ և ոչ յիշին աստ յանուանէ Վիրք, սակայն ոչինչ արգելու և զնոսին ձեռնտուս և գործակիցս դնել ազգացն Հիւսիսոյ. թէպէտ և ոքին ևս ոչ յերկար վայելեցին 'ի յաջողութեան զինուց իւրեանց, վանեալք յասպետէն Բագարատայ և 'ի Վահանայ Ամատունւոյ։

և թագաւորեաց Բահքար՝ [1] ուժովն Յունաց և Պարսից՝ Գիր էառ [2] 'ի Սողոմեայ և յորդւոյ իւրմէ, զի որչափ չէ հաւատալ ազգն Բահքարու՝ ոչ խնդրեսցեն նոքա թագաւորութիւն։ Եւ ետ նոցա զկուխէթ, և կացոյց իշխան Ռիշոյ։ Եւ էր ինքն հաստատուն 'ի հաւատս, և դարձոյց զբազումս 'ի կաւկասեաց՝ 'ի Քրիստոս. և շինեաց եկեղեցի 'ի Ծիլկան, և բազմացոյց քահանայս և սարկաւագունս։ Եւ մեռաւ խաղաղութեամբ, և թաղեցաւ ընդ եղբօր իւրում [3]. և թագաւորեաց որդի նորա Միրդատ [4]։

Եւ զկնի Յոհաննիսի եպիսկոպոսին՝ եղև եպիսկոպոս Յակոբ. և յետ նորա՝ Ներսէս կաթուղիկոսն Հայոց՝ ձեռնադրեաց զսարկաւագն իւր զՅակոբ՝ եպիսկոպոս Վրաց, և առաքեաց [5]։ Իսկ Միրդատ թագաւորն էր մարդ հաւատացեալ յԱստուած, և եկեղեցաշէն և զարդարիչ. և յաւուրս նորա սկսան տանել մասն 'ի սիւնէն՝ զոր վաղագոյն յիշեցաք. և ոչ արգելոյր թագաւորն։ Մեռաւ Միրդատ, և թագաւորեաց որդի նորա Վարզաբաքար [6]. և արար կանայս երկուս, զդուստրն Բէվայ [7], և զթոռն Փերոզայ, որ ծնաւ նմա զՓարսման. և դուստրն Բէվայ ծնաւ զՄիհրդատ և զՏրդատ։ Եւ

1 Քսաներորդ հինգերորդ արքայ, խոսրովունի, իշխեաց ընդ ամս 22, 'ի 342–364 յետ Քրիստոսի։

2 Յօր. Եւ Թագաւորեաց Բահքար, և ուժովն Յունաց և Պարսից գրէ առ 'ի Սողոմեայ, և այլն։ Վախթանգ ունի այսպէս. « Յետ այսորիկ միջնորդելով արքային Պարսից և կայսերն Յունաց՝ գրեաց Բահքար առ որդիս եղբօր իւրոյ (Բէվայ) և առ Սողոմէ՝ օրինակ զայս. և այլն »։

3 Վախթանգ դնէ ընդ հօր իւրում։

4 Քսաներորդ վեցերորդ արքայ, խոսրովունի, իշխեաց զամս 15, 'ի 364–379 յետ Քրիստոսի։

5 Թէպէտ և կաթողիկոսն Հայաստանեայց ձեռնադրէր զեպիսկոպոսապետն Վրաց, այլ ընտրութիւնն 'ի ձեռս ազգին Վրաց էր, մինչև ցԿիւրիոն, զոր ընկալան Վիրք ըստ կամաց Մովսիսի Բ. հայրապետին Հայոց։ Իսկ յիշեալն աստանօր Ներսէս՝ է նոյն ինքն Աշտարակեցին (524–533), որ արար զժողովն Դունայ. և սարկաւագ նորին Յակովբ՝ 'ի Քաղուածոյսն Վախթանգայ՝ անուանի Յովբ, որպէս և 'ի Մխիթարայ Այրիվանեցւոյ։

6 Քսաներորդ եօթներորդ արքայ, խոսրովունի, թագաւորեաց 14 ամս, 379–393, յետ Քրիստոսի։

7 Վախթանգ ունի. « Զդուստրն Տրդատայ, որդւոյ Բէվայ, թոռին Միհրանայ... և զդուստրն որդւոյ Պերոզայ և դստերն Միհրանայ »։

ինքն վարդաբաքար էր Թերի 'ի հաւատոցն և վատարի, և ոչ արար գործ ինչ արժանի յիշատակի։ Յաւուրսն յայնոսիկ եկն զօրագլուխն Պարսից՝ մեծաւ ուժով 'ի սահմանս Հայոց և Վրաց, յաւուրս Խոսրովայ՝ արքայի Հայոց, որդւոյ քաջին Տրդատայ, և խնդրէր հարկս 'ի Հայոց և 'ի Վրաց։ Եւ հրամայեաց Խոսրով Թագաւորին Վրաց՝ ածել զբնակիչս Կովկասու՝ զԼեկս և զՕսս; զի կռուեսցին ընդ Պարսս։ Եւ կնամարդին այն Վարդաբարք [1] երկիւղալից եղեալ Թագեաւ 'ի Ջորն Կուխեթոյ. և եկին Պարսիկք և շինեցին բերդ 'ի դրանն Տփխեաց՝ հակառակ Մցխեթոյ։ Եւ յորժամ խնդրէին Վիրք զխաղաղութիւն, նա խնդրէր զՌան և զՄովկան, զի Պարսից է, ասէր, և ձեզ բաւական է Քարթլ, յորում ծնեալ էք՝ որդիք աղախնոյ, և տուք հարկս Խոսրովունեաց։ Զոր և արարին իսկ՝ Թողլով 'ի Պարսս զՌան և զՄովկան, և յանձնառին զհարկիլն. և դարձաւ զօրն Պարսից։ Ի նմին ժամանակի ապստամբեցին Յոյնք, և գրաւեցին յինքեանս զԹուխարս և զԿլարճս, 'ի ծովէն մինչև ցԱրսիոն. և մնաց միայն Քարթլ և Հերեթ և Եգրիս ընդ Վարդաբաքայ։ Եւ յետ սակաւ աւուրց մեռանէր, թողեալ մանր զտղայն [2]։ Եւ թագաւորեցուցին իշխանքն

1 Այսպէս յօրինակին, որպէս և այլ ուրեք Վարդաբաք. Թերևս զի միօրինակ գրութիւն անուանց՝ տաղտկալի իմն Թուէր Թարգմանչին և կամ մանաւանդ ընդօրինակողին։

2 Զբանս պատմչիս զԹերահաւատութենէ արքայիս, որպէս և Վախթանգայ կոչել զնա «այր անհաւատ և Թշնամի կրօնից, և առ ահի ևեթ իշխանաց և ժողովրդեան 'ի ծածուկ ունել զուրացութիւն իւր», դժուարին է միաբանել ընդ բանից Կորեան, որով յայտ առնէ զփոյթ խնամոց արքային, որով «հրաման տայր 'ի կողմանց կողմանց և 'ի խառնիճաղանճ գաւառաց իշխանութեան իւրոյ՝ ժողովել մանկունս, տալ 'ի ձեռն վարդապետին (Ս. Մեսրոպայ). զոր առեալ՝ արկանէր 'ի բոլս վարդապետութեան, և այլն»։ Թէպէտ և 'ի Կորեանէ՝ Բակուր անուանի արքայն Վրաց, այլ հանդիպութիւն ժամանակի հարկ 'ի վերայ դնէ՝ նոյն համարել զայն ընդ Վարդաբաքայ, զոր Վախթանգ ուղղագոյն ևս կոչէ Վարազբակար. այլ զի յայտ է Վրաց կոչմանց աւելադիր լինել 'ի բազում անուանս՝ իբրև նշանակիչ Աստուծոյ, վասն որոյ տարաձայնութիւնն մնայ միայն ընդ Բակար և ընդ Բակուր, և այն Թերևս 'ի վրիպ ընԹերցուածոյ ձեռագրաց. այլ զայս կալցի իւրաքանչիւր ոք որպէս և կամք իցեն։ Բայց ինձ զարմանալի այն երևի Թէ որպէս ոչ միայն պատմիչս Վրաց, այլ և ոչ Վախթանգ, որ մանր պատմէ զամենայն դէպս, և

զՏրդատ [1], զորդի դստերն Մեծին Տրդատայ՝ աշխարհին Հայոց արքայի. այր լաւ և մեծահաւատ և իմաստուն, որ դադարեցոյց զգոռալն Պարսից, և շինեաց եկեղեցիս, և յաւելուած արար ամենայն բարեաց՝ հոգևորաց և մարմնաւորաց. և ազատեաց զՌիշա, և շինեաց անդ եկեղեցիս: Եւ զկնի Ննջման եպիսկոպոսին Յակոբայ՝ կացոյց 'ի տեղի նորա զՇղիա: Եւ նա (Տրդատ) շինեաց զՆեկարիս, և մեռաւ բարի անուամբ: Եւ թագաւորեաց փարսման [2]. և գտեալ օգնութիւն 'ի կայսերէ՝ դիմացաւ Պարսից [3]. և զկնի սակաւուց մեռաւ: Եւ թագաւորէ Միրդատ [4] թոռն Բէվոյ, այր վէս և պակասամիտ, և ոչ հարկէր Պարսից: Եւ առաքեաց թագաւորն Պարսից [5] զՌւփրիք զօրագլուխն 'ի վերայ նորա. և չոգաւ Միրդատ ընդդէմ նորա 'ի Գարդաբան, և ըմբռնեցաւ 'ի նմանէ, և հարան զօրքն. և մտին 'ի Քարթլ՝ Պարսիկք, և քանդեցին զեկեղեցիսն, և յամենայն տեղիս եդին կրակատունս:

Եւ զկնի ամաց երից անպարապ եղեալ Պարսից, կռուելով ընդ թշնամիս իւրեանց 'ի կողմանց արևելից, ամբարձին վիրք զգլուխ իւրեանց, և թագաւորեցուցին զորդին Միրդատայ՝ զԱրչիլ [6] 'ի վերայ իւրեանց: Սա եբարձ զկրակատունսն յաշխարհէն, ապաւինելով 'ի սուրբ խաչն: Եհան զՊարսիկսն արտաքս, և տայր պատերազմ ընդ Պարսս՝ ձեռնտուութեամբ Յունաց: վասն որոյ և կողմնակալն Պարսից, որ կայր 'ի վերայ Ռանայ

ոչ յիշատակութիւն անգամ առնէ զերթալոյ մերոյս Ս. Մեսրոպայ 'ի Վիրս, կամ զքարոզութենէ նորին և զգիւտոյ նշանագրացն, (որ հաւանական երևի լինել եկեղեցականացն փոխել. կամ ուրբաղան անուանելոյն), մինչդեռ անհնարին էր սոցա անգէտս լինել այնպիսի մեծի յեղափոխութեան Վրաց աշխարհին:

1 Քսաներորդ ութերորդ արքայ, խոսրովունի, իշխեաց ամս 12, սկսեալ 'ի 393 ամէ ցամն 405 զկնի Քրիստոսի:

2 Քսաներորդ իններորդ թագաւոր, խոսրովունի, կալաւ զիշխանութիւնն զամս 3, 'ի 405-408 յետ Քրիստոսի:

3 Ըստ Պրոսէի՝ առ թագաւորութեամբ Շապհոյ Երկրորդի 'ի Պարսս, և Թէոդոսի Երկրորդի առ Յոյնս:

4 Երեսներորդ արքայ, խոսրովունի, վարեաց զտէրութիւնն ընդ ամս 2, 'ի 408-410, յետ Քրիստոսի:

5 Յազկերտ Ա. Թագաւորէր 'ի ժամանակին:

6 Յոր. Ջվարշէ: Երեսներորդ առաջներորդ արքայ, խոսրովունի, իշխեաց 24 ամս, 'ի 410-434, յետ Քրիստոսի:

և Մովկանայ և Ատրպատականու, եկն 'ի վերայ նորա մեծաւ ուժով։ Իսկ Արչիլ գնաց ընդ առաջ նորա մեծաւ ուժով 'ի Բերդահոջ, և վանեալ հալածեաց զնոսա՝ զօրութեամբ սուրբ խաչին. և մտեալ 'ի Ռան՝ գերեաց զնոսա, և դարձաւ մեծաւ խնդութեամբ։ Եւ առաքեաց աւետաւորս յամենայն երկիրն, և ասաց. Ոչ զօրութեամբ մերով և ոչ իմաստութեամբ, այլ անուամբ սուրբ Երրորդութեանն և զօրութեամբ խաչին Քրիստոսի Աստուծոյ մերոյ՝ յաղթեցաք Պարսից. և արդ, հաստատեցարուք 'ի հաւատս, և փառք տուք մեծին Աստուծոյ։ Եւ լուեալ ամենեցունց՝ օրհնեցին զսուրբ Երրորդութիւնն 'ի փառս իւրում, և նորոգեցին զեկեղեցիսն։ Եւ քանզի Պարսից թագաւորն պատերազմէր ընդ Հնդկացն և ընդ Սինդացւոց և ընդ Հաբաշիսն, և ոչ էր ատակ նմա առ վիրս։ Եւ որդին Արչլի՝ Միրդատ, այր սրտեայ և աջողաձեռն, աւերէր քանդէր զկողմանս Պարսից, բայց ոչ կարէր առնուլ բերդս կամ քաղաքս։ Իսկ զօրագլուխն Առանայ՝ Բարզաբօթ՝ տայր զդուստր իւր 'ի կնութիւն Միրդատայ, և առնէր խաղաղութիւն 'ի մէջ իւրեանց։ Եւ ետ Արչիլ զՇամշոյտէ՝ որդւոյն իւրոյ՝ ամենայն թիմաւն։ Եւ կինն Միրդատայ հաւատաց 'ի Քրիստոս և մկրտեցաւ. և շինեաց զսուրբն Սիոն 'ի Շամշոյտէ, և էր անուն նորա Սակդուխտ։

Իսկ զեպիսկոպոսութիւնն յետ Եղիայի կալաւ Ցունան, և զկնի նորա Գրիգոր, և յետ նորա Բարսեղ, և զկնի նորա Մուշիդ, որ էր յազգէ Պարսից. և ոչ էր նա կատարեալ յերկիւղ Տեառն, այլ 'ի ծածուկ վարէր զմոգութիւնն, և ոչ քարոզէր և ոչ յորդորէր զժողովուրդն յաստուածպաշտութիւն, այլ գրէր գիրս ուսման աղանդոյն մոգութեան։ Եւ ոչ կարացին գիտել զայն Արչիլ և որդին իւր, զոր յետոյ իմացեալ՝ գրեաց Միքայէլ եպիսկոպոսն։

Հանգեաւ 'ի Քրիստոս բարեպաշտութեամբ Արչիլ. և թագաւորեաց Միրդատ [1] որդի նորա՝ հայրանման առաքինութեամբ։ Եւ եղև նմա դուստր մի Խորանձէ

1 Երեսներորդ երկրորդ արքայ, խոսրովունի, եկաց յիշխանութեանն 12 ամս, 'ի 434-446, յետ Քրիստոսի։

անուն. և խնդրեցին 'ի Տեառնէ արու զաւակ. և յետ չորից ամաց եղև նոցա որդի, և կոչեցաւ Վարախոսրովթանգ 'ի Պարսից լեզուն, և Վրաց լեզուաւն ասիւր վախթանգ. և արարին խնդութիւն մեծ և բաշխ աղքատաց, և ետուն գոհութիւն Աստուծոյ։ Եւ զարգացեալ մանկանն՝ սնուցանէր զնա սպայապետն Սայուրմակ։ Եւ մեռաւ Միրդատ, և մնաց վախթանգ եօթնամեայ[1]։ Եւ զահի հարաւ մայր նորա Սագդուխտ 'ի հօրէ իւրմէ՝ թէ քինախնդիր լինի վասն թողլոյն իմ զմոգութիւնն, և աւերմանն Պարսից՝ յառնէ նորա Միրդատայ. և յանձնեալ զտղայն, չոգաւ առ հայրն իւր՝ աղաչել զնա, զի ներեսցէ նմա վասն իրացն եղելոց։ Եւ ասէ ցնա Բարզաբալ. Թողեալ քեզ զվնասն վասն ամենայնի. բայց դարձիր 'ի տուն քո. և ես դնեմ զօրէնս Պարսից 'ի Վիրս, և 'ի կամս ապաստան արարից ընտրել իւրաքանչիւր զհաճոյն իւր, կամ զմերն և կամ զՎրացն։ Եւ նոյնժամայն առաքեաց պաշտօնեայ կրակի 'ի Մցխիթա, և քրմապետ մի Բինքարան կոչեցեալ. և եկեալ նստան 'ի Մոզթա։ Իսկ Սագդուխտ վարէր զթագաւորութիւնն կամօք հօր իւրոյ, մինչև մեռաւ նա. և էառ զիշխանութիւնն նորա Վարզաբակուր որդի նորա, եղբայր Սագդխտոյ։ Մեռաւ և սպայապետն Սայուրմակ, և էառ զպատիւ նորա Ջևանշէր։ Իսկ քրմապետն Ջանայր 'ի կրօնս իւր դարձուցանել զՎիրս. և ոչ ոք հայէր 'ի նա, բայց 'ի սակաւուց յաննշան արանց, որք կորուսին զկեանս իւրեանց։ Յաւուրսն յայնոսիկ մեռաւ Մուշիդ եպիսկոպոսն, և կալաւ զտեղի նորա Միքայէլ, որ էր 'ի Յունաց, որ ժրութեամբն իւրով պահեաց զերևելի արսն 'ի հաւատս ճշմարիտս։

1 Երեսներորդ երրորդ արքայ, խոսրովեանի, իշխեաց ընդ ամս 53, 'ի 446–499, յետ Քրիստոսի. 'ի սկզբան անդ ընդ խնամակալութեամբ մօր իւրոյ Սագդխտոյ, և ապա առանձինն։

# ԳԼՈՒԽ ԺԳ

*Արշաւանք Օսաց և Յունաց 'ի Վիրս և գերել զնոսին. — Յաղթութիւն Վախթանգայ ընդդէմ Օսաց և Խազրաց և միաբանել ընդ Պարսից. — Արշաւանք Վախթանգայ 'ի կողմանս Պոնտոսի, աւանդութիւնք նորին զՆերսովբայ և զշինութենէ աշտարակին. — Վախթանգայ դիւրութիւն առնել քրիստոնէից, տեսանել տեսիլ և դառնալ յետս. — Յաղթութիւն Յունաց 'ի վերայ Պարսից, և ապրելոցն 'ի վճարտէն՝ հաւատալ 'ի Քրիստոս. — Վախթանգայ արութիւնք ընդդէմ ուխտադրուժ Յունաց, և հաշտութիւն ընդ կայսեր։*

Յայնմ ժամանակի ելին Օսքն ընդ դրունս Դարբանդայ, և գերեցին զամենայն Քարթլ, 'ի գետոյն Կուրայ 'ի գլխոյն մինչև ցԽունան. և մտին 'ի Մովկան և 'ի յԱռան, և գերեցին. և տարան զքոյրն Վախթանգայ զՄիհրանդուխտ։ Ելին և Յոյնք [1], և առին 'ի ներքոյ ջրոյն Եգրայ՝ մինչև ցբերդն Քուջայ. և ամենայն տունն Վրաց մտին 'ի սուգ անհնարին, և ասեն. վասն մեղաց մերոց յաճախեցին մեզ չարիք. զի ոչ պահեցաք զաւանդն քրիստոնէութեան, որպէս և հարքն մեր [2]։

Եւ մանուկն Վախթանգ էր ջերմ 'ի հաւատս քրիստոնէութեան, և խոցոտեալ լինէր՝ զի եղաւ տուն կրակի 'ի Քարթլ, և յիրաւի պաշարեալ ունէին զմեզ վիշտքս այս. և էր ամաց [3] հնգետասանից։ Եւ հաւաքեալ առ ինքն զամենայն մեծամեծսն՝ մխիթարէր զնոսա և ասէր, եթէ Հայրենի կամօք խրատեաց զմեզ Աս-

1 Զարշաւանս զայս Յունաց՝ կարգէ Վախուշտ առ Մարկիանոսիւ կայսերբ, յառաջին ամս երկրորդի կիսոյ հինգերորդի դարուն։

2 Օրինակն՝ զոր յեղու Պրոսէ 'ի փռանկ լեզու, յաւելու աստանօր. Եւ եկին հասին այս ամենայն վէրք 'ի վերայ մեր, զի կրակատունք գտանին հաստատեալ յաշխարհիս Քարթլաց. վասն որոյ և պաշարեցին զմեզ չարիքս այսոքիկ։ — Փոխանակ այսց բանից՝ պակասեն 'ի Թարգմանութեան Նորին տողք ինչ 'ի յաջորդ բանիցն, զորս աւելի ունի օրինակն մեր։

3 Յոր. Պակասի ամաց։

տուած 'ի փրկութիւն և 'ի զգաստութիւն. և արդ յայսմհետէ դարձիք յիւրաքանչիւր չարեաց, և դառնայ առ մեզ Տէր գթութեամբ։ Եւ թէպէտ ոչ տեսէք յիս բարի ինչ, զի մանուկ եմ ես, այլ զհարցն իմ զերախտիս յիշեցէք, և մի յուսահատիք 'ի Տեառնէ վասն տղայութեան իմոյ, զի օգնէ մեզ Տէր Աստուած մեր՝ վասն անուան իւրոյ և աղօթից հարցն մերոց։ — Եւ առաքեաց առ եղբայր մօր իւրոյ Վարզաբակ՝ [1] խնդրել օգնութիւն 'ի վերայ Օսաց. և առաքեաց նմա երկոտասան հազար վառեալս։ Եւ ինքն Վախթանգ ձայն տուեալ յամենայն վիրս, ժողովեաց ընդ հեծեալ և ընդ հետեւակ՝ հարիւր և վաթսուն հազար. և աղօթեաց զեօթն օր պահօք և հսկմամբ գիշերաց, և տուրս տալով կարօտելոց։ Եւ յանձն արար զթագաւորութիւնն մօրն, և թէ մեռանիմ, ասէ, 'ի պատերազմիս, առցէ զթագաւորութիւնս Միհրան՝ թոռն Տրդատայ, առեալ զքոյր իմ Խորանձէ 'ի կնութիւն։ Եւ գնաց ինքն 'ի Թիանէթ. և եկին առ նա բնակիչքն Կովկասու յիսուն հազար. և չոգաւ և էանց ընդ դուռն Դարիալայ [2], և մտաւ 'ի դաշտն Օսէթայ, և նստաւ յայնկոյս գետոյն Արագու։ Եւ Օսքն ժողովեալ զազգն Խազրաց, և եկեալ բանակեցան յայնկոյս գետոյն՝ զաւուրս եօթն։ Եւ մենամարտիկքն աստի և անտի փորձէին զմիմեանս. և յեւթներորդում աւուրն այր մի 'ի Խազրաց՝ Թարխան անուն՝ ելանէր և կոչէր զոք որ կարող իցէ 'ի զօրացն Վախթանգայ։ Եւ ընտրեցին պարսիկ մի, որ բազում քաջութիւնս ցուցեալ էր նորա. և 'ի հանդիպելն միմեանց՝ եհար զնա Թարխանն 'ի վերայ գագաթանն և ճեղքեաց յերկուս. և էր անուն նորա փարսման–փախուր։ Եւ տրտմեցաւ յոյժ թագաւորն Վախթանգ, և մտեալ 'ի վրանն՝ կարդաց արտասուօք զԱստուած զգիշերն։ Եւ 'ի լուսանալ առաւօտու՝ ելանէր Թարխանն դարձեալ նախատել, և վատթարելով զՎախթանգ. և ոչ գտաւ ոք յօժարել 'ի սիրտ՝

1 Որ էր իշխան Աղուանից աշխարհին. որ և ըստ Վախթանգայ պատմչի՝ սիրով ընկալաւ զհրեշտակութիւնն Վրաց, զի և զերկիր նորին աւերեալ էր Օսաց։

2 Յոր. Դարալեայ։

կռուել ընդ նմա։ Իսկ ապա Վախթանգ անկաւ 'ի վերայ երեսաց իւրոց, և ելաց առաջի Տեառն. և յարուցեալ կազմեցաւ. և կնքեաց զինքն խաչիւն Քրիստոսի, և ոչ լուաւ՝ որք արգելուին զնա՝ որպէս զմանուկ և զանփորձ, այլ ասաց. Օգնեցէք ինձ աղօթիւք, զի Տեառն է պատերազմ, և նա է յոյսն իմ և վստահութիւն և արուեստ ձեռաց։ Եւ յարձակեալ 'ի վերայ Թարխանին՝ եհար նիզակաւն 'ի վերայ միջոյն, և չեչտակի հանէր ընդ թանձրութիւն զրահիցն և մարմնոյն՝ 'ի միւս կողմն. և անկեալ յերիվարէն՝ սատակէր։ Եւ Վախթանգ 'ի տեղւոջն անկանէր յերեսս, և ասէր. Օրհնեալ ես Տէր իմ, Քրիստոս Աստուած, որ առաքեցեր զհրեշտակս քո, և սատակեցեր զհայհոյիչսն քո։ Եւ կտրեալ զգլուխ նորա՝ տարաւ առ զօրս իւր, 'ի վեշտասան ամի տիոց իւրոց։ Եւ 'ի միւս այլ օրն՝ այր մի հսկայազն էանց յայսկոյս գետոյն, և խնդրէր զՎախթանգ. և զօրութեամբն Քրիստոսի՝ զնա ևս դիաթաւալ յերկիր ընկենոյր։ Եւ ապա յարձակեցան զօրքն, և հարին զՕսք և զխազրիկքն, և մաշեցին զնոսա 'ի սուր սուսերի իւրեանց. և մտին յաշխարհ նոցա 'ի գիւղս և 'ի քաղաքս, և յաւարի հարին և գերեցին զնոսա. և մտին 'ի Բաշանէթ և 'ի Ջիքէթ, որ է ներքոյ Ափխազեթոյ, առին և գերեցին զնոսա։ Իսկ թագաւորքն Օսեթոյ փախուցեալք յամուրս՝ առաքեցին դեսպանս առ Վախթանգ՝ առնել հաշտութիւն և տալ զգերեալսն Օսաց, և առնուլ զՔարթլացն. և լուաւ նոցա, և ետ զՕսսն երեսուն հազար, և էառ զիւրն երեքհարիւր յիսուն հազար, և զքոյրն իւր Միհրանդուխտ [1].

1 Վախթանգայ՝ յետ աւերելոյ զԲաշանէթ և զՋիքէթ՝ մտեալ յաշխարհն Օսաց, ընկալաւ գաշինս խաղաղութեան յարքայէ նոցուն, որ ապրեալ էր յամուրս լերանց Կովկասու։ Ի փրկանաւորութեան գերեաց՝ վասն Միհրանդխտոյ քեռ Վախթանգայ՝ պահանջեցին Օսք տալ 'ի դուրս 30000 'ի նշանաւոր արանց իւրեանց՝ գերելոց 'ի Վրաց՝ յականէ յանուանէ. զոր յանձն առեալ Վախթանգայ՝ փրկեաց զքոյր իւր 'ի գերութենէ. իսկ վասն մնացելոյ գերութեանն՝ սահմանեաց Վախթանգ փոխանակել զայր ընդ առն. որով զերծան ամենայն Վիրք գերեալք յՕսաց՝ արք 350000. այլ զկնի այսր փոխանակութեան՝ մնացին դարձեալ 'ի ձեռս Վրաց գերեալք յՕսաց անտի՝ արք 650000, թող զԲաշանիկսն և զՋիկսն։ — ՎԱԽԹԱՆԳ։

և առաքեաց զնոսա ընդ ճանապարհն Դարիալայ. և զզօրսն Պարսից և կովկասայ դարձոյց 'ի յաշխարհն իւրեանց բազում աւարաւ: Եւ ինքն զօրօք իւրովք զամս երիս արար պատերազմ ընդ Ափխազեթոյ գաւառսն, և էառ զամրոցսն ամենայն [1]. զի Թագաւորն Լեւոն անպարապ էր 'ի Պարսից կողմանէն: Եւ ապա դարձաւ 'ի Մցխիթա խնդութեամբ և ուրախութեամբ. և արար տօն ցնծութեան 'ի փառս Աստուծոյ մերոյ Քրիստոսի, տալով տուրս աղքատաց: Եւ արձակեաց ընծայս Թագաւորին Պարսից՝ քսան հազար երիվարս, և ծառայս տասն հազար՝ 'ի ձեռն քրմապետին, և խնդրեաց զդուստր նորա իւր 'ի կնութիւն: Եւ եղբօր մօր իւրոյ երկու հազար երիվար, և հազար ծառայս [2]: Եւ Թագաւորն Պարսից տեսեալ զախորժութիւն նորա, ետ նմա զդուստր իւր Բալենդուխտ, և զլեառն Կովկասու 'ի հրամանս նորա [3]. և գրեաց զնախերգանս թղթոյն այսպէս. ՅՈրմզդէ Շահիջանայ [4] առ Վախթանգ վարնխոսրովթանգ, ախոյեան տասն թագաւորաց՝ խնդալ: Արարի զոր խնդրեցերն. այլ զօրացիր և քաջ լեր՝ կալով ընդդէմ Յունաց, առեալ զքեռին քո ընդ քեզ:

Եւ արար Վախթանգ հանդէս զօրաց երկուհարիւր հազարաց, և ել ընդ Հայս, զի և նոքա եւս առեալ էին զնոյն պատուէր: Եւ ելին նախարարքն Հայոց ընդ նոսա՝ Տրդատ Արշակունի և Արեւ Սիւնեաց տէր և Ջուանբեր Վասպուրա կանի և Համազասպ Տարօնոյ, Գրիգոր և այլք ընդ նոսա [5]. և չոգան 'ի Կարախպուլա, և թողին 'ի վերայ նորա իշխանս երկուս՝ երկոտասան հազար հեծելօք՝ [6] պատերազմել ընդ

1 Փոխանակ և էառ զամրոցսն ամենայնի՝ օրինակն Պրոսէի ունի՝ և հալան զարմանք զամենեսեան. (Tous étaient dans l'étonnement).

2 Պրոսէ. Հազար երիվար և նոյնքան ծառայս:

3 Պրոսէ ունի. Եւ զլեառն Կովկասու կարգեաց նմա յօժիտս:

4 Թուի Շահնշահէ, զի Վախթանգ ունի «ՅՈրմզդէ՝ յարքայից արքայէ՝ առ Վախթանգ, և այլն»:

5 Այս ամենայն հայազգի իշխանք գտանէին 'ի բաժնին արեւելեան Հայաստանի, որ էր ընդ ձեռամբ Շապհոյ Երկրորդի, արքային Պարսից. ըստ դաշանցն՝ զորս եդ սա ընդ Արկադեայ կայսեր, որդւոյ Մեծին Թէոդոսի:

6 Վախթանգ ասէ. «Երկուս իշխանս, տալով առ իւրաքանչիւր 'ի նոցանէ երկոտասան հազարս հեծելոց»:

նմա, որ է կարնոյ քաղաք. և չոգան ընդ միջերկրայս մինչ 'ի Պոնտոս, և առին երիս քաղաքս: Եւ պատուէր ետ վախթանգ զօրացն մի՛ զոք սպանանել զանօրինացն պարտն [1], որք Քրիստոսի երկրպագուքս են իբրև զմեզ: Քանզի հաւն իմ յորժամ եկ ընդ Պարսից թագաւորին 'ի Յոյնս, և հասին մինչև յԱնձիանձու, ուր գերեզման սրբոյն Գրիգորի է, և ձեռնարկեցին յեկեղեցւոյ մանկունսն՝ յաղթահարեալք եղեն, և դարձան ամօթով սակաւք 'ի բազմաց [2]: Եւ տասնօրեայ ճանապարհաւ անցեալ ընդ այն՝ եկաք մեք այսօր մինչ 'ի կոստանդնուպօլիս, ուր հաւատացեալ 'ի Քրիստոս թագաւորն կոստանդիանոս յաղթեաց բիւրուց բազմաց՝ խաչին նշանաւ: Եւ մեծն Տրդատ Թագաւորն Հայոց պատուհասեալ 'ի Տեառնէ, վասն տանջելոյն զսուրբ Լուսաւորիչն և զսուրբ տիկնայսն, և ծանուցեալ զՔրիստոս՝ ոչ յաղթահարեցաւ յումեքէ մարդոյ. զոր գիտէք դուք իսկ, քաջքդ Հայոց, թէ որպէս հսկայն և նշանաւորն յամենայն ազգս Տրդատ՝ թիկամբք բեռնարկեալ՝ շինէր տուն Աստուծոյ: Գիտէք և զպիղծն Յուլիանոս սատակեալ 'ի Պարսս. և Յուբիանոս էառ զթագաւորութիւնն. և ասաց Տէր ցՊարսից թագաւորն. Մի՛ կռուիր ընդ Յուբիանոս, զի չտամ զնա 'ի ձեռն քո: Եւ դուք, բնիկքդ Վրաց և Պարսից, գիտէք զնախնին ամենայն թագաւորաց զՆեբրովթ, որպէս գրեալ է զնմանէ [3], եթէ զառիւծ և զայծեամն 'ի հետևակուց ըմբռնէր նա, և զամենայն երէ և զգազան. և վասն այսորիկ ամենայն ազգ հնազանդեցան նմա. և շինեաց զաշտարակն 'ի սեանց ոսկւոյ, և յարծաթի սարսխոյ եդեալ զհիմունսն,

1 Այսպէս յօրինակին. Թերևս ուղղելի. Մի՛ զոք սպանանել անօրինաց զանպարտն:

2 Ակնարկէ 'ի մարտն Միհրանայ ընդ Կոստանդիանոս, զորմէ ճառեցաւ 'ի վեր անդր:

3 Զայս ամենայն զՆեբրովթայ և զաշտարակէն՝ առեալ իցէ Թերևս յառասպելաւանդ գրոց անտի՝ զոր 'ի վեր անդր յիշեաց գտեալ Միհրանայ, որ պատմէր յաղագս ազգին Նեբրովթայ և շինութեան Քաղենեայ. Գլ. Ժ: — Զայսոսիկ է տեսանել և առ Վարդանայ պատմչի (Գլ. Ե. էջ 11), որ և զշինութիւն աշտարակին կարգէ՝ սկսեալ յառաջին ամի Ռագաւու մինչև ցքառասներորդ ամի նորին:

կպերք և աղխսով պատելով զայն. և 'ի պատուհանսն դնելով ակունս լուսատու՝ յակինթս և զմրուխտս, զի դիշեր մի լիցի 'ի փորափոխոցս նորա, և 'ի տաճարս և 'ի սենեակսն՝ զոր շինէին 'ի մէջ նորա. և զբարձրութենէն ասեն թէ երեքօրեայ ճանապարհ էր ընդ ես ատիճանացն՝ մինչև ցմուտ դրանն. և անչափ տարան վերացուցին զկատարն՝ անցուցանելով ընդ կենսաբեր օդն, և մտանել ելանել 'ի մղձկուտ և 'ի վնասաբեր կայանս ատեղաց, ուր շրջագայութեամբ եթերոյն բորբոքէր տեղին. և ոսկին և արծաթն՝ զոր ընդ մէջսն տանէին՝ հալել սկսաւ, և խարշատէին շինողքն: Եւ անդ իմացան զիմաստս և զխորհուրդ եւթն կամարաց աստեղացն, և շատ ինչ հանճարս, զի մի ընդ վայր լիցի՝ առ Աստուած դիմելն նոցա: Եւ 'ի պարսիկ լեզու գայր ապա ձայն առ Նեբրովթ, որ ասէր ցնա. Ես եմ Միքայէլ՝ որ ասեմ քեզ բանիւ Տեառն. ել և գնա այտի, զի ահա ձեռագործդ այդ հասաւ հանդէպ դրախտին. բայց լեառնս այս՝ ուր կամ ես՝ միայն անջրրպետէ զդրախտն, ընդ որոյ ստորոտն ելանէ արեգակն: Եւ ընդ այս ելանեն գետքն Նեղոս և Փիսոն. Գեհոն բերէ անուշահոտ ծխանելիս, և բանջարս խոտոյ, որ խառնի ընդ մուշկս, զոր կազմեն մարդիկ 'ի պատրանս ռընգաց 'ի հոտ անոյշ: Արդ դու թէ յիրաւի ցանկաս երթալ 'ի բարձրութիւնս երկնից՝ տեսանել զԱստուած, դնա կա՛ց 'ի սահմանի բնութեան քո 'ի խոնարհութեան մտաց, և 'ի վերայ՝ ուստի ստեղծար, և բնակեա՛ց 'ի մէջ գետոյդ Եփրատայ և Ջիլասայ [1], և թո՛ղ զմարդիկդ գնալ յո՛ և կամիցին. բայց յԱստուծոյն մի գնասցեն. և 'ի պատշաճ ժամու գայ առ ձեզ Տէրն ձեր 'ի խոնարհ, և գտանի 'ի մէջ այպանողաց և կատաղի ժողովրդոց, և 'ի նոցանէ առեցեալ մեռանի. և գայ գտանէ զձեզ 'ի մէջ դժոխոց 'ի Տարտարոսն, և հանէ զձեզ անտի, և յարուցեալ 'ի մահուանէ՝ շինէ ձեզ աշտարակ և սանդուխս ելանելոյ առ Աստուած: — Եւ զայս ասացեալ՝ էարկ զնոքօք 'ի հոտոյ դրախտին, և արբեցան զմայլեցան և մխիթարեցան. և մոռացան

1 Ջիլաս է արաբական կոչումն Տիգրիսի:

զխորհուրդս և զլեզուս՝ զոր գիտէին յառաջին՝ ութն լեզուս. և առին օտար լեզուս՝ ըստ Թուոյ իւրեանց: Եւ Թողեալ զքաղաքն և զաշտարակն՝ զոր շինէին, գնացին յաշխարհն իւրեանց. Թորգոմ [1] 'ի Թորգոմեանան, Սիդոն 'ի Սիդէթ, Բերձեանք 'ի Բերձանս, Ցոյնք 'ի Ցունէթ, Ագ և Մադ՝ յԱգմագուգէթ, Պարսք 'ի Պարսս, և այլք յայլս [2]: Եւ այս բանք չեղև յայտնապէս ասացեալ, այլ գրեցաւ և պահեցաւ 'ի ծածուկ՝ որպէս խորհուրդ. և ես պատմեցի ձեզ 'ի յօգուտ, զի գիտասջիք և դուք Պարսքդ, եթէ չէք օտարք 'ի Քրիստոսէն մերոյ. և Նախնին ձեր Բէլ, որ նա ինքն է Նեբրովթ, որ կռոնոսն կոչի, ազատեալ է 'ի դժոխոց յԱստուծոյ մերոյ Քրիստոսէ. և դուք խնայեցէք յամենեսեան՝ որք բարձեալ բերիցեն զանուն Նորա սուրբ, և մի աւերէք զսուրբ տաճար Նորա, զի մի բարկութիւն Նորա բորբոքեսցի 'ի մեզ:

Եւ զայս ասացեալ՝ հրաման ետուն յամենայն տեղիս՝ զի յայտ եկեսցեն Թագուցեալքն, և մի երկիցեն քրիստոնեայք 'ի սրոյ. բայց զի զինչսն տայցեն 'ի դուրս և առցեն զգերիսն: Եւ ինքն զբազումս 'ի գերեացն զգեստաւորեալ՝ ազատեաց, և առաւել ևս զեկեղեցականսն, և տալով Նոցա ըստ անձին երիս դահեկանս: Եւ զՊետրոս քահանայ և զՍամուէլ մոնոզոն, որք լեալ էին աշակերտք Գրիգորի Աստուածաբանի՝ առ իւր պահեաց. և առէ ցՊետրոս. Ցիսկզբան մտից իմոց 'ի Ցոյնս՝ չետու բնաւ ձեռնարկել 'ի շինուածս տաճարաց Աստուծոյ: Եւ ասէ Պետրոս. Աստուծոյ եկեղեցի՝ բանաւոր հօտ Նորա է, զորս յետ սպանանելոյն՝ ոչ դու և ոչ այլ ոք կարէ կանգնել, իսկ զշինուածս դիւրին է ումն և կամ իցէ: Ո՞չ դիտես եթէ ամենայն մեղք սրբեցան ջրհեղեղաւն, և արիւնն Հաբելի տակաւին գոչէ առաջի Տեառն. և զամենայն վատթարութիւնս Հրէիցն

1 Ցօրինակին պակասի Թորգոմ:

2 Վախթանգ ունի այսպէս՝ խօսելով զՆեբրովթայ. «Եթող չուել 'ի Հնդիկս՝ զորս զՀնդկացն խօսէին բարբառ. և զՍինդացիս 'ի Սինդ, զՀռովմայեցիս 'ի Հռովմ, զՑոյնս 'ի Ցունաստան, զԳոգ և զՄագոգ 'ի Մագուգէթ, զՊարսիկս 'ի Պարսկաստան: Եւ էր նախկին բարբառ՝ Ասորեստանեայցն. և այսոքիկ են ահա եօթանեքին լեզուք յաւուրս Նեբրովթայ»:

անտես արարեալ, զարիւնն Զաքարիայ՝ որդւոյ Բարեքեայ խնդրել ասաց՝ ՚ի նոցանէ. և այսպիսի քանի արիւն անպարտ հեղաւ ՚ի ձեռաց քոց։ Եւ ասէ վախթանգ. Պարտաւոր ցուցեր զիս դու, և ես մեղայ Տեառն։ Եւ ասէ քահանայն. Եթէ ճանապարհ բացեր բանիցս, մեղք քո եթող զքեզ. և այլ մի ևս պատերազմիր ընդ որդիսն Աստուծոյ, և զհուրդ վառեալ ՚ի քէն՝ դու շիջուցես։ Եւ ասէ Վախթանգ. Խնդրեա յԱստուծոյ, զի յայսմ գիշերի տեսից զհաճոյսն Աստուծոյ։ Եւ Պետրոս ասէ. Այդ առաւել է քան զիս, բայց սրբոց յանձն արասցուք։ Եւ բարկացաւ Սամուէլ, և ասէ. Ո՞չ գիտես զսէրն Քրիստոսի, որ ասաց ցՊօղիկարպոս. Եթէ ոչ երկմտէիր և ծանրանայիր հրեշտակք, յամենայն քաղաքս և ՚ի գիւղս խաչէի ես՝ ՚ի կեցուցանել զամենեսեան։ Եւ զի՞նչ ասէր Աստուած ցանօրէնն Աքազ [1]. Խնդրեա դու քեզ նշան յԱստուծոյ քումմէ ՚ի խորութեան կամ ՚ի բարձրութեան։ Եւ Քրիստոս ասաց. Զոր ինչ խնդրէք յանուն իմ՝ արարից ձեզ։ Եւ արդ դու թագաւոր՝ կցորդեա մեզ աղօթիւք, և լինի որպէս և կամիս։ Եւ ՚ի ժամ երեկոյին ննջեաց թագաւորն աղօթիւք, և Պետրոս և Սամուէլ հսկեցին զգիշերն ամենայն։ Եւ տեսանէր թագաւորն զսուրբն Նունի ՚ի տեսլեան, զի ասէր ցնա. Արի և ել ընդ առաջ, զի ահա գան առ քեզ թագաւորք երկնի և երկրի։ Եւ բացեալ զաչս ՚ի վեր Վախթանգ՝ տեսանէր զքաղաքն Բիւզանդիոն, ՚ի նմա աթոռք երկու, և մանուկ մի և այր մի կատարեալ՝ նստէին ՚ի վերայ նոցա, և այրն էր Գրիգոր Աստուածաբան. և ասէր ցնա. Մարդչար, ընդէ՞ր հարեր զբանակս Տեառն, և կոտորեցեր զխաշինս նորա. և արդ, եթէ ոչ ակն առեալ էր իմ՝ սրբուհւոյդ Նունեայ, կրէիր դու զպատուհասն հարց քոց հրապաշտից։ Եւ ասէ նինաւ ցՎախթանգ. Գնա, անկիր յոտս թագաւորին [2]։ Եւ արար այնպէս. և նստոյց զնա առ իւր, և ետ ՚ի ձեռս նորա մատանի՝ լու-

1 Յօր. Ստայաէ։ — Իսկ զսա ՚ի Քրիստոսէ ասացեալսն առ Պօղիկարպոս՝ չգտանեմ ուրեք յիշատակեալ առ կենսագիրս Սրբոյն։

2 Թագաւորն առ Վախթանգայ պատմչի գնի նոյն ինքն Մեծն Կոստանդիանոս։

սատոււ ակամբ կազմեալ։ Եւ Պետրոս և Սամուէլ կային երաշխաւոր Վախթանգայ, եթէ այլ ոչ մեղանչէ նա։ Եւ կայր անդ խաչ փառազարդ, և թագ 'ի վերայ նորա. և տեսանէր Վախթանգ զկայսրն՝ զի առնոյր զթագն 'ի խաչէն, և դնէր 'ի գլուխ նորա ասելով. Ահա քեզ երրորդ պսակ։ Եւ զայս ամենայն տեսեալ յերազի՝ որպէս և հայցեաց. և ապա զարթուցեալ փառքեաց Աստուծոյ։ Եւ 'ի վաղիւն դառնայր առ Հայք, և պատուիրէր մի ումեք մեղանչել։

Բայց կայսրն Յունաց ել զհետ նորա ինն հազարաւ, և փախոյց 'ի զօրացն Վրաց։ Եւ զայն տեսեալ քեռորդւոյ նորա Պարսկին, ասէ ցՎախթանգ. Օհ, ծնունդ իմ, զի՞նչ է այս զոր արարեր. որպէս լուայ՝ մայր հօրն քո 'ի Յունաց ազգի էր, և քարշեաց ժանտ սերմն զքեզ 'ի նոյն, և 'ի սէր մեռելոյն Յիսուսի՝ ահա կորուսեր զՊարսս. և չմնայ քեզ այդ։ Եւ ասէ Վախթանգ. Խաչեալն՝ Աստուած իմ է, և նա փրկէ զիս. և դու կարդա զհուրն, և մարտիր ընդ Յոյնս։ Եւ ինքն Հայք և Վիրք առանձնացաւ։ Եւ մարտեան Պարսք և կովկասեանք ընդդէմ կայսեր, և յաղթեցան 'ի նոցանէ. և մեռաւ քեռին Վախթանգայ, և քսան և հինգ հազար Պարսիկ, և Աջան թագաւորն Լեկաց, և յոլով նախամարտիկք ընդ նմա յիւրոցն. սպանաւ և գլխաւորն Ռանայ. և այն եղև բեկումն անհնարին 'ի կողմանն Պարսից։ Յայնժամ ապա իջեալ 'ի կառացն՝ երկրպագեաց Քրիստոսի, ասելով. Քո է, Տէր, յաղթութիւն, և ոչ հրապաշտից և ամբարտաւանից։ Եւ ասէ ցՊետրոս. Բեր զխաչն և դիր այդր, և երկիր պագցեն ամենեքին որ ընդ իս են, և որ ոք ոչ հնազանդեսցի՝ մեռցի։ Եւ Բարզաւ թագաւորն Մովկանայ արհամարհեաց զխաչն և զբանն Վախթանգայ. և սպան զնա սպարապետն Վրաց Ջուանշեր. և ասէ ցամենայն զօրսն. Այս է մեր զօրութիւն և յաղթութիւն։ Եւ զարհուրեցան ամենեքեան, և ասեն. Եթէ տացէ մեզ յաղթութիւն խաչդ այդ, արհամարհեմք զամենայն պաշտամունս մեր, և զՔրիստոս պաշտեմք՝ որ կայ 'ի դմա։

Եւ 'ի նմին ժամու ելանէր Յոյն մի, Պօղիկարպոս անուն, քուերորդի կայսեր, և խնդրէր մենամարտիկ

'ի զօրացն Վախթանգայ։ Եւ ոչ ոք վստահացաւ ելանել, քանզի նա էր սպանող զօրագլխին Պարսից։ Ապա ասէ Վախթանգ. Աւիւծ ընդ աղուեսու [1] ոչ ելանէ, բայց զի ցուցցի զօրութիւն խաչիս Քրիստոսի՝ ելից ընդ քեզ։ Եւ կնքեալ զանձն նշանաւ խաչին, երկրպագեալ և համբուրեալ զնա, չոգաւ ընդդէմ Պօղիկարպոսի, և ասէ. Որովհետև գիտացեր եթէ երկրպագեաց զօրքս խաչին Քրիստոսի, և խնդրես տակաւին մարտնչել ընդ մեզ, ահա արիւն քո 'ի գլուխ քո։ Եւ մերձ երթեալ՝ եհար զնա, և ճեղքեաց յերկուս, և դարձաւ առ իւրսն՝ փառաւորելով զՔրիստոս։ Դարձեալ ճակատել սկսան Յոյնք, և փախոյց զնոսա Վախթանգ մինչև ցծով։ Եւ յետ այսորիկ հանդէս արարին երկոցունց կողմանցն. և էին անկեալքն 'ի Յունաց եօթանասուն և երկու հազար [2]. և ժողովեալ զգեբեալսն Յունաց, և արկեալ ընդ թուով՝ եօթնհարիւր ութսուն հազար [3], և առաքեցին զամենեսին առ կայսրն 'ի ձեռն Ներսեսի և Ատրներսեհի իշխանացն։ Զոր տեսեալ կայսեր՝ խնդաց. և եկն առ Վախթանգ, և երդուան միմեանց. և ետ կայսրն զԹուղարս և զԿլարճէթ, զոր առեալ էր 'ի վրաց, և խոստացաւ տալ զդուստրն իւր Վախթանգայ։ Եւ դարձաւ Վախթանգ 'ի տուն իւր մեծաւ խնդութեամբ։

1 Այսինքն, ես որ թագաւորս եմ՝ առիւծ, ընդ ծառայիդ՝ աղուեսու. որպէս յաւելու Վախթանգ պատմիչ։

2 Յաւելու օրինակն Պրոսէի ընդ Վախթանգայ. Եւ քառասուն և երկու հազար 'ի զօրացն Վախթանգայ. որ չիք յօրինակի մերում։

3 Զթուանշանն չյռ (780000) Պրոսէի վրիպակաւ ղյռ (ղճյռ. 680000?) ընթերցեալ, 'ի զուր մեղադիր լինի հայ բնագրին։

# ԳԼՈՒԽ ԺԴ

Վախրանգայ ընդդիմանալ Պարսից և հաշտեցուցանել զնոսա ընդ Յոյնս. — Երբ Վախրանգայ յԵրուսաղէմ, և միաբան չու նորա ընդ Պարսից 'ի Հնդիկս. — Շահատակութիւնք Վախրանգայ 'ի Սնդիկս, և ապստամբել ընդ Պարսից յաշխարհն Հաբաշեաց. — Դարձ Վախրանգայ 'ի Վիրս, հանդերձ Պետրոսիւ և Սամուելիւ, և որ ինչ անցք անցին ընդ եպիսկոպոսն Միքայէլ. — Գալուստ և հաստատութիւն Պետրոսի կաթուղիկոսի 'ի Վիրս, հանդերձ եպիսկոպոսօք իւրովք, ընդ Հեղինեայ դստեր կայսերն Յունաց՝ ածեալ 'ի կնութիւն Վախրանգայ. — Յաղթութիւն Վախրանգայ 'ի վերայ Պարսից և հարկանել 'ի նոցանէ կարեվէր. — Գալուստ Զենոնի կայսեր յօգնութիւն Վախրանգայ և պատերազմել ընդ Պարսից. — Մահ Վախրանգայ:

Իսկ Թագաւորն Պարսից լուաւ զուխտ նորա ընդ Յոյնս. բարկացաւ յոյժ, եւ անձամբ՝ բազմութեամբ զօրաց՝ 'ի Յոյնս, և անդէն մեռաւ [1]: Եւ Թագաւորեաց որդի նորա. և ել 'ի վէրայ Վախթանգայ. և կռուեցան ընդ միմեանս զամիսս չորս. մինչև եկն զօր 'ի կայսերէ ութսուն հազար, հանդերձ պարգևօք: Եւ զայն իմացեալ Պարսից Թագաւորին՝ խնդրեաց հաշտութիւն 'ի Վախթանգայ, ասելով. Ընդէ՞ր կռուիմք վասն դենի. եթէ իցէ Աստուած հուրն՝ ինքնին առցէ զվրէժ իւր 'ի խաչելոյն: Եւ ասէ Վախթանգ. Ահա գիտես՝ զի ամենայն Թագաւորք հարկս տային ձեզ, մինչև հաւատացին 'ի խաչեալն, և նովաւ զօրացեալ յաղթեցին ձեզ՝ որք պաշտէք զկրակ, զոր ես չիջուցի աստ յաշխարհիս իմում, և առաքեցի առ քեզ զքրմապետ նոցա: Եւ արդ Քրիստոս՝ Աստուած իմ է, և հուրն աստուած քո իցէ՝ թէ կամիս. և ես ազգ. Ներբրովթայ եմ, բայց դու ունիս

1 Օրինակն Պրոսէի համաձայն ընդ Վախթանգայ՝ զմահ Պարսկին կարգէ չև 'ի գլուխ հանեալ զխորհուրդ արշաւանաց նորա 'ի Յոյնս:

զալթոռ նորա. հնազանդեցայց քեզ՝ որպէս հօր: Եւ արարին այնպէս. և տուեալ միմեանց պարգևս՝ տեսին զիրեարս: Եւ ետ Վախթանգ զքոյր իւր Միհրանդուխտ՝ թագաւորին Պարսից Խոսրովու 'ի կնութիւն[1]. զի միւս քոյրն Խորավնէ առ Հայոց Պատրիաշխոյն[2] գրաւ էր: Եւ եղև միջնորդ Վախթանգ ընդ Յոյնս և ընդ Պարսս, և արար խաղաղութիւն 'ի մէջ նոցա. և եթող Խոսրով զԵրուսաղէմ 'ի Յոյնս: Այլ կինն Վախթանգայ՝ ծնաւ երկուորիս՝ արու և էգ, և մեռաւ ինքն. և կոչեցին զանուն արուին Դաչէ: Եւ Վախթանգ արար 'ի վերայ ոսկեակազմ սաղաւարտին պատկեր գայլու և առիւծու. վասն որոյ 'ի ժամ պատերազմին տեսեալ զնա և ճանաչեալ՝ ասէին. Ի բաց եղերուք 'ի գայլէ և յառիւծու. և կոչեցաւ նա Գուրգասալ, այսինքն Գայլառիւծ՝ 'ի Պարսից լեզուն: Բայց յոյս նորա որ առ Քրիստոս Աստուած՝ փառաւորէր զնա հանապազ. զի կայսրն առաքեաց նմա մեծ շնորհակալութիւն և պարգևս՝ 'ի ձեռն Լևոնի զօրագլխի, և բազում ընծայս թագաւորին Պարսից:

Յետ այսորիկ ստիպեալ 'ի սիրոյն Քրիստոսի՝ չոգաւ Վախթանգ յԵրուսաղէմ, ընդ իւր տանելով զմայր իւր և զքոյրն. և ողջունեալ զսուրբ տեղիսն՝ դարձան մեծաւ ուրախութեամբ, և եկն յԱնդակ[3]: Եւ մեծարեաց զնա Պարսից թագաւորն՝[4] զի 'ի Պարսս

1 Միհրանդուխտ այս է նոյն ինքն՝ զոր փրկանաւորեաց Վախթանգ 'ի ձեռաց Օսաց, զորոց 'ի վեր անդր ասացաւ:

2 Թուի՝ բդեաշխն, որպէս յիշեաց 'ի վեր անդր, որ և 'ի մերայոցն անուանէր բդեաշխն Վրաց, յորոց սակի էին և քաջածանօթքն այլուստ Աշուշա, Վազգէն, և այլն. զի գաւառ նոցին՝ Սոմխէթ անուանեալ 'ի Վրաց՝ մերթ ընդ իշխանութեամբ Հայոց կայր և մերթ Վրաց: Բդեաշխս այս յընթացս պատմութեանս անուանի Բակուր, իսկ Խորավնէ՝ անուանի Խորանձէ, և էր աւագքոյր Վախթանգայ:

3 Այն է՝ Անտաք կամ Անտիոքիա:

4 Վախթանգ 'ի մէջ ածէ զգիր արքային Պարսից առ Վախթանգ թագաւոր, զոր ոչ անդէպ վարկանիմ յեղուլ աստ 'ի հայ, առ 'ի պարզել զխորհուրդ մտաց Պարսկին ընդ հաշտութիւնն՝ զոր ընդ Յոյնս խօսեցաւ 'ի ձեռն Լևոնի զօրագլխի. « Արասցուք փութով զոր խնդրեան 'ի մէնջ. ըստ կամաց քոց վարեա զտէրութիւն քո. առաքեա հրաման 'ի վերայ քաղաքացն՝ զորս ետու քեզ: Առաքեցի և զԲարզաբան առ Կայսր՝ յանձնել 'ի ձեռս նորա զեհ-

երթիցէ մարբն և քուերբն, զի արասցեն զհարսանիս քեռն նորա, զոր ետ 'ի կնութիւն խոսրովու: Եւ գնացին 'ի Բաբելոն, և ընկալեալ եղեն մեծաւ պատուով, և արարին ուրախութիւն ամիսս վեց. և մեծամեծ պարգևօք յուղարկեցին զմայրն Վախթանգայ [1]: Եւ առեալ խոսրովու զՎախթանգ՝ գնաց 'ի Ջուրջանէթ, ուր է մայրաքաղաքն Գելան. և արարին զնա անապատ 'ի բնակչաց ազգին, և բնակեցուցին անդ Պարսիկ, և կան 'ի հարկի Պարսից մինչև ցայսօր: Եւ անտի գնացին 'ի Հնդիկս, և յաւարի հարին զընդարձակ տեղիսն, բաց 'ի քաղաքացն՝ որք կային 'ի վերայ ծովուն. և անդ եսպան Վախթանգ երկոտասան ըմբիշս. և առին հարկըս՝ մուշկս և ամբարս [2] հազար հազար լտերս և ծխանելիս, նաւս [3] և ակունս, զմիուխտ և յակունթ՝ բեռն մի նաւի, և յոսկոյն Սոփերայ հարիւր բեռն ուղտուց, և արծաթ՝ հինգհարիւր բեռինս, քանզի յամեցին զամս երիս:

Եւ գնացին անտի 'ի Սնդիկս. և թագաւորն Սնդիկոյ ել ընդդէմ նոցա, և կոտորեաց 'ի զօրացն Պարսից զբազումս. սակայն զօրքն քրիստոնէից փախուցին զնոսա, և արկին 'ի Սինդա բերդն և քաղաք ամուր: Եւ եղանէր աւուր աւուր թագաւորն Սինդայ անձամբ ախո-

խանութիւն գաւառաց մերոց և զքաղաքաց: Գիտես քաջ զի ամենայն պարսիկ ուրեար՝ որ միանգամ յանուն իմ կրգուեալ են կործանել զքաղաքանին Յունաց, զայրացին ընդ իս՝ զի յիմոցս տամ 'ի ձեռս նոցա երկուս արքունի գաւառս: Այլ այժմ աղաչեմ զքեզ տալ ինձ զքոյր քո 'ի կնութիւն, և գալ այսր 'ի հայրենի աշխարհն մեր՝ տեսանել զընտանիս, և 'ի թիկունս ինձ լինել ընդդէմ թշնամեաց իմոց՝ Հոբաշեաց, Եղամայեաց, Հընդկաց և Սինդաց, որոց քամահեալ զինև՝ անսաստեցին հրամանի իշխանութեանս իմոյ: Եւ 'ի գալ քո այսր՝ օրէն լիցի ինձ առնել առ աւագորեարն իմ և առ մարզպանս՝ զի ըստ փափաքանաց եղբօր մերոյ Վախթանգայ՝ արարաք հաշտութիւն ընդ Յոյնս, որք և ձեռն տան ինձ ընդդէմ թշնամեաց մերոց. ընկալեալ 'ի պարգևի մասին զերկոսին գաւառս տէրութեան իմոյ. և այսու օրինակաւ զիջցի առելութիւն Պարսից ընդդէմ Յունաց»:

1 Օրինակն Պրոսէի ունի՝ զմայրն Վախթանգայ և զքոյր նորա:

2 Այն է՝ անհ բազմազունեան, առեալ 'ի լատինէն ambra, որ է սաթ:

3 Կարծեմ վրիպակաւ Թարգմանէ Պրոսէ. նաւս ծխանելեաց կամ անուշից:

յեան . և զորս ելանէին ընդդէմ նորա՝ փութով սատակէր . և ջանայր որսալ զՎախթանգ ։ Եւ 'ի գիշերին արար դետնափորս 'ի դրան քաղաքին ծածուկս , և թաքոյց 'ի ներքս տասն այր ընտիր , և առաքեաց զմի ոք մենամարտ՝ զի խնդրեսցէ զՎախթանգ, և յարուցեալ արքն 'ի դիպող ժամու՝ կալցեն զՎախթանգ ։ Եւ յորժամ ել ախոյեանն և խնդրեաց զՎախթանգ, և չոգաւ առ նա Ծայուրմակ հեծուպն Վախթանգայ, և սպան զնա ։ Բայց 'ի դառնալն յետս՝ յարեան դարանամուտքն և սպանին զնա ։ Եւ տրտմեցաւ յոյժ Վախթանգ, և ելաց զնա որպէս զեղբայր սիրելի, զի սննդակից նորա էր ։ Զկնի այսորիկ ել Թագաւորն Սինդայ 'ի Պարպակն [1], և ասէ . Լսէ՛ զբանս իմ, արքայդ Վրաց, զի ասացից քեզ՝ թէ ում իցես դու նման . Նման ես դու ագռաւուն, որ առ զբազայն՝ փետտեալ յայլոց ընկերացն իւր, և զարմանեաց զնա 'ի բոյն իւր, բերելով նմա մանր ճճիս և օձ . իսկ նա սակաւ մի կազդուրեալ՝ կալաւ զագռաւն և եկեր զնա՝ ասելով, եթէ Ոչ կարեմ զօրանալ այսպիսի կերակրով, մինչ ոչ եմ կերեալ թռչուն ։ Արդ դու զփետտեալդ 'ի մէնջ և յայլոց՝ թեաւորես հակառակ քոյոցդ հաւատոց քրիստոնէութեան ։ Եւ ասէ ցնա Վախթանգ . Անմիտ դու և մուկն խլուրդ, որ ոչ ունելով աչս՝ կայ 'ի ներքոյ հողոյ, անմասն 'ի դեղեցկութենէ երկնի և երկրի և 'ի ճառագայթից արեգական, և ուրախ է 'ի կեանս . Նոյնպէս և դու կոյր միտք՝ ոչ տեսանես՝ զոր արարի ես . խնդաս ընդ ոչ տեսանելն՝ զոր արարի ես, զհաւատն իմ սերմանել 'ի տան հրոյ, 'ի գաւառն Պարսից կանգնել զքրիստոնէութիւն . և զԵրուսաղէմ իսկ զտեղի փառացն Քրիստոսի՝ առի 'ի Պարսից՝ զտեղի ոտից Աստուծոյն իմոյ ։ Եւ ոչ եկի 'ի խնդիր փառաց և ընչից աշխարհականաց և ապականացուաց, ընդ որով թաղեալ կաս դու, որպէս խլուրդն 'ի ներքոյ հողոյ ։ Զի մեր իմաստութիւնն հրամայէ մեզ՝ դնել զանձինս 'ի վերայ եղբարց, զի և զաշխարհն իմ և զսուրբ եկեղեցիսն պահեցի 'ի զգուշութեան, 'ի

1 Վախթանգ ունի . Եւ առ դրունս քաղաքին . Թերևս 'ի հայումըս ուղղագրելի իցէ 'ի պարիսպսն ։

ծառայութիւն տալով զանձն իմ՝ 'ի թողութիւն մեղաց
իմոց. և թէ յայսոսիկ մեռանիցիմ իսկ՝ 'ի մահուանէ
'ի կեանս փոխիմ: Եւ ասէ ցնա Թագաւորն Սինդայ.
Եթէ հաւատաս այդմ՝ ե՛կ արա 'ի դուրս, և փոխեցից
զքեզ 'ի մահուանէ 'ի կեանս, որպէս զիշխանն քո՝ որ
գնաց կարապետ քեզ: Եւ ասէ ցնա Վախթանգ. Ե՛կ
արտաքս, և նախ ես առաքեցից զքեզ 'ի խաւարն ար-
տաքին՝ զօրութեամբ Քրիստոսին իմոյ, որ նա փոխելոց
է զիս 'ի կեանս՝ յոր ժամ և գիտէ: Եւ գնացին դիպե-
ցան երկոքեանն. և եհար Վախթանգ զՍինդայն նիզա-
կաւն, և ընկէց զնա յերիվարէն, կարեվէր խոցեալ 'ի
մահ. և առեալ զոտիցն՝ տարաւ զնա 'ի քարշ՝ առաջի
թագաւորին Պարսից. և եղև ուրախութիւն մեծ, և գո-
վութիւն նմա յամենեցունց: Եւ ածին ճարտար՝ բժըշ-
կել զնա 'ի վիրացն. և սակաւ մի ուշաբերեալ նորա,
թողին զնա յիւրում, և տարան: Եւ առին պատանդս եր-
կուս յորդւոց նորա, և հարկս կրկին քան զՀնդկացն.
և տուաւ այն ամենայն Վախթանգայ, և այլ բազում
ընծայս: Եւ արարեալ հաշտութիւն՝ գնացեալ եկին 'ի
Հաբաշէթ[1], յերկիրն Քուշացւոց՝ սահմանակցացն Պար-
սից, զկնի չորից ամացն՝ զոր արարին 'ի Հնդիկս և 'ի
Սինդէթ: Եւ նստեալ կային ազգն Հաբաշեաց 'ի տըղ-
մուտ տեղիս եղեգանց՝ ուր ոչ կարէր կոխել չորքոտա-
նի և ընթացք նաւի: Բայց հնարիւք իմն կտրեցին ըղ-
ջուրն, և առին զնոսա և կոտորեցին. և հազար տուն ա-
ծին ընդ ինքեանս, և ցրուեցին յայլ և այլ տեղիս. և
սոքա են ազգն Քրդաց և Քուշանքն, այլ և այլ են[2]:

Եւ եկին 'ի սահմանս Հայոց և Յունաց: Եւ զի ընդ
նոսա էր Լեւոն զօրավարն Յունաց՝ բազում զօրօք,
չոգաւ նա յերկիրն իւր, տալով ընդ ինքեան դեսպանս,

1 Որպէս դիւրին է իմանալ՝ ոչ 'ի Հաբաշիս Ափրիկէի, այլ 'ի գաւառ մի Հնդկաց, որոց գոյն սևամորթ էր հանգոյն Ափրիկեցւոցն:

2 Պրոսէ ունի. Եւ են սոքա բազմաթիւ ազգք Քրդաց և Քուշանաց. որ և զՔուրդս զայսոսիկ նոյն համարի ընդ անուանելոցն 'ի մերոյս Խորենացւոյ Քուսաի Խորասանք, որոց սահման ձգէր 'ի մտից՝ 'ի Մարս և 'ի Պարսիկս, և յելից՝ մինչև 'ի Հնդիկս. զորս ոչ է պարտ շփոթել ընդ Կորդուացիս Կորճէից Մեծին Հայոց:

զի ածցեն զդուստրն կայսեր՝ 'ի կնութիւն Վախթանգայ, և զի ձեռնադրեսցեն զՊետրոս՝ կաթուղիկոս Վրաց, և զՍամուէլ՝ եպիսկոպոս։ Եւ կայսրն և պատրիարգն կոստանդնուպօլսոյ՝ առաքեցին զՊետրոս քահանայ և զՍամուէլ կրօնաւոր՝ յԱնտաք, զի անդ առցեն ձեռնադրութիւն, զի ձեր է, ասեն, վիճակն այն։ Եւ կատարեալ զխնդիրն՝ արձակեցին զնոսա 'ի Վիրս։ Իսկ թագաւորն Վախթանգ չոգաւ 'ի Քարթլ. և ել ընդ առաջ նորա Դաչէ որդի նորա, և ամենայն փառաւորքն Վրաց, և արարին մեծ ուրախութիւն 'ի մտանել նորա 'ի Մցխիթա։ Բայց եպիսկոպոսն Միքայէլ իբրև գիտաց՝ եթէ կաթուղիկոս և եպիսկոպոս գան 'ի Վիրս՝ առանց կամաց նորա՝ դժուարեցաւ. և պատճառանօք կշտամբէր զՎախթանգ, որպէս թէ երկրպագեալ է նա հրոյ։ Իսկ թագաւորն երդնոյր և աղաչէր զնա՝ եթէ Քրիստոս է իմ Աստուած ճշմարիտ, և մի՛ պարտաւորեր զիս զուր։ Եւ եպիսկոպոսն ոչ լսէր նմա, այլ անէծ զնա և արար ընդ բանիւք։ Եւ ասէ թագաւորն. Թէպէտ և անմեղ եմ 'ի բանէ այտի; բայց են իմ և այլ յանցանք առաջի Տեառն, և վասն այնորիկ խոնարհել արժան է ինձ առաջի նորա։ Եւ չոգաւ և անկաւ յոտս եպիսկոպոսին, և համբուրեաց և խնդրէր թողութիւն։ Իսկ նա ա՛ռ 'ի նմանէ զոտն, եհար զբերան թագաւորին, և խլեաց 'ի յատամանց նորա։ Եւ առեալ զատամն իւր թագաւորն՝ ասէ. Այդ գործ մեղաց իմոց էր և սատանայի, որ ամբարձ զքեզ ընդդէմ իմ. զի այդ ոչ է քո պատուիրանն՝ որ ասէ. Ջեղէգն ջախջախեալ մի՛ բեկցես, և զպատրոյգն առկայծեալ մի՛ շիջուցես. և դու նախանձեցար ընդ Պետրոսի, և դու առեր զՑուգայի նախանձն։ Եւ առաքեաց զնա առ պատրիարգն կոստանդնուպօլսի, և զհանեալ ատամն զկնի, զի արասցէ դատաստան առանց աչառանաց։ Եւ տեսեալ զՄիքայէլ՝ պատրիարգին, ասէ ցնա. Ագահութեամբ մարտեար ընդ եկեղեցի իբրև Ցուգաս, և հեղեր արիւն, և այն՝ ոտիւք, և բերանոյ թագաւորին, և զշինուածն Աստուծոյ քակեցեր. և արդ մի՛ լիցիս արժանի քահանայութեան, զի մահապարտ ես տեառն քո։ Եւ ընդդէմ ոչ լուար Պաւղոսի՝ որ ասէ. Հնազանդ եղերուք

թագաւորի. որ և ասէ. Աղօթեցէք թագաւորի, ապա թէ ոչ՝ գիտասջիք զի ոչ վայրապար ածեալ է սուսեր ընդ մէջ: Եւ յաքսորս առաքեցաւ նոյնժամայն Միքայէլն:

Իսկ Անտիոքու պատրիարգն [1] 'ի ձեռնադրելն զՊետրոս կաթուղիկոս արար նմա և երկոտասան եպիսկոպոսունս. և նախ 'ի կոստանդնուպօլիս գնացին, և առեալ թագուհի պարգևս և զդուստր կայսեր զՀեղինէ [2], և այնպէս չոգան առ Վախթանգ: Եւ զուարճացաւ երկիրն: Եւ նստաւ կաթուղիկոս Մցխիթայ յեկեղեցւոջն՝ զոր շինեաց Վախթանգ՝ զՍիոն, և Սամուէլն նստաւ յեպիսկոպոսարանին Մցխիթոյ. և եպիսկոպոս մի նստաւ 'ի Կլարճէթ, և մի յԱրտահան, և մի 'ի Ջաւախէթ [3], և մի 'ի Մանկլիս, մի 'ի Բաւղնիս, մի յՌիչա, մի 'ի Սուրբ նինաւ [4] կոչեցեալն, 'ի վերայ դրանն Ուջարմոյ, մի 'ի Ջերամ, մի 'ի Չելթ, մի 'ի մէջ երկուց եկեղեցեացն, մի 'ի խորնոյբոջ, մի 'ի յԱգարակ՝ հանդէպ խունանայ: Եւ շինեաց Վախթանգ եկեղեցի 'ի Նիքօզ՝ 'ի վերայ վըկայարանին Րաժդենոյ՝ պարսիկ մնուցողի առաջին կնոջըն Վախթանգայ, որ հաւատաց 'ի Քրիստոս, և 'ի Պարսից բռնադատեալ վասն հաւատոյն՝ ոչ ուրացաւ զՔըրիստոս, և սպանին զնա 'ի բարի դաւանութեանն իւրում՝ 'ի փառս Քրիստոսի Աստուծոյ, և 'ի տեղւոջ վկայարանին նորա՝ եդաւ աթոռ եպիսկոպոսի: Իսկ Հեղինէ ծնաւ 'ի Վախթանգայ՝ երիս որդիս և դուստր մի [5]: Եւ նստաւ Վախթանգ 'ի յՈւջարմա, տուեալ զմեծ մասըն երկրին՝ երէց որդւոյ իւրոյ Դաչէի. և զխորանձէ՝

1 Ըստ Պրոսէի՝ ձեռնադրութիւնն Պետրոսի անկանի յամսն 475-488, յորում ժամանակի պատրիարգ էր յԱնտիոք անգղուխ եւտիքեանն Պետրոս Թափիչ:

2 Կայսերն Լեւոնի Ա. երկու միայն յիշին դստերք 'ի պատմըչացն Յունաց, Արիադնէ և Լեւոնդիա, առաջինոյն հարսնացեալ ընդ Զենոնի որ ապա կայսր եկաց, և երկրորդին ընդ Մարկիանու՝ որդւոյ Անթեմեայ՝ իշխանակցի Լեւոնի Երկրորդի. իսկ Հեղինէ անուամբ ոչ ուրեք դստանի, բաց 'ի պատմագրաց Վրաց. թերևս իցէ սա ոչ դուստր, այլ 'ի մերձաւորացն կայսեր:

3 Պակասի յօրինակին Պրոսէի և 'ի թարգմանութեանն՝ և մի յԱրտահան և մի 'ի Ջաւախէթ:

4 Պրոսէ ունի՝ Սուրբ-Նշան:

5 Ըստ Վախթանգայ՝ երիս որդիս և երկուս դստերս, և ըստ Վախուշտի՝ երկուս որդիս և երկուս դստերս:

զքոյր իւր զաւագ՝ եւ 'ի կնութիւն Հայոց բդեշխին՝ Բակուրայ:

Ցայնմ ժամանակի մեռաւ Խոսրով Թագաւորն Պարսից, և նստաւ յաթոռ նորա որդին իւր՝ Հոմանուն Հարցն[1]. և առաքեաց առ Վախթանգ զի առաջնորդ լիցի նմա՝ երթալ պատերազմաւ 'ի Յոյնս: Եւ արկեալ էր Վախթանգ հիմն քաղաքին Տփխեաց, և չինէր զնա ժրութեամբ: Եւ պատասխանի Թագաւորն, և ասէ. Այս է առակ՝ որ ասեն. Դարբին, սրեա զսուրդ, զի հատից զգլուխ քո: Եւ ասէ. Երթայք ասացէք ցնա՝ որ առաքեաց զձեզ առ իս. Նախ ընդ իս մարտիր և ապա ընդ Յոյնս, զի սիրեցաք մեք զքեզ և պարսպեցուցաք 'ի մեզ: Ցաւուրսն յայնոսիկ Դաչէ առեալ զորդի քեռ իւրոյ՝ անց ընդ կուխեթ՝ յերկիր Լաւպատայ, 'ի քարաժայռ դժրըռուկս անձաւացն, որոյ բնակիչք էին խուժադուժ ազգաց բազմութիւն յոյժ, որք պաշտէին զհուր և զջուր: Եւ ամրացաւ ամենայն երկիրն[2]: Եւ չոգաւ Վախթանգ և կին իւր և որդիքն՝ 'ի ձորն Ուջարմոյ՝ յերեսաց Պարսից արքային, քանզի լուան եթէ գայ 'ի վերայ նորա: Որ և եկն վաղվաղակի և կոտորեաց զքաղաքն Կամբեջոյ և զբերդն Ճերամոյ. և հասեալ 'ի կուխեթ և բնակեցան յՕրին գետն: Եւ ել Վախթանգ երկու հարիւր քառասուն հազարաւ՝ ընդ եօթնհարիւր քառասուն հազարաւորացն Պարսից՝ 'ի մռայլ աւուր. և կոտորեաց մինչև 'ի պաղատ Թագաւորին Պարսից, և սպան զորդի նորա զԲարտամ, և զերծաւ Թագաւորն Պարսից: Բայց պարսիկ մի խոցեաց զքաջն զայն Վախթանգ 'ի կուշտն՝ կարեվէր. սակայն պնդեալ զսիրտն՝ ել 'ի պատերազմէն յաղթութեամբ, կոտորեալ 'ի նոցանէ հարիւր երեսուն հազար, և գնաց 'ի յՈւջերմա:

Ցայնմ ժամանակի մեռաւ կայսրն Յունաց, և Թա-

1 Որ է քաջածանօթն Խոսրով Անուշաւէվան. զորմէ աւանդէ Վարդան որպէս թէ 'ի մեռանել իւրում՝ ընկալեալ իցէ զօրէնս քրիստոնէութեան, 'ի ձեռն կաթուղիկոսին Հայոց Քրիստափորի Ա. — առ որ հաւատս ընծայեացէ իւրաքանչիւր ոք ըստ չափու կամացն. քանզի բաց 'ի գրոցն Վարդանայ՝ չգտանեմ այլ ուրեք յիշատակութիւն ինչ զայնմանէ:

2 Այն է՝ երկիրն Վրաց՝ առաջի արքային Պարսից:

դաւորեաց Զենոն որդի Նորա, և եկն օգնել Վախթան֊գայ. և հասեալ 'ի Սպեր՝ լուաւ զբօթ վիրաւորելոյն 'ի մահ զՎախթանգայ, և դարձաւ 'ի կարնոյ քաղաք։ Իսկ թագաւորն Պարսից խոսրով աւերեալ զՏփխիս և զԱրմազ և շուրջ զՄցխիթաւ, և չոգաւ 'ի վերայ Յունաց. և մարտեան ընդ միմեանս Պարսք և Յոյնք. և մնաց մարտն յերկուց կողմանց. և դարձան Պարսք ընդ քարթլ։

Եւ մեռաւ Վախթանգ, յոլով պատուիրանաւ՝ որդւոյն՝ Դաչէի, որոյ ետ զթագաւորութիւնն, և ամե֊նայն զօրացն՝ վասն հաւատոյ քրիստոնէութեան և միաբանութեան. և թաղեցաւ 'ի Մցխիթա։ Եւ թագա֊ւորն Պարսից դարձաւ յերկիր իւր։

---

# ԳԼՈՒԽ ԺԵ

*Յաջորդութիւն թագաւորաց և կաթողիկոսաց, և արշաւանք Օսաց. — Արշաւանք Հերակլ կայսեր 'ի վերայ Պարսից և նուաճել նորա զՎիրս. — Կարգ պայազատութեան իշխանաց և կաթողիկոսաց 'ի Վիրս. — Զօրանալ Մահմետի և Հագարացւոց, և աւերել զՎրաստան և զշրջակայսն. — Պատերազմն նոցին և պարտութիւն 'ի Վրաց. — Գալուստ և հաստատութիւն Ադրնասի և այլոց ոմանց 'ի Վիրս։*

Եւ Դաչէ թագաւորեաց Վրաց [1]. շինեաց զամենայն աւերեալսն Պարսից։ Մեռաւ կաթուղիկոսն Պետրոս, և էառ զաթոռն Սամուէլ, և յետ նորա Թափեչան էառ զաթոռն, և զկնի նորա Չիմաք։ Ննջեաց և թագաւորն Դաչէ, և էառ զթագաւորութիւնն որդի նորա [2], և զկնի նորա թագաւորեաց Փարսման որդի նորա [3]։ Յաւուրս սորա ելին Օսքն [4], և աւերեցին զՔարթլ. և զի անպատրաստ էին Յոյնք յարևմտից կողմանց՝ օգնել Փարսմանայ, խնդրեաց 'ի Պարսից օգնութիւն, զի հնազանդեսցի նոցա հարկատրութեամբ, բայց զի հաւատոյ և եկեղեցւոյ մի արասցեն բռնութիւն։ Եւ լուան նմա Պարսք, և ոչինչ նեղէին վասն հաւատոյ իւրեանց։ Իսկ զկնի մահուանն Փարսմանայ՝ էառ զթագաւորու-

1 Երեսներորդ չորրորդ արքայ, խոսրովունի. իշխեաց ամս 14, 'ի 499–514։

2 Այն է Խոսրովունին Բակուր Երկրորդ, երեսներորդ հինգերորդ արքայ. յիշատակեալ 'ի Վախթանգայ, որ եկաց յիշխանութեանն զամս 14, սկսեալ 'ի 514 ամէն մինչև ցամն 528։ Սկսեալ յանուանէն Թափեչանայ մինչև ցայսր՝ պակասին յօրինակին Պրոսէի։

3 Երեսներորդ վեցերորդ արքայ, խոսրովունի. որոյ իշխանութիւնն ձգեցաւ ընդ ամս 14, 'ի 528–542։

4 Վախթանգ զՊարսիկս առէ ելեալս 'ի վերայ Վրաց՝ փոխանակ Օսաց։

թիւնն միւս փարսման [1], եղբօրորդի Նորա. և էր Նա այր բարեմիտ և շինիչ և զարդարիչ եկեղեցեաց։ Մեռաւ կաթուղիկոսն Ջիւտք, և Նստուցին կաթուղիկոս՝ առանց Անդաւքու՝ զՍաբա, զի յայնմ հետէ ինքեանք իսկ Վիրք դնէին կաթուղիկոս յազգէ Նախարարացն. քանզի զկնի Սաբայ՝ Նստաւ Ցիւլաթի։ Յաւուրս սորա եկն Յովհաննէս [2] 'ի Միջագետաց 'ի Վիրս, այր սուրբ և սքանչելագործ, որ արար յոլով Նշանս ինքն և աշակերտքն իւր. և գրեցան իւքն և եդան յեկեղեցիս Քարթլայ [3]։ Ի թագաւորէն Միհրանայ մինչև ցերրորդ փարսմանն՝ են ամք երկերիւր [4]. յիշատակ բարի զկնի իւր։

Յաւուրս սորա [5] մեռաւ Սամուէլ, և էառ զաթոռն Բարթուղոմէոս։ Յաւուրսն յայնոսիկ սպանաւ կայսրն

1 Երեսներորդ եօթներորդ արքայ, խոսրովեանի, իշխեաց ամս 15, 'ի 542–557։

2 Յովհաննէսս այս՝ լուսաւորիչ անուանեալ Վրաց աշխարհին, էր յանծանօթ ծնողաց 'ի Միջագետս. որոյ 'ի զարգանալ հասակին՝ վարժ գտաւ յամենայն ուսմունս ժամանակին, և զարդարեալ բազում առաքինական ձիրիւք. վասն որոյ և ետ Նմա Աստուած շնորհս բժշկութեանց և սքանչելեաց։ Կամելով սորա խոյս տալ 'ի պատուոյ և 'ի բազմախուռն դիմողաց առ Նա՝ չոգաւ յանապատ, և դադարեաց անդ ժամանակս ինչ. յետ որոյ հրաման պատուիրանի ընկալեալ 'ի հրեշտակէ Աստուծոյ՝ էջ 'ի Վիրս, հանդերձ երկոտասան աշակերտօք իւրովք, ուր խնդրեալ և ընկալեալ 'ի Թագաւորէն և 'ի կաթուղիկոսէն զլեառն Զադէն, անդ արար իւր բնակութիւն. և էր անդ յառաջ ժամանակաւ տեղի պաշտաման կռոց, ուր բնակէին դեւք բազումք և գազանք՝ վնասիչք կողմանցըն. յորոց զառաջինսն հալածեալ աղօթիւք և զվերջինսն ընտելացուցեալ, եկաց անդ ընդ եղբարս ճգնազգեաց կենօք, առաքելով զնոսին 'ի շրջակայ կողմանսն՝ 'ի Վիրս, 'ի Կախէթ, 'ի Գարեջձա և այլուր՝ քարոզել զկրօնս քրիստոնէութեան. իսկ ինքն եկաց մնաց 'ի լերին անդ ընդ միում յաշակերտաց իւրոց. ուր և հանգեաւ 'ի Տէր՝ պատուէրս և քաջալերս տալով շրջակայիցն՝ յառաջ վարելոյ զգործ հոգեշահ քարոզութեանցն։

3 Ակնարկէ անշուշտ 'ի Յայսմաւուրս, որք ընթերցեալ լինէին յեկեղեցիս Վրաց։

4 Այն է՝ յամէ 342–542, ըստ Վախուշտ պատմագրի։

5 Այսինքն՝ յաւուրս Ստեփանոս կիւրապաղատի. զի 'ի Փարսմանայ մինչև ցայս վայր՝ պակասեն բազում ինչ 'ի պատմութենէն. այն է՝ որ ինչ անցին առ թագաւորութեամբ Բակուրի (38երորդ արքայ, խոսրովեանի, իշխեաց զամս 13, 'ի 557–570) որդւոյ Փարսմանայ, առ որով 'ի ձախողել իրացն Պարսից՝ Վիրք ապաւինեցան առ Յոյնս, խնդրելով ինքեանց թագաւոր 'ի Մաւրիկ Կայսերէ։ Քանզի յետ մահուան Բակուրի, Որմիզդ՝ արքայ Պարսից առաքեաց

Մուրիկ՝ ՚ի փոկասայ՝ զօրականէ միոջէ, որ և թագաւորեաց ՚ի վերայ Յունաց։ Եւ լուաւ զբօթ աներոյն[1] իւրոյ՝ Քասրէ թագաւորին Պարսից. բարկացաւ և ել յերկիրն Յունաց, և աւերեաց գաւառս բազումս, և գերեաց զերուսաղէմ և զխաչն տէրունական։ Եւ Ստեփանէ իշխանն Վրաց՝ դարձաւ ՚ի Պարսից հնազանդութիւն՝ յերկիւղէ նոցա, և նստէր ՚ի Տփխիս։ Իսկ զփոկաս սպանեալ Հերակլայ՝ ազգականին Մուրկայ, և թագաւորեալ ՚ի վերայ Յունաց, և ածեալ զօր յարեմտից ՚ի Թուրքաց՝ բազում յոյժ, և ել ՚ի խնդիր կեն-

իշխել ՚ի վերայ Վրաց և Աղուանից զորդին իւր՝ զԽոսրով Աբրուէս կամ Աբէրուիս. որ և զկնի սակաւ ժամանակաց բռնադատեցաւ թողուլ զիշխանութիւնն և երթալ ՚ի Պարսս՝ ՚ի թիկունս հօր իւրոյ՝ ընդ դէմ Յունաց. յորմէ խրախուսեալ Վրաց՝ ձեռն ետուն Մաւրիկ Կայսեր՝ խնդրելով զօգնութիւն նորին և զյաջորդ արքայութեանն իւրեանց. որ և ետ նոցա ՚ի թագաւոր զԳուրամ (երեսներորդ իններորդ արքայ, իշխեաց ամս 25, ՚ի 575-600), յորմէ սկիզբն առնու հինգերորդ Հարստութիւնն Վրաց, այն է՝ Բագրատունեացն. և էր սա ըստ պատմագրայն Վրաց Բագրատունի ՚ի հօրէ և Խոսրովունի ՚ի մօրէ. քանզի համարի Վախուշտ՝ զի Գուրամայ ումեմն ամուսնացեալ ընդ քեռ Միհրդատայ՝ եղբօր Դաչէի, որ եկաց 34դ արքայ Վրաց, ծնաւ զորդի Բագրատ անուն, և ՚ի վերջնոյս ծնաւ միւս Գուրամ՝ յանծանօթ մօրէ. Գուրամս այս եկաց առաջին թագաւոր բագրատունի ՚ի Վիրս, յանուանէ հօր իւրոյ յորջորջեալ բագրատունի, որ էանց և ՚ի յաջորդս նորին։ Այլ այս ամենայն՝ հեռի ՚ի ճշմարիտ պատմութենէ՝ են ինքնահնար կարկատուն ստեղծուածք մտաց, առ ՚ի պարզել զմթին և զանստոյգ սկզբնաւորութիւն Բագրատունեացն Վրաց. որոց՝ ոչ շատացեալ ՚ի Հրէից անտի իջուցանելոյ զնոսին, այլ և մանկական երևակայութեամբ մինչև ցՍողոմոն իսկ և ցՄարգարէն Դաւիթ հանել ախորժեն զշարս սերընդոց ազգին այնորիկ։

Զկնի Գուրամայ՝ իշխեաց որդի նորա Ստեփանոս՝ 40երորդ արքայ՝ ամս 19, ՚ի 600-619, յորմէ սկսանի դարձեալ պատմագիրն յառաջ վարել զբանսն։ Իսկ կաթուղիկոսացն յաջորդութիւն մինչև ցայս վայր՝ ըստ Վախթանգայ՝ զկնի Յեղաթեայ կամ Եւլաւեայ՝ եղև նախ Մակար, առ Բակուրաւ՝ 38երորդ արքայիւ, յետ Մակարայ՝ եդաւ Սիմոն, դարձեալ յաւուրս Բակուրայ, և եկաց մինչև ցաւուրս Գուրամայ, և յետ մահուան նորին եդաւ Սամուէլ, և զկնի սորին միւս Սամուէլ՝ նոյնպէս առ Գուրամաւ, զոր փոխանակեաց Բարդուղիմէոս՝ յիշեալն ՚ի պատմիչէս առ Ստեփանոսիւ։

1 Պատմէ Վախթանգ՝ թէ որպէս զհալածականն Խոսրով յերեսաց թշնամեաց իւրոց՝ ժողովեալ Մաւրիկ կայսեր մարդասիրաբար, հաստատեաց զնա վերստին յաթոռ թագաւորութեան Պարսից, տալով նմա զդուստր իւր ՚ի կնութիւն։

սատու խաչին. Ճանապարհ կալեալ ընդ Հայս՝ եկն 'ի Բզնունիս, և անտի ելանէ 'ի Տփխիս: Եւ Ստեփանոս ոչ ելանէ 'ի հնազանդութենէ Պարսից. այլ փակեաց զքաղաքն, և պատերազմէր ընդ կայսեր՝ ելանելով 'ի դուրս աւուր աւուր, և 'ի քաջացն Յունաց մեռանէր: Եւ յետ սպանանելոյն զնա՝ առին զքաղաքն, բայց 'ի կլայէն, յորմէ Թշնամանեաց զկայսրն՝ աւագ բերդին, ասելով. Արի գնա, քօշ հասեալ, զի չես նման Թագաւորի, այլ քօշի ունիս պարանոց և մօրուս: Եւ կայսրն իբրև լուաւ՝ խնդաց 'ի սրտի, և ետ բերել զգիրսն Դանիէլի, և բացեալ խնդրեաց զտեղին՝ յորում գրեալ էր՝ եթէ Ջօրանայ քօշն այծեաց՝ որ գայ յարևմտից, և հարկանէ զխոյն յարևելս՝ մեծաւ զօրութեամբ: Եւ ասէ ցզօրսն. Թէպէտ անարգեաց զիս այրն 'ի սրտէ իւրմէ, այլ ձգեաց առ իս զբանս զայս: Եւ կոչեաց առ ինքն զԱտրներսեհ՝[1] յազգէ Դաչէի, որ էր 'ի Նուխէթ, և ետ 'ի նա զՏփխիս, և եթող առ նմա զզօրագլուխն Ջիբղա, և ինքն չոգաւ 'ի Պարսս: Եւ առին զկլայն. և կալեալ զանարգիչն կայսեր՝ Ջիբաղն, նախ զբերանն ելից ոսկով. Զի խնդաց, ասէ, կայսրն 'ի բան բերանոյ քո. և ապա հանեալ զմորթն՝ հասոյց կայսեր, վասն նախատելոյն զնա: Իսկ որդին Քասրէի՝ սպան զնա[2]. և արարեալ սէր ընդ կայսեր՝ ետ 'ի նա զխաչն Տեառն: Եւ դարձաւ Հերակլ զկնի հինգ ամաց, և եկն 'ի Մցխիթա. և էառ 'ի Մանկլեայ և յԵրուշէթոյ՝ զօտից Տեառն տախտակն, և զբևեռուսն՝ զտուեալսն 'ի

1 Ատրներսեհս այս խոսրովունի էր, գոլով որդի վերջնոյն Բակուրայ, յազգէ Դաչէի՝ որդւոյ Վախթանգայ. և էր 'ի մանուկ տիս՝ 'ի մեռանել հօր իւրոյ, և 'ի բռնանալ Որմզդի Պարսից արքային 'ի վերայ Վրաց, և 'ի յանձնել անդ զաթոռ աշխարհին՝ որդւոյ իւրում Խոսրով-Ափրուէսի, ըստ վերոյդրելոցս, Ատրներսեհ մերժեցաւ 'ի ժառանգութենէ արքայութեանն. բայց 'ի կոչել զնա Հերակլի առ ինքն՝ էր նա յայնժամ նախարար Կախեթոյ կամ Կուխեթոյ՝ ըստ պատմագրիս: Իշխեաց սա զամս 20, 'ի 619-639, գոլով քառասներորդ առաջներորդ 'ի գասակարգի արքայից, բայց ոչ կրէր զկոչումն արքայի, այլ միայն մթավար, որպէս գլուխ ազատաց և նախարարաց:

2 Այսինքն, Կաւատ՝ սպան զհայր իւր Խոսրով կամ Խազրէ, յամին 628, զի ոչ կամէր սա զկնի պարտութեանն 'ի Հերակլեայ՝ խոնարհել 'ի հաշտութիւն:

կոստանդիանոսէ՝ Միհրանայ թագաւորին, և տարաւ ընդ իւր, ոչ լսելով աղերսանացն Ատրներսեհի և ամենայն վրաց աշխարհին արտասուացն։

Իսկ զկնի մահուանն Բարդողոմէոսի կաթուղիկոսի՝ էառ զաթոռն Յովհաննէս, և յետ նորա Բաբէլաս, և զկնի նորա Թափոր։ Եւ զիշխանութիւնն վրաց զկնի մահուանն Ատրներսեհի՝ էառ որդի նորա Ստեփանոս [1], այր պինդ հաւատով և տօնասէր, որ կարգեաց զօր ուրբաթուն խաչի մեծ ժողովով՝ առաջի խաչին սրբոյ, և զօր հինգշաբաթուն՝ մեծացուցանել 'ի սուրբն Սիոն՝ 'ի կաթուղիկոսարանն, և զերեքշաբաթն [2] տօն Ստեփանոսի Նախավկային և ամենայն վկայիցն. և ոչ զանազանել, ասաց, զուրբաթն և զհինգշաբաթն 'ի մեծէ ուրբաթէ և 'ի մեծէ հինգշաբաթուն։

Զայնու ժամանակօք երևեցաւ Մահմէտ առաջնորդ և օրէնսդիր Սարակինոսացն և ազգին Արաբկաց, որ տիրեաց բազում՝ աշխարհաց. և քսան ամ կալեալ զիշխանութիւնն՝ սատակեցաւ։ Եւ եկաց 'ի տեղի նորա Աբուբաքր, որ մտաւ զօրութեամբ մեծաւ 'ի Պարսս, և զի նուաղեալ էր թագաւորութիւնն նոցա՝ կալաւ 'ի հնազանդութիւն. և մտեալ 'ի Բաբելոն՝ թողուլ ետ զհրապաշտութիւնն, և դարձոյց յօրէնս Սարակինոսաց։ Եւ 'ի մեռանելն նորա՝ կալաւ զիշխանութիւնն Օմառ։ Եւ պատմեցին Հերակլի՝ եթէ Սարակինոսքն կամին մտանել 'ի Շամս և 'ի Ջազիրէթ, որք են սոքա աշխարհ Միջագետաց։ Եւ ել կայսրն յերկիրն փղշտացւոց [3], և ետես անդ այր Աստուծոյ մինաւոր մի՝ որ ասէր. փախերուք 'ի փախուցելոյն Սարայի. որպէս և կոչին իսկ Սարակինոսք, որ է՝ Սարայի սպասաւորք [4]. քանզի Տէր ետ զհարաւ և զարևելս և զհիւսիս ազգի

1 Քառասներորդ երկրորդ իշխան, խոսրովունի, տիրեաց զամս 24, 'ի 639-663։

2 Վախթանգ ասէ զօր շաբաթուն։

3 Զգիտեմ վրիպակաւ արդեօք՝ թէ 'ի զանազանութենէ ձեռագիր օրինակին կամ ուղղելով զձեռագիրն ըստ Վախթանգայ՝ զՓղշտացւոցն՝ Պաղեստինացւոց թարգմանէ Բրոսէ։

4 Վախթանգ ասէ՝ Սարայի կորիւնք, յարմարեալ զկոչումն ըստ յունական ձայնին. իսկ 'ի հայումն՝ թուի ակնարկել 'ի բան Առաքելոյն առ Գաղատացիս. Գլ. Դ. 30-31։

*Նոցա. և Նոքա են աստեղք մոլորեալք՝ որ տիրեն անմոլորիցն: Եւ գտանէին գուշակմունք Նոցա 'ի գիրս փիլիսոփայիցն Հերմիտոնի [1] և Իջինտոսի, եթէ ի մեծ թուին հինգհազար ութհարիւր չորեքտասան երևէր [2] աղախնորդին յազգէն արդարութեան [3] Ոժն, և տևէ հնգիցս եւթնորդս պակաս Ն, որ են ամք երկերիւր քառասուն: Եւ շրջեցաւ թագաւորն Հերակլ, և եկն դարձեալ 'ի Քարթլ, և ասէ՝ գաղթեալ ազգին Պարսից իսմայելացւոցն [4] 'ի կողմանս հիւսիսոյ, եթէ Ահա սպառեցաւ թագաւորութիւն ձեր, և զօրացան Սարակինոսքն, ելէք եկայք առ մեզ: Եւ Նոցա թողեալ զգանձս իւրեանց յանդէտս, տարան զգիր գանձուն զկնի, և գնացին զհետ Հերակլի. և այնու գրովն գտն Ցոյնք և գտանեն զնոսա: Իսկ Ստեփանոսի Վրաց իշխանին էին երկու որդիք, Արչիլ և Միհր անուանք Նոցա, որոց ետ զամենայն ստացուածս իւր. և թաղեցին 'ի տեղիս տեղիս՝ յերեսաց իսմայելի, և փախեան յեգրիս. քանզի չոգաւ 'ի վերայ Նոցա և Քարթլայ՝ Մրուան՝ որդի Մահումադայ [5], որ կոչէր Խուլ, և կալաւ զԴուռն Դարիալայ, և աւերեաց զբնակութիւն լերինն Կովկասու: Եւ լուաւ եթէ տէրքն Քարթլայ փախեան յեգրիս, և անտի յԱփխազէթ, եկ զհետ Նոցա, և էառ զամրոցն Եգրա. և էջ 'ի վերայ բերդին Անակոփոսի, յորում կայր Տիրամօրն պատկերն անձեռագործ, զոր ոչ ոք գիտէ՝ ուստի իցէ, քանզի գտաւ Նա 'ի գլուխ լերինն Գօրին: Եւ յայնմ բերդի կային Արչիլ և Միհր [6], զկնի*

1 *Թերևս անուանին Հերմէս Տրիմեգիստոս կամ Եռամեծն:*

2 *Յօրինակին՝ էր և:*

3 *Պրոսէ կամի ընթեռնուլ յազգէն ազարուրբեան՝ իբրև յԱգարայ. այլ յայտ է՝ որչափ անհեթեթ է 'ի հայումս ազարուրբիւն փոխանակ Ագարայ:*

4 *Խառնակ է իմաստն. թուի լինել գաղթելոյ ազգին Պարսից 'ի կողմանս հիւսիսոյ՝ յերեսաց իսմայելացւոցն:*

5 *Վախթանգ ասէ որդի քեռ Մահմետի և Աբդլմելիքի, որ կալաւ զիշխանութիւնն յետ մահուան Մահմետի. իսկ զպատճառ խուլ կոչմանն Մրուանայ ասէ ոչ խուլ լինել, այլ զի ոչ յանձին առնոյր լսել բանից խորհրդակցաց իւրոց:*

6 *Քառասներորդ երրորդ թագաւորք, խոսրովունիք. կալան զիշխանութիւնն 'ի միասին, կամ ըստ այլոց նախ Միհր և յետոյ Արչիլ՝ ամս 5, 'ի 663-668:*

մահուան հօրն իւրեանց։ Եւ զօրագլուխն Ցունաց Լեւոն՝ մտեալ 'ի բերդն Սուրաղայ՝ յելսն Օսեթոյ՝ ամրանայր անդ։ Եւ ասեն ցմիմեանս հարազատքն. Եթէ աստ մնամք՝ առնուն զամուրն, և յիշատակ ոչ թողուն մեզ. և գանձն՝ զոր ժողովեցին քրիստոսապսակն Միհրան, և յԱստուծոյ իմաստնացեալն Վախթանգ՝ կորնչին անդստանելիք. և զայն ևս՝ զոր Հերակլ աստէն եթող, զորոց զգիրն եդաք ընդ երկուց թագացն զմխտեաց. արդ, Աստուծով սրտապնդեալք, բարեխօսութեամբ Պետրոսի և Պաւղոսի, և զօրութեամբ պատկերի Տիրամօրն՝ որ ընդ մեզ, ելցուք 'ի վերայ նոցա 'ի կողմանէ ծովուն. զառ 'ի թափ։ Եւ ելին երեք հազարաւ, և Տէր էարկ 'ի նոսա տագնապ սաստիկ յոյժ. և մեռան 'ի Տեառնէ ցաւօք՝ երեսուն և հինգ հազար, և սրով արանց՝ երեք հազար։ Եւ պակասեցան 'ի քրիստոնէիցն արք վաթսուն, և խոցեցաւ Միհրն։ Եւ ոմն 'ի Սարակինոսացն ասէ ցքանակն իւր. Աստուած ետ մեզ յաղթութիւն տասն, որպէս խօսեցաւ ընդ Աբրահամու և ընդ Ագարու, և ոչ ընդ սրս աստուածայինս, և ընդ տաճարս անուան նորա [1]։ Եւ յարեան անտի և նստան 'ի վերայ Եօթնակնեան գետոցն երկուց։ Եւ յանկարծակի յարեաւ գետն 'ի սաստիկ հեղեղաց, և տարաւ 'ի զօրացն Հաբաշեաց, որք կային ընդ նոսա՝ քան և երեք հազար այր, և ձիս երեսուն և հինգ հազար. և յայնմանէ կոչեցաւ գետն պատահմամբ գործոյն՝ մինն՝ Ջխենիս Ծղալ, և միւսն՝ Հաբաշիս Ծղալ։ Եւ մնացեալքն ելին ընդ ճանապարհ Գօրին, և անցին 'ի Սպեր գաւառ, և գնացին։ Եւ զերծելոյն քրիստոնէից տուեալ փառք Աստուծոյ, առաքեցին և ցուցին կայսեր՝ որ ինչ եղեն։ Եւ լուեալ նորա՝ խնդաց 'ի Տէր. և առաքեաց թագաւորն երկուց եղբարցն թուղթս քաջալերութեան։ Այլ 'ի խոցոյ անտի՝ մեռաւ Միհրն, և թաղեցաւ 'ի Մցխիթա. և դադարեաց երկիրն ամս երկոտասան։

Ցաւուրսն յայնոսիկ իշխան ոմն 'ի տանէ Դաւթի

1 Այսինքն՝ խօսեցաւ Աստուած տալ մեզ յաղթութիւն, այլ ոչ ընդդէմ սրանց աստուածայնոց և ընդդէմ տաճարաց անուան նորա ։

մարգարէի, Ադրնաս կոչեցեալ, եկն առ Արշիլն [1]. որ լեալ էր 'ի Հայս, և գերեալ որդւովքն յայլազգեացն, և զերծեալ անտի՝ խնդրէր 'ի նմանէ տեղի բնակութեան. և ետ նմա զԹւիչա և զՇղուեր և զԱտոնէ: Եկին և 'ի Տարնոյ եղբարք երեք [2], և բնակեցան մինչև ցԳաղգաղ՝ հրամանաւ Արշլին: Եւ կինն Արշլին էր դուստր Գորոմայ կիւրապաղատին, 'ի զարմից Վախթանգայ արքայի:

1 Քառասներորդ չորրորդ արքայ, խոսրովեանն, զկնի մահուան եղբօր իւրոյ իշխեաց ամս 50, 'ի 668– 718:

2 Ըստ Վախթանգայ՝ էին սոքա եղբօրորդիք Ադրնասեի:

# ԳԼՈՒԽ ԺԶ

*Սկիզբն Քաղրթական ազգին, որ և Սարակինոսք, և տիրել նոցա աշխարհին Պարսից. — Վկայական կատարումն Արչիլ Երկրորդի, արքային Վրաց. — Ասպատակութիւն Խաքանին Խազրաց 'ի Վիրս, և կատարած Շուշանայ՝ դստեր Արչիլ Երկրորդի. — Մահ որդւոյ Արչիլ Երկրորդի, և արշաւանք Բուղխաիմ Սարակինոսի 'ի Հայս և 'ի Վիրս, և վկայական մահ Սմբատայ Խոստովանողի։*

Բայց ոչ ոք կարէ զաղէտս քրիստոնէից ընդ գրով արկանել՝ զոր կրեցին 'ի Սարակինոսացն, որք առժամանակ մի և Քաղրթականք կոչեցան. զոր ասէ իսկ աստուածային Գիրք, եթէ Քաղրթայ լեզուքն արբեցին յարենէ անմեղաց։ Քանզի սկիզբն զօրանալոյ ազգին Քաղրթն եղև, որ էր իշխան սակաւ իսմայելականաց շրջաբնակաց։ Ցորոյ աւուրս իշխան ոմն Միջագետաց Սարգիս անուն՝ յափշտակէր զինչս վաճառականաց իսմայելացւոցն. և Քաղրթն ողոքանօք հայցեաց զառեալսն, և զի այլ մի արասցէ վայն. և նա ոչ լսէր նմա։ Որոյ սրտառեալ՝ ժողովէ ամբոխ յոյժ յիւրոցն, և երթեալ առնուն զիւրեանցն և զնոցայն, և ոյժ առեալ զօրացան [1]։ Եւ 'ի նոյն աւուր գտան զՄահմէտ՝ հալածեալ յիւրոցն. որ էր աշակերտեալ Արիանոսի ումեմն մոնոզոնի և Կերինթոսի աղանդոյն, որ ախտաւորաբար և մարմնաւորաբար և մարմնաւոր ցանկութեամբ դաւանէր զյարութիւնն։ Զնա յարուցեալ առ իւրեանս և արարեալ զօրագլուխ՝ կռուեցան ընդ ամենայն երկիր, 'ի լնուլ մեղացն չափոյ քրիստոնէից՝ Յունաց և Հայոց, Ասորոց և Աղուանից և Վրաց. որովք ճոխացեալ՝ առին և զՊարսից գաւազանն յիւրեանսն, որով հարկեն իսկ զազգս ամենայն։

1 Օրինակն Պրոսէի փոխանակ ոյժ առեալ զօրացանն՝ գնէ, և կոտորեցին զնոսա իսպառ։

Արդ՝ զկնի երկոտասան ամաց գնալոյ Խուլ ամիրային, եկն Ճիճնաում, որդի Մահադիայ. և արք երևելիք ընդդէմ դարձան նմա, և ոչ թողին 'ի կլարճէթ. և ոմանք 'ի նոցանէ գնացին յերկիրն Տայոց, և գտին քար մի, և շինեցին զնա ամրոց, և կոչեցին զնա կամախ: Իսկ թագաւորն Արշիլ խորհեցաւ գնալ առ բռնաւորն, թերևս դիւրութիւն առնէ քրիստոնէից, քանզի ընդհարկաւ իսկ էին նոցա: Եւ իբրև չոգաւ՝ ել ընդ առաջ նորա և մեծարեաց զնա, և գովեաց զգեղ երեսաց նորա և զվայելչութիւն հասակի նորա, և արար նմա խրախութիւն: Եւ զկնի սակաւ աւուրց՝ հարկէր զնա դառնալ 'ի դենս նոցա. և խոշորագոյնս լուաւ 'ի նմանէ պատասխանի. և հրամայեաց բռնաւորն դնել յերկաթըս: Յառաջ մատեաւ ապա իշխան մի ուրացող՝ Գարդամբէլ անուն, և ասէ ցՃիճնամ, որ և կոչէրն Ասիմ [1]. Յազգէ մեծ թագաւորաց է դա, և տէր գանձուց պատուականաց, և է ընդ ձեռամբ դորա և գանձ կայսերն Յունաց: Եւ յորժամ լուաւ զայս՝ և ուրախ եղև. և կոչեցեալ զնա յատեան՝ ասէ. Ցոյց ինձ զգանձն կայսեր և զնախնեացն քոց, և դարձիր 'ի կրօնս իմ, և զքոյն քեզ շնորհեցից, և կալ զիշխանութիւն քո, և արարից զքեզ սպասալար ամենայն Քարթլայ: Ետ պատասխանի Արշիլ, և ասէ. Յորժամ էանց ընդ երկիրս մեր Հերակլ՝ տղայ էի ես. և զգանձն զոր պահեցին՝ կայ 'ի դղեակ բերդին, ուստի դարձաւ Խուլ ամիրայն, զոր այժմ ունին Յոյնք, և յիմ ձեռն ոչ է եկեալ զոր խնդրեսդ. և զհաւատս իմ ոչ փոխեմ՝ ամենայն տիեզերաց, զի տէր Աստուած իմ՝ Քրիստոս է, Որդին Աստուծոյ կենդանւոյ: Եւ հայեցեալ 'ի նա բռնաւորն՝ ասէ. Դու հարեր զՍարակինոսս յԱփխազեթի: Արշիլն ասէ. Ես անդ էի՝ յորժամ եհար զնոսա Աստուած: Ասիմ ասաց. Աստուած եհար զմեզ: Ասէ Սուրբն. Այո, Քրիստոս Աստուած՝ յոյսն մեր, որ եկն յերկիր փրկել զմեզ, նա օգնեաց յուսացելոց իւրոց: Յայնժամ հրաման ետ

1 Յօրինակին՝ կոչէր նա Սիմ, զոր Պրոսէ ընթեռնու կոչէր Նասիմ, այլ ըստ Վախթանգայ և ըստ փոքու ստորև ուղղագիր կոչմանն՝ Ասիմ լինել ստուգի անուն բռնաւորին:

բռնաւորն 'ի վերայ պատուական թագաւորին, և ասէ. Որոյ Աստուածն մեռեալ է՝ մեռցի և դա յանուն Նորա՝ զոր ընտրեացն: Եւ հանեալ արտաքս՝ գլխատեցին զնա 'ի գոհանալն և 'ի յաղօթելն առ Աստուած. որ և փոխանակեաց զմահկանացու թագաւորութիւնն ընդ անթառամ արքայութեան երկնաւորի, զվկայիցն առեալ զպսակ՝ կայ առաջի սրբոյ Երրորդութեանն յանտրտում ուրախութիւնսն: Եւ եկեալ 'ի գիշերի Գողերձեցիքն և Տրեցիքն և այլ ազատք ընդ նոսա՝ և գողացան զմարմին Նորա, և տարեալ թաղեցին 'ի Նուակարա՝ յիւր շինեալ եկեղեցի: Եւ կին Նորա ետ պարգևս բերողաց նշխարացն, և գիւղս և աւանս՝ 'ի հանգստարանս Նորա: Եւ գտաւ [1] պատմութիւնս համառօտ՝ 'ի ժամանակս շփոթմանն, և եդաւ 'ի գիրքս՝ որ կոչի Քարթլիս Ցխօրէպա, որ է՝ Պատմութիւն Քարթլայ. և եգիտ զսա Ջուանշեր, գրեալ մինչև ցՎախթանգ թագաւոր, և մինչև ցայսվայր ինքն յաւել Ջուանշեր, և զգալոցն՝ յանձնեաց տեսողացն և պատահելոցն 'ի ժամանակին:

Արդ՝ վկայն Քրիստոսի Արչիլն եթող երկուս որդիս՝ զՋուանշեր և զԻւանէ [2], և դստերք չորք, որոց անուանքն՝ Գորանդուխտ, Մարիամ, Միհրանդուխտ և Շուշան: Զայս Շուշանայ լուաւ արքայն Խազրաց՝ եթէ գեղեցիկ է, առաքեաց խնդրեաց իւր 'ի կնութիւն. և խոստանայր թափել զերկիրն Նորա 'ի ձեռացն Քաղըրթաց: Եւ ոչ կամեցան տալ զգառն՝ գազանին՝ մայրն և եղբարքն: Եւ զկնի երից ամաց արձակեաց Խաքանն զԲուլջան սպասալարն իւր ծանր զօրու՝ ընդ ճանապարհն Լեկեթոյ. որ և եկն և անցաւ 'ի Կախէթ, և պատեաց զբերդն՝ ուր կայր Ջուանշեր և Շուշան: Եւ զկնի սակաւուց էառ և զՏփխիս և զամենայն երկիրն Քարթլայ, և գնաց [3]: Եւ սուրբն Շուշան ասէ ցեղբայ-

1 Պրոսէ զգտաւն ընարէ ընթեռնուլ գրեցաւ, անհամաձայն և ընդ Վախթանգայ:

2 Քառասներորդ հինգերորդ արքայութիւն, խոսրովեանք, կացին յիշխանութեանն ամս 69, 'ի 718–787:

3 Այս վերջին նախադասութիւն պակասի 'ի թարգմանութեանն Պրոսէի:

րըն. Մեռայց կուսութեամբ մարմնոյս և հաւատոյս, և մի՛ գազանակուր եղէց: Եւ հանեալ զմատանին՝ 'ի բաց էառ զակն պատուական. և կայր 'ի ներքոյ նորա դեղ մահու. ընկէց զնա 'ի բերան իւր, և մեռաւ անարատ առաջի Տեառն [1]. և թաղեաց զնա եղբայրն իւր: Եւ իբրև դարձաւ Բուղջան առ խաքանն և պատմեաց վասն կուսին, բարկացաւ յոյժ՝ զի ոչ պահեաց զնա զգուշութեամբ, և ոչ տարաւ գոնեա զդի նորա առ նա. և ագոյց խառան 'ի պարանոցն, և երկուց հեծելոց հրամայեաց առ միմեանս ձգել, մինչև հատաւ գլուխն չար, ապականիչն սուրբ եկեղեցւոյ: Եւ զկնի եօթն ամի արձակեցաւ Ջուանշեր պարգևօք, և եկն յերկիր իւր. և եգիտ զՍարակինոսսն 'ի Տփխիս և 'ի բազում տեղիս բանակ հարեալ. և ինքն հնազանդեալ՝ հարկեցաւ նոցա, առեալ կին՝ զդուստր Ատրներսեհի Բագրատունւոյ, որ կոչէր Լատորի:

Զկնի ժամանակաց եկն Խոսրոյդուխ, որ ոստիկան էր Հայոց, և շինեաց զՏփխիս՝ զաւերեալն խազրաց: իսկ Լէոն ոմն՝ որդի դստեր թագաւորին խազրաց, թագ եդեալ՝ ունէր զԱփխազէթ և զեգրիս, մինչև ցԼիխս: Եւ մեռան որդիքն Արչլին՝ Իւանէ և Ջուանշեր. և կալաւ զտեղի նորա կիւրապաղատն Աշոտ [2]. և մեծարեաց զնա կայսրն, զի տկարացան Հագարացիքն: իսկ զկնի մահուանն Լէոնի՝ կալաւ զտեղի նորա Թէոդոս որդի նորա: Զկնի աւուրց եկն Խալիլ ամիրայն, և սպան զԱշոտ, և ինքն սպանաւ 'ի Ջաւախեթի: Զկնի երկերիւր ինն և տասն ամաց՝ առաջին Մահմետի, եկն Բուղայն, և վշտացոյց զերկիրն Հայոց. և հասեալ 'ի Տփխիս՝ սպան զՍահակ ամիրայն [3], զի ոչ հնազանդէր նմա. և եր-

1 Եթէ ոչ առանձինն իմն և գաղտնի ազդեցութիւն համարեցիմք լեալ 'ի Տեառնէ առ Շուշան՝ վասն դեղառութեանն, յորմէ և մահու անձինն, կարծեմ դժուարին լիցի արդարացուցանել զայն՝ ըստ քրիստոնէական ուղղութեանց. վասն որոյ և զՇուշանն զայս, զոր սրբուհի կոչմամբ պատուէ մատենագիրն, կարգելի իցէ անշուշտ 'ի շարս կարի յոյժ սակաւուցն այնոցիկ 'ի սրբոց, որոց նմանօրինակ եղեն կատարած կենաց:

2 Քառասներորդ վեցերորդ իշխան, կիւրապաղատ բագրատունի, եկաց 'ի վարչութեանն ամս 39, 'ի 787-826:

3 Սահակս այս՝ որդի Իսմայելի կոչեցեալ 'ի Վախթանգայ՝

թեալ 'ի Մթելէթ՝ էառ 'ի նոցանէ պատանդս երկհարիւր. և կամեցաւ մտանել յՕսէթ. և կալաւ զնա ձիւն սաստիկ, և կորեան բազումք. բայց ոչ ինչ գրեին զվնասն 'ի բազմութենէն՝ որ մնացեալն լինէր՝ իբրև հարիւր և քսան հազարաց: Դարձաւ նա 'ի Բաղտատ [1] ձմերել անդ. և 'ի գալ գարնայնոյն՝ եկն 'ի Դարբանդ, և բացեալ զԴուռն՝ եհան անտի երկրհարիւր տուն, և բնակեցոյց 'ի Շամքոր՝ Խազրեցիս. և եհան 'ի Դարիալայ հարիւր Օսս, և բնակեցոյց 'ի Դմանիս:

Ցայնմ ժամանակի Գիորգի թագաւորն Ափխազաց և Դեմետրէ փեսայ [2] Լևոնի՝ ելին և կալան զՔարթլ. էառ և Լիպարիտ զԹռեղս, և շինեաց զԿլտէկարս, և ժառանգեցոյց զԴաւիթ՝ [3] որդի Բագրատայ, 'ի ժամանակս Սմբատայ՝ Հայոց արքայի տիեզերակալի [4], որ մարտ եդեալ ընդ կոստանդեայ՝ թագաւորին Ափխազաց՝ էառ զՔարթլ և զՈւփլիսցխէ. և դարձեալ հաշտեալ՝ խնամիք եղեն, և դարձոյց անդրէն: Ցաւուրսն յայնոսիկ եկն Բուղկասիմ զօրապետն Սարակինոսաց՝ 'ի Հայս, և ապա 'ի Տփխիս, և անդի յՈւջարմոյ բերդն, և էառ զնա: Եւ կոյրիկէ քորեպիսկոպոսն եկն առ նա, և սիրեցաւ 'ի նմանէ, և դարձաւ անդէն 'ի Դուին: Եւ Սմբատ արքայն Հայոց խոյս ետ 'ի նմանէ, և եկն շրջէր 'ի լերինս Ափխազեթայ. իսկ բռնաւորն սպասէր նմա, քանզի պերճացեալ էր յաղթութեամբն Վրաց. քանզի

կացեալ էր ամիրայ Տփղեաց զկնի Ալիի՝ որդւոյ Շուաբայ՝ կարգեալ 'ի Խալիլ ամիրայէ, որ յերրորդում անգ նուագի արշաւանացն՝ յաւուրս Սահակայ ամիրայի՝ սպանաւ 'ի Ջաւախէթ: Մոհմէտ որդի Նորին 'ի գալ Բուղայ 'ի Վիրս՝ միաբանեցաւ ընդ Բագրատայ՝ որդւոյ Աշոտոյ կիւրապաղատի, որ և ընկալաւ 'ի Մոհմետայ զիշխանութիւն Վրաց աշխարհին, և եկաց քառասներորդ եօթներորդ 'ի կարգի իշխողացն, կիւրապաղատ կոչմամբ, և տևեաց 'ի վարչութեանն զամս 50, 'ի 826-876:

1 Վախթանգ և Ասողիկ փոխանակ Բաղտատայ՝ ունին Բարտաւ, որ է Պարտաւ:

2 Դեմետրէ ոչ էր փեսայ, այլ որդի Լևոնի Երկրորդի արքային Ափխազաց և եղբայր Գիորգեայ և Թէոդոսի:

3 Քառասներորդ ութերորդ արքայ, բագրատունի, իշխեաց 5 ամ, 'ի 876-881: Ցետ սորա իշխեաց որդի իւր Ադրնասէ, քառասներորդ իններորդ արքայ, զամս 42, 'ի 881-923:

4 Պատմիչս շփոթէ սատանօր զԽոստովանողն Սմբատ ընդ Տիեզերակալին:

առեալ էր զամենայն Քարթլ, և յոլով բերդս, զԹմօք և զԽուխլա, յորում եսպան զգեղեցիկ և զքաջ մանուկն Գօրուն՝ վասն Քրիստոսի, զի ոչ ուրացաւ զնա. զորոյ վկայութիւնն գրեաց սուրբ հայրն մեր Ստեփանոս։ Վկայեաց և սուրբ Թագաւորն Սմբատ՝ 'ի նոյն բռնաւորէն՝ 'ի Դուին քաղաքի. բոլոր տարի մի չարչարեալ, և ապա խեղդամահ սպանին և կախեցին զփայտէ, զի մահակից և խաչակից լիցի Քրիստոսի։

---

# ԳԼՈՒԽ ԺԷ

*Թագաւորել Գէորգեայ 'ի վերայ Ափխազաց և յաղագս գործոց և պայազատաց նորին. — Յաղագս թագաւորութեանն Բագրատայ՝ որդւոյ Գուրգենայ. — Պատերազմ Գէորգեայ՝ որդւոյ Բագրատայ ընդ Վասլի կայսեր, և յաղագս Պետրոսի Գետադարձի. — Յաղագս թագաւորութեանն Բագրատայ՝ որդւոյ Գէորգեայ, և մահուանն Լիպարիտի, և որ ինչ անցք անցին յաւուրս նորա. — Արշաւանք Արփասլանայ 'ի Հայս և 'ի Վիրս, և Բագրատայ պատերազմ ընդ փադլուն ամիրայի. — Թագաւորել Գէորգեայ՝ որդւոյ Բագրատայ, և հատուածել դաշն խաղաղութեան ընդ Մէլիք Շահի:*

Յայնմ ժամանակի մեռաւ թագաւորն Ափխազաց Կոստանդին՝ թողեալ երկուս որդիս՝ զԳորգի և զԲագարատ, որ կռուէին 'ի վերայ թագաւորութեան՝ մինչև մեռաւ Բագարատ: Եւ թագաւորեաց Գէորգի, այր բարի և շինող եկեղեցեաց: Մեռաւ քորեպիսկոպոսն Կյուրիկէ, և էառ զտեղի նորա փառլ՝ որդի նորա, որ շինեաց զբերդն Լոռեան: Յաւուրսն Գէորգայ՝ եկն Սաջոր ամիրայն, և այրեաց զՄցխեթա, և գերեաց զխաչն Նունեայ՝ կոտորատեալ. և եղև 'ի նոսա ախտ սեմբորի[1], և գիտացին թէ 'ի խաչէն է պատուհասն. և ժողովեալ զհատեալ մասունսն և լցին յամանս, և կանգնեցին 'ի տեղւոջ իւրում: Եւ թագաւորն Ափխազաց ետ զՔարթլ՝ կոստանդնի[2] որդւոյ իւրոյ. որ և զկնի երից

1 Այսպէս յօրինակին. թերևս ախտս իմն փորի, զի և Գրոսէ ունի dysenterie, որ է ախտ թանչաց:

2 Յօրինակին Կիւրիկէի, որ է վրիպակ. ուղղեցաւ ըստ Վախթանգայ: — Այսուհետ ըստ խառնակութեան պատմութեան Վրաց՝ ոչ սակաւ շփոթութիւն և կարգի թագաւորաց նոցա տեսանի. քանզի զկնի անզօր իշխանութեան Ադրնասէ Բ., որքայն Ափխազաց Գէորգի՝ կարգէ զորդի իւր զԿոստանդին թագաւոր 'ի Վիրս, յորմէ և անդր խառնաշփոթ յաջորդութեամբ ձգի մինչև ցԲագրատ Գ. և ահա յայսմ միջոց ժամանակի երեք իշխանք մեծարին 'ի ժամանակագրաց արքայական կոչմամբ, որք են Դաւիթ-Կիւրապաղատ

ամաց ապստամբեալ՝ մտաւ յՈւփլիսցիխէ. որ և խաբէութեամբ հանեալ արտաքս՝ սպանին։ Եւ զփառլ փոխեաց կիւրիկէ քորեպիսկոպոսն, և զԳորգի թագաւորն՝ Լեւոն որդի իւր։ Ցայնմ ժամանակի իշխանիկն էր թագաւոր 'ի կողմանս Հերեթոյ, և ունէր նա հերձուած [1], և մայր իւր դարձոյց յուղղափառութիւն։ Զկնի Լեւոնի թագաւորեաց Դեմետրէ որդի [2] նորա։ Եւ եկն եղբայր նորա Թէոդոս 'ի Հռոմայ, և վիճէին վասն հայրենեացն. և ապա հաշտեալ՝ երդուան միմեանց։ Եւ ստեաց Դեմետրէ, և խարեաց զաչքն եղբօրն. բայց զկնի մահուան նորա զԹէոդոս եդին յաթոռն։

Եւ Դաւիթ կիւրապաղատն՝ թագաւոր Տայոց՝ մնուցանէր զմանուկն Բագրատ՝ [3] զորդին Գուրգենայ. և խնդրեցին զնա թագաւոր Ափխազեթոյ։ Եւ Ռատն [4] էր 'ի կարս, և ունէր զբերդն Ատենոյ և զհարաւակողմն կուր գետոյ. սա ոչ հնազանդէր Բագրատայ. և Գուրգէն հայր նորա եկն առ որդին, և կամեցան գնալ 'ի վերայ Ռատին։ Եւ քսեցին առ Դաւիթ կիւրապաղատն՝ եթէ զգլուխ քո խնդրեն. և հաւատաց բանիցն, և ձեռնատուութեամբ Հայոց՝ փախոյց զզօրսն։ Եւ Բագրատ գնաց միայն, և անկաւ յոտս նորա, և երդուաւ՝

և Սմբատ—Կիւրապաղատ որդիք Ադրնասեայ Բ, և Բագրատ—Դաւիթ՝ կոչեցեալն Անմիա. յերեցունցս յայսցանէ զառաջնոյն զանունն եթէ և զմահն ծանուցանեն ժամանակագիրք՝ առանց յայտնելոյ թէ թագաւորեա՞լ իցէ եթէ ոչ. վասն որոյ և մեր զանց զնովաւ արարեալ՝ զՍմբատ—Կիւրապաղատ՝ ըստ Վախուշտի կարգեմք յիններորդ 'ի շարս արքայից և զԲագրատ—Անմիա՝ զվերջինն 'ի բուն Բագրատունեաց՝ յիններորդ առաջներորդ. քանզի Սմբատ՝ որդի վերջնոյս այսր Բագրատայ՝ մեռաւ անորդի, յետ երկուց ամաց մեռանելոյ հօրն. որով մինչև ցԲագրատ Գ, որդի Գուրգենայ՝ անդրանկանն Բագրատ—Անմիայ, իշխեցին 'ի վերայ Վրաց՝ թագաւորք 'ի տոհմէ Բագրատունի արքայից Ափխազաց, յորոց առաջինն՝ Կոստանդին, որդի Գէորգեայ Ափխազաց արքայի, որ իշխեաց զամս երիս, 'ի 923—926։

1 Այն է՝ զի միաբանեալ ընդ Հայոց՝ հակառակէր ժողովոյն Քաղկեդոնի։

2 Ըստ Վախթանգայ՝ եղբայր նորա։

3 Յիններորդ երկրորդ արքայ, բագրատունի, իշխեաց ամս 34, 'ի 980—1014։

4 Ռատս այս թուի լինել 'ի սերընդոց անտի Լիպարիտի, զորմէ բանք եղեն 'ի պատմչէս 'ի վերջնոյս ԺԶ գլխակարգի գրոցս։

եթէ 'ի վերայ Ռատին երթայաք. և այնմ ևս հաւատաց, և արձակեաց զնա հաշտութեամբ։ Եւ գնաց 'ի յԱփխազէթ. և 'ի ձմերային յեղանակին դարձաւ 'ի վերայ կլտէկարուց՝ հնազանդել զՌատն. և ել ընդառաջ նորա (Ռատ), առեալ ընդ իւր զորդի իւր՝ զԼիպարիտն. և յանձնեաց (զկլտէկարս) նմա, և ինքն նստաւ 'ի հայրենիս իւր յԱրգուէթ։ Յայնմ ժամանակի զօրացաւ Փատլուն՝ ամիրայն Գանձակայ, և հարկանէր զիշխանսն կախեթոյ և Հերեթոյ[1]։ Եւ առաքեաց Բագրատ՝ թագաւոր Ափխազաց, առ Գագիկ՝ թագաւորն Հայոց՝ երթալ ընդ նմա 'ի վերայ Փատլայ ամիրային։ Եւ չոքան երկոքեան 'ի Գանձակ, և արարեալ ընդ հարկաւ՝ դարձան աւարաւ։ Եւ յաջողեցաւ թագաւորութիւնն Բագարատայ, և շինեաց վանորայս և եկեղեցիս՝ ամս երեսուն և վեց. և վախճանեցաւ 'ի թուին Վրաց երկու հարիւր երեսուն և հինգ։

Եւ թագաւորեաց որդի նորա Գէորգի՝[2] ամաց վեշտասանից։ Ի հինգերորդ ամի թագաւորութեան նորա՝ եկն Վասիլ կայսրն. և ընդդէմ գնաց նորա 'ի գաւառն Բասենոյ. և իբրև ետես եթէ բազումք են՝ դարձաւ անդրէն. և Վասիլն գնաց զհետ նորա, և այրեաց ըզքաղաքն Ուխտեաց. և դարձաւ Գէորգի և կռուեցան. և անկան յերկուց կողմանց բազումք 'ի տեղւոջն՝ որ կոչի Շիրիմք. և սպանին զՌատն՝ որդի Լիպարտի, և զխուրսխ։ Բայց մեծ քաջութիւն եցոյց Գէորգի, և դարձոյց զՎասիլն. այլ հպարտացեալ Վրաց սակաւ յաղթութեամբն՝ հետամուտ լինէին, և մաշէին 'ի սուր սուսերին Յունաց։ Եւ երկիցս և երիցս դրդռեցին պատերազմն Վիրք, և կորեան և կործանեցան, և երկիրն

1 Զկախէթ և զՀերէթ ամօք ինչ յառաջ ասպատակօք հանեալ Բագրատայ՝ որդւոյ Գուրգենայ, զմին 'ի ձեռաց Դաւթի՝ որդւոյ Կյուրիկէ Բ՛, և զմիւսն 'ի ձեռաց Կյուրիկէի, կարգեալ էր 'ի նոսին մթավարս կամ նախարարս, յորոց երբեք երբեք Ճոխանայր Փատլուն կամ Մամլան ամիրայն՝ յաւարի և յաւերի դնելով զաշխարհսն զայնոսիկ։ Այս պատերազմն ընդ մերս Գագիկ և ընդ Փատլուն կամ Մամլան ամիրայ՝ յիշատակի և առ պատմիչս մեր, բայց ոչ նոյնպէս և նիզակակցութիւնն Բագրատայ։

2 Յիններորդ երրորդ արքայ, Բագրատունի, իշխեաց զամս 13, 'ի 1014 — 1027։

նոցա աւերեցաւ. քանզի եդեալ զխաչն կենսատու առաջի՝ որքասէր Վասիլն՝ Եթէ տաս ինձ, ասէ, կորանալ առաջի թշնամեաց իմոց՝ ոչ ծառայեցից քեզ պատճառ փրկութեան մերոյ և նշան յաղթութեան։ Վասն որոյ յաղթահարեալ Գէորգի, և յամենայն կողմանց տարակուսեալ՝ ետ պատանդ զորդի իւր զԲագարատ՝ ամաց երից, և խոստացաւ ծառայել նմա։ Եւ գնաց Վասիլն 'ի Տրապիզոն. և կոչեցեալ առ ինքն զմեծ կաթուղիկոսն Հայոց զՊետրոս՝ 'ի տօնի յայտնութեանն, և օրհնեաց զջուրն առաջի նորա. և ետես կայսրն մեծ սքանչելիս 'ի վերայ ջրոյն, և գովեաց զհաւատս Հայոց, և գնաց 'ի Կոստանդնուպօլիս[1]։ Եւ զկնի երից ամաց՝ արձակեաց զտղայն Բագարատ առ հայրն իւր։ Եւ զկնի երկուց ամաց գալստեան որդւոյն՝ մեռաւ Գէորգի, թողլով երկուս որդիս՝ զԲագրատ և զԴեմետրէ, և երկուս դստերս։

Եւ էառ զթագաւորութիւնն Բագրատ[2]. և չոքաւ մայրն նորա Մարիամ[3] 'ի Կոստանդնուպօլիս, և եբեր թուղթ դաշանց խաղաղութեան և պատիւ կիւրապաղատութեան՝ որդւոյ իւրոյ. և կին նմա էած յազգէ թագաւորացն Յունաց՝ Հեղինէ անուն. և պատկեցաւ նովաւ Բագրատ, և էառ միւս ևս կին՝ զԲորենա, դուստր թագաւորին Օսեթոյ[4]։ Եւ եղբայր նորա Դեմետրէ համահայր և ոչ համամայր, խորհեցաւ 'ի ձեռն իշխանաց ոմանց թագաւորել. և իբրև ոչ յաջողեցաւ՝ ել և գնաց 'ի Կոստանդնուպօլիս, ընդ իւր տարեալ զերկիրն Անակոփիոյ, որ և մնաց առ նոսա մինչև ցայսօր ժամանակի. և տիրեաց Բագրատ ամենայն հայրենեաց

1 Այս անցք Պետրոս Կաթուղիկոսի չիք 'ի պատմութեան Վախթանգայ, և աստանօր թուի 'ի հայ թարգմանչէն յաւելեալ։

2 Յիսներորդ չորրորդ արքայ, բագրատունի, իշխեաց ամս 45, 'ի 1027 — 1072։

3 Մարիամս այս էր 'ի տոհմէն Արծրունեաց, դուստր Սենեքերիմայ՝ վերջնոյն թագաւորաց Վասպուրականի, և թոռն Գագկայ Ա. որպէս յիշի և յարձանագրին Մարմաշինու, յորում նուիրէ Մարիամ զՏարուս գիւղ առ ուխտ եկեղեցւոյն. ( Տեղագր. Շիրակայ, էջ 149 )։

4 Այսինքն՝ յետ մահուան Հեղենեայ, որ եղև 'ի Քութայիս, որպէս պատմէ Վախթանգ։

իւրոյ։ Եւ Լիպարիտ և Իւանէ զօրագլուխք՝ նպաստ լինէին թագաւորութեանն։ Սոքա խարկանօք առին զՏըփխիս 'ի Ջափար ամիրայէն, և դարձեալ խղճացին և թողին 'ի Ջափար. բայց նա ոչ պահեաց զհնազանդութիւն թագաւորին Ափխազաց։ Եւ եկն թագաւորն նստաւ 'ի վերայ Տփխեաց. նոյնպէս և թագաւորն կախեթոյ՝ Գագիկ, որդին Հայոց արքայի։ Եւ սովեցաւ քաղաքն, մինչև եղև լիտր մի միս իշոյ՝ հինգ հարիւր դրամ։ Եւ առին զՏփխիս, և անդրէն յամիրայն թողին, մինչև մեռաւ Ջափարն. և ապա եմուտ 'ի Տըփխիս թագաւորն Բագրատ, և էառ զամրոց բերդին։ Սա շինեաց զպարիսպն Ախալքաղաքի. և զի մայր նորա Մարիամ՝ դուստր էր Սենեքերիմայ Հայոց արքայի, ետուն զքաղաքն Անի՝ բնակիչք նորա՝ 'ի թագուհին Մարիամ։ Իսկ Լիպարիտն մեծ՝ խորհրդակցութեամբ այլոց ազատաց, կոչեաց զԴեմետրէ 'ի Յունաց՝ թագաւորեցուցանել զնա. և ոչ յաջողեցաւ. այլ անդրէն դարձաւ զօրքն Հոռոմոց, որք էին ընդ նմա։ Եւ վասիլն հնազանդեցաւ թագաւորին Բագրատայ՝ ինն բերդաւ[1], և մեծացաւ Բագրատ յոյժ։ Սա ետ զթագաւորութիւն արքայութեան իւրոյ 'ի Գորգի՝ յորդին իւր. և չոգաւ 'ի Կոստանդնուպօլիս առ Մոնոմախ կայսրն. և էր մեծարոյ առաջի նորա։ Եւ յետ երից ամաց դարձոյց զնա կայսրն յերկիր իւր, աղաչեցեալ զնա Գորանդուխտ քոյրն Բագրատայ։ Եւ ընդ առաջ եղեն նմա ամենայն մեծամեծք, և արարին ուրախութիւն մեծ։ Բայց կիւրապաղատն Լիպարիտ ունէր լիով զվերին աշխարհն, և ոչ էր հաճեալ ընդ թագաւորութիւնն Բագրատայ, թէ և սնուցեալ էր զորդի նորա և թագաւորեցուցեալ. վասն որոյ դարան գործեալ նմա՝ կալաւ իշխանն Սուլա[2], հանդերձ որդւովն Իւանէիւ, և տարաւ առաջի Բագրատայ. ընդ որ մեծապէս խնդա֊

1 Վախթանգ ունի այսպէս. «Յետ այսորիկ վերստին զօրացաւ Բագրատ. և ելք բախտին աջողեցին նմա, զի Վեստն միացաւ ընդ նմա ինն բերդովք Անւոյ, բաց յԱնբերդէն»։

2 Մթին է իմաստ բանիցն. կամիցի ասել անշուշտ՝ զի իշխանին Սուլայ, որ էր նախարար Կալմախու, դարան գործեալ՝ կալաւ զԼիպարիտ և զորդի նորա զԻւանէ։

ցեալ՝ ետ Սուլայի զՑիխիսջուար և զՕձրխէ և պարգևս բազումս։ Զարչարեալ զԼիպարիտն՝ առին զամրոցսն. և ագուցին նմա հանդերձ կրօնաւորի, և առաքեցին առ կայսր. որ և զկնի սակաւ ինչ ամաց՝ մեռաւ անդէն. և զդի նորա բարձեալ բերին ծառայքն, և թաղեցին զնա 'ի կացխէ՝ 'ի գերեզման հարց իւրոց. և զիւանէ որդի նորա՝ արարին տէր Արգուեթոյ միայն։

Ցայնմ ժամանակի զօրանայր ոմն 'ի Թուրքաստանէ և սուլտանանայր, Դուղլուբաք անուն, 'ի նուաղելն Սարակինոսաց. և տիրէր ազգաց և գաւառաց բազմաց։ Եւ զնա փոխէր որդի նորա Արփասլան. և գայր առնոյր զամենայն տունն Քարթլայ, կոտորէր և գերէր. և խաղացեալ գնայր 'ի մայրաքաղաքն Հայոց 'ի յԱնի, և առնոյր զնա, և լնոյր արեամբ կոտորելոցն։ Եւ այլ ևս ապառնայր Վրաց աշխարհին, եթէ ոչ տացէ նմա Բագարատ՝ զդուստր քեռ իւրոյ 'ի կնութիւն. որ էր նա դուստր եղբօր կիւրիկէի [1] Հայոց արքայի. յորմէ խնդրէր Բագարատ աղաչանօք, և ոչ տայր զնա կիւրիկէ. մինչ գործեցին նմա որոգայթ Վարազբակուր և Գամրիկէլ զօրագլուխքն Վրաց, և լմբռնեցին զնա յանտառին Քուիշոյ. և ած արարին Բագրատայ. և գնաց առ նա, և էառ զաղջիկն և զՇամշոյտէ 'ի ձեռաց նորա, և ապա արձակեաց։ Իսկ Սուլտանն զկնի երից ամաց դարձաւ 'ի վերայ Վրաց, և ելից արեամբ զերկիրն։ Եւ առեալ զՏփխիս՝ ետ 'ի յամիրայն Գանձակայ 'ի փատլուն։ Եւ Ասխարթան՝ որդի Գագկայ, թագաւորին կախեթոյ՝ եկն առ նա, և շրջէր ընդ նմա՝ մինչև գնաց Սուլտանն։ Զկնի այնորիկ կամեցաւ թագաւորն Բագրատ գնալ 'ի վերայ Տփխեաց. և լուաւ փատլուն, և եկն 'ի վերայ նորա։ Եւ առաքեաց զիւանէ որդի Լիպարտին՝ ամենայն զօրօքն Վրաց՝ ընդ առաջ նորա, և հարին զզօրսն ամենայն, մինչ երկոտասան արամբ միայն փախեաւ մազապուր՝ ընդ ճանապարհըն Ծիլկանայ. և գնաց և պատեաց առ գետեզերբն Արգագայ. և ասէր դիպելոցն՝ եթէ Հրեշտակ աւետեաց եմ փատլնոյ, զի հարան զօրքն Ափխազաց։ Եւ ոմն

1 Գրոսէ Թարգմանէ. Դուստր արքային Հայոց՝ կիւրիկէի։

ծանուցեալ զնա՝ ասէ. Դու խև ես ամիրայն ամիրայց փատլուն: Եւ գոչեաց ձայնիւ մեծաւ, և հնչեաց երկիրն, և ձայն տուեալ միմեանց՝ ըմբռնեցին զնա բնակիչք գաւառին, և տարան առ Բագրատ. և էառ 'ի նմանէ զՏփխիս և զԳագ և զՔօզլինն՝ զոր առեալ էին Պարսք 'ի Հայոց և 'ի Վրաց, և դահեկանս ութհարիւր քառասուն և ութ, և զորդի նորա պատանդ, և արձակեաց զնա:

Յետ այնորիկ մեռաւ Բագրատ բարի անուամբ. և էառ զթագաւորութիւնն որդի նորա Գէորգի կիւրապաղատն [1], որ իշխէր ընդ հօրն 'ի կենդանութեան նորա: Եւ ապստամբեաց 'ի նմանէ իւանէ՝ որդին Լիպարտի. և յինքն յանկուցեալ զպահապանս դղեկին Գագայ՝ վաճառեաց զնա դարձեալ տեառն Գանձակայ: Յաւուրսն յայնոսիկ գայ Մէլիք Շահ Սուլտանն, և առնու զՇամշոյտէ, և աւար հարկանէ զտունն Քարթլայ, և դառնայ 'ի Գանձակ. և թողեալ անդ ամիրայ զԱրահանգն՝ չոքաւ 'ի տեղի իւր: Զկնի աւուրց եկն Արահանգն 'ի վերայ Գէորգայ, և յաղթահարեալ՝ գնաց փախըստական 'ի Գանձակ: Եւ էառ Գէորգ 'ի Յունաց զամենայն բերդսն՝ զոր առեալ էր նոցա, զԱնակոփի՝ 'ի գլուխն Ափխազեթոյ, և յերկիրն կլարճէթոյ և 'ի Շաւշէթոյ և 'ի Ջաւախեթոյ և յԱրտահանայ՝ յոլով ամրոցըս, և զկարս և զվանանդ, նոյնպէս և զՇամշոյտէ 'ի Թուրքաց: Իբրև լուաւ զայս Մէլիք Շահ Սուլտանն՝ եկն և անդրէն էառ զՇամշոյտէ, և գերեաց զվիրս և զիւանէ իշխան, և չոգաւ: Յաւուրսն յայնոսիկ՝ մինչև էր Գէորգի 'ի բանակս, եկն առ նա Գրիգոր՝ որդին Բակուրանայ, տէրն Ուխտեաց և կարուց և կարնու քաղաքի, և խնդրեաց 'ի նմանէ զկարս, և եթող նմա լինել զիրսըն [2]: Յաւուրսն յայնոսիկ ասպատակեցին Թուրքք յերկիրն Վրաց, և բազում արիւնս հեղին, և զյոլովս գե-

1 Յիսներորդ հինգերորդ արքայ, բագրատունի. իշխեաց ամս 17, 'ի 1072 — 1089:

2 Կարծեմ Պրոսէի ոչ քաջիկ 'ի վերայ հասեալ մտաց վերջին բանիցս՝ թարգմանէ, Il lui remit la direction de ses affaires, այս ինքն է, Եթող 'ի նա՝ խնամ ունել զիւրայոցն. մինչդեռ թուի ինձ եթէ ասել կամիցի թողեալ Գէորգեայ զկարս քաղաք լինել Գրիգորի. ըստ խնդրոյ նորա. և կամ եթէ զվերջին բառն զիրսն ընթեռնու-

րեցին և գնացին. որոց գլխաւորին անուն Բուժղուբ կոչէին: Զի կատարեցաւ բանն Եսայեայ՝ որ վայ տայ ազգի մեղաւորի և լցելոյ մեղօք, զի յոտից մինչև ցգլուխ ոչ գոյր 'ի մեզ ողջութիւն: Զայս ամենայն կրեալ և տեսեալ թագաւորն Գէորգի՝ զի ոչ ուստեք գոյր ակնկալութիւն փրկութեան, ետ զօգի իւր 'ի ձեռին իւրում, և չոգաւ առ Սուլտանն Մէլիք Շահ. և եգիտ շնորհըս առաջի նորա, և պարգևօք անդրէն դարձաւ և դաշամբ խաղաղութեան, միայն զի հնազանդութեամբ հարկի հօգ տարցի և մի երկիցէ: Սակայն զի չարութիւնք մեր 'ի մեզ էին, 'ի Զատկի տօնին ոչ եառ մեզ ցնծալ յարութեամբն Քրիստոսի՝ մեղքն մեր բազմացեալ. քանզի հայեցաւ Տէր յերկիր բարկութեամբ, և դողացոյց զսա 'ի հիմանց. զի լերինք վիմեղէնք իբրև ըղփոշի հեղան, քաղաքք և գիւղք և եկեղեցիք տապալեցան, և դարձաւ տօնն մեր 'ի սուգ՝ ըստ գրեցելումն:

ցումը զիւրսն, իմացեալ լինի խնդրեալ Գրիգորի զԿարս քաղաք միայն զայլ ամենայն տեղիս իշխանութեան իւրոյ փոխանակաւ Գեորգեայ տալեալ: Իսկ Վախթանգ ասէ. «Տուեալ Գրիգորի առ Թագաւորն (Գէորգի) զքաղաքամուրն Կարս շրջակայովքն հանդերձ՝ ողջունեալք մեկնեցան յիրերաց. և եթող Թագաւորն 'ի Կարս ազնուորս Տաշքեթոյ և դարձաւ յերկիր իւր»:

# ԳԼՈՒԽ ԺԸ

*Թագաւորել Դաւթի՝ որդւոյ Գէորգեայ. — Գալուստ Խաչակրաց յԱրեւելս, եւ բարեկարգել Դաւթի զեկեղեցիս Վրաց. — Նուաճէ Դաւիթ զապստամբութիւն Թուրքաց, եւ խնամեցեալ ընդ Յոյնս եւ ընդ Հոնս՝ ընկճէ եւ զՕսս. — Այլ եւս արութիւնք նորա ընդդէմ Պարսից եւ Թուրքաց. — Պատերազմն Դաւթի ընդդէմ թագաւորին Աղուանից եւ Սուլտանին Միջագետաց, եւ տիրել բերդաց ինչ Հայոց եւ քաղաքին Անւոյ. — Ուղղութիւնք Դաւթի եւ փոյթ կալեալ նորա միաբանելոյ զՀայս եւ զՎիրս. — Մեծարէ Դաւիթ զՍարկաւագ վարդապետ եւ օրհնի 'ի նմանէ, եւ հիւանդացեալ՝ փոխի յաւիտեանս:*

Բայց ոչ իսպառ բարկացաւ Տէր, եւ ոչ յաւիտեան պահեաց ոխս. այլ գթացաւ իբրեւ հայր յորդիս, եւ ետ մեզ զաւակ, զի մի լիցուք իբրեւ զՍոդոմ եւ զԳոմոր, եւ յարոյց մեզ զեղջիւր փրկութեան 'ի տանէ Դաւթի, զԴաւիթ՝[1] զորդի Գէորգեայ, միածին, 'ի նոյն իսկ յազգէ աստուածահօրն Դաւթի, 'ի բագրատունի տանէ. զոր հայրն իւր Գէորգի պսակեաց 'ի ծերութեան իւրում. զճշմարիտն ասել՝ Հայրն երկնաւոր առ նա ասացեալ՝ Գտի զԴաւիթ ծառայ իմ, եւ իւղով սրբով իմով օծի զնա. ձեռն իմ ընկալցի զնա, եւ բազուկ իմ զօրացուսցէ, այլովքն հանդերձ[2]: Եւ եղեւ մեզ առաւօտ, եւ շրնչեաց 'ի մեզ հոգի կենդանութեան, եւ եղ փչող՝ աշխատեալ երեսաց մերոց[3]: Եւ էր նա ամաց վեշտասանից, եւ լի հանճարով իմաստից. քանզի զորդին Լիպարտի՝ զԻւանէ եգիտ ապստամբ, եւ զկնի դառնալոյն 'ի դերութենէ՝ կալաւ զնա եւ եդ 'ի բանտի՝ զի խրատեսցի. եւ դարձեալ եհան 'ի կապանաց, եւ 'ի նոյն մեծութեանն

1 Ցիններորդ վեցերորդ արքայ, բագրատունի, իշխեաց զամս 36, 'ի 1089-1125:

2 Պրոսէ Թարգմանէ, Mon bras *et d'autres* lui donneront de la force, ոչ 'ի վերայ հասեալ իմաստից այլովքն հանդերձի. որով ունէր ասել, Mon bras lui donnera de la force, *avec ce qui suit.*

3 Պրոսէ ունի, կարծեմ վրիպակաւ. Շնչեաց 'ի մեզ շունչ կենաց, եւ որ շնչէրն 'ի մեզ զաշխատութիւն՝ հեռացաւ յերեսաց մերոց:

պատուէր զնա. և իբրև դարձաւ որպէս զշուն 'ի փըսխածն՝ վերստին ըմբռնեաց զնա, և առաքեաց առ Յոյնս:

Ի չորրորդում ամի թագաւորութեանն Դաւթի՝ մեռաւ Մելիք-Շահ Սուլտանն: Եւ ելին փռանկք, և առին զԵրուսաղէմ և զԱնտաք և զամենայն ծովեզերեայսն: Եւ 'զօրացաւ Դաւիթ, և շինեցաւ Քարթլայ տունն, և ոչ տայր հարկս Թուրքաց: Մեռաւ Կիւրիկէ թագաւորն Կախեթոյ, և էառ զթագն եղբօրորդի նորա Ախսարթան: Հայեցաւ Դաւիթ իմաստութեամբն յեկեղեցիս, զի ոչ գոյր նոցա ճրագ. այլ առաջնորդք կոյրք և զօշաքաղք, այլ և աւազակք, որք ընդ որմ և ընդ երդս մտանէին, և ոչ հովուաբար ընդ դրունս: Այսպէս էին 'ի ժամանակին եպիսկոպոսք. և ձեռնադրէին քահանայս կաշառօք՝ նմանս իւրեանց, և կացուցանէին քորեպիսկոպոսս անմիտս և ագահս, և տնկէին զանօրէնութիւն 'ի տան Աստուծոյ: Եւ ակն մեծ՝ հայէր և ոչ հաճէր. քանզի ոչ որպէս մեղք յեկեղեցիս և յաշխարհիս, հովուաց և խաշանց, վարդապետաց և ռամկաց. այլ ծառայ՝ որ գիտիցէ զկամս տեառն իւրոյ և ոխալէ՝ արբցէ գան բազում: Վասն որոյ հաւաքեաց առ ինքն զկաթուղիկոսն եւ զեպիսկոպոսունսն եւ զքահանայս անզգամացեալս. և հրամայեաց ընտրութիւն առնել 'ի մէջ լաւին և վատթարացն, և արտաքսել զանարժանսն, և տեսանել զկանոնական հրամանսն, և այնպէս վարել զաստիճանս յեկեղեցի և տալ հրաման տխմարաց: Եւ արարին այնպէս ըստ հրամանին աստուածային գրոց, և լաւացն ետուն զաթոռն և զխոտանսն 'ի բաց հանին. որպէս 'ի յուռկանաց զանկերակրելիսն և զգարշսն: Եւ զայս արարեալ իբրև զՄեծն Կոստանդիանոս, և ույժ առեալ յԱստուծոյ՝ եհար սակաւուք զբազմութիւն զօրացն Թուրքաց, և կոտորեաց զերթևեկս նոցա յաշխարհէս քրիստոնէից: Քանզի ետ նմա Տէր զխոստումն արդարոց, զի մինն զհազարսն և երկուքն զբիւրսն հալածէին. քանզի ոչ որպէս Եղիազարոս Աւարան[1], որ արեամբ թշնամեացն մատղեալ ըն-

[1] Յօրինակին գրի. Եղիազարոս աւարաւն, ըստ որում և Գրո-

գործմանայր, այլ և զծոցն ևս լցեալ արեամբ՝ դառնայր ամբողջ, և արձակեալ զգօտին՝ թափէր և թնթևանայր։ Այլ և շինող վանորէից և եկեղեցեաց. որպէս և շինեաց 'ի վայելուչ տեղւոջ երկու տաճար՝ յանուն սուրբ Աստուածածնի. և ինքնին երթեալ տեսանէր զվանորայսն, զկարգս պաշտամանց և զհանդիստ հիւրանոցայն, և լնոյր զպակասն. շինեաց 'ի տեղիս տեղիս հոգոյ տունս՝ 'ի հանգիստ ճանապարհորդաց։

Յայնմ ժամանակի ապստամբեցին Թուրքք իբրև տասն հազար 'ի Թռեղս. և Դաւիթ էր 'ի Նաճարմադ. իբրև լուաւ զնոցանէ՝ եկն առ նոսա զգիշերն ամենայն՝ սակաւ զօրօք, և 'ի ժամ առաւօտուն եհար զնոսա օգնութեամբն Աստուծոյ՝ մինչև ցերեկոյ. և սակաւ մնացեալ՝ փախեան զգիշերն։ Նոյնպէս և 'ի Տայոց երկիրն իջեալ կային բիւրաւոր բանակք Թուրքաց. չոգաւ եհար զնոսա, և էառ զկարասի նոցա, և լցաւ երկիրն վրաց բարութեամբ։ Եւ առաքեաց զորդի իւր զԴեմետրէ 'ի կողմն Շրուանայ. և աջողեցաւ նմա. և առեալ զբերդն Քալաձորոյ և դարձաւ խնդութեամբ։ Եւ մինչ հատանէր զտօն Զատկին 'ի Նախէգրանն մեծն Դաւիթ, բերին նմա զլուր եթէ սպանին զԲէշկէն 'ի Ջաւախեթի՝ Թուրքքն, և եկին նստան յեզրն Երասխայ։ Եւ գնաց 'ի վերայ նոցա, և կոտորեաց և գերեաց զամենայն բանակս նոցա։ Արար Դաւիթ խնամութիւն ընդ թագաւորսն Յունաց և Շրուանայ, տալով նոցա զդստերս իւր, և արար իւր թիկունս օգնականի։ Եւ կին նորա Գորանդուխտ՝ դուստր էր Կիւչաղաց գլխաւորին, այսինքն՝ Հոնաց՝ Աթրակայ. և նոցա օգնականութեամբն հնազանդեցոյց զթագաւորսն Օսեթայ. և էառ պատանդս 'ի նոցանէ, և արար խաղաղութիւն 'ի մէջ Օսաց և Հոնաց. և էառ զբերդն Դարիալայ, և զամենայն դրունս Օսեթոյ 'ի կաւկասու լեառն, ածելով անտի Կիւչաղս, որ կոտորեաց զզօրութիւնս Թուրքաց։ Էառ և զբերդա-

աէի զմակդիր անունն Եղիազարու (Ա. Մակ. Զ. 43) թարգմանեալ գոյականաբար՝ խրթնագոյն և ընծայէ զիմաստ՝ ընթեռնլով և զնառաջեալն մտանել և զընդարձակեալսն՝ ընդարձակելոյ, որով գնէ. Au lieu de *piller* comme Eléazar, il *allait en avant*, et *se fortifiait* dans le sang ennemi.

քաղաքն Հայոց՝ զԼօռէ. յորում ժամանակի մեռաւ Մալիքն՝ որդին Մէլիք–Շահի, և Ալէքս՝ թագաւոր Յունաց. մեռաւ և ճղունդիտեսն Գիորգի՝ միամիտն 'ի մանկութենէ.[1] և սգաց զնա թագաւորն քսան աւուր՝ ամենայն թագաւորութեամբն, և թաղեաց զնա 'ի Նոր վանքն:

Իսկ զկիւչաղսն քառասուն հազար տամբ և որդւովք՝ առ իւր պահեաց 'ի Վրաց աշխարհին, և այլ ևս հինգ հարիւր մառաղատունկս, զորս սնուցանէր 'ի դրան իւրում՝ քրիստոնեայս, և այլ ևս օր ըստ օրէ մկրտէին և ուսանէին զհաւատս Տեառն մերոյ: Եւ ըսպառազինեաց զքառասուն հազարսն, և կացոյց նոցա սպասալարս, և նոքօք վանէր զՊարսս և զԹուրքաստան: Եւ է ասել զնա նման ընձու որընթաց և արագահաս, որով զԱղէքսանդր՝ նկարագրէր տեսիլն Դանիելի. որ ոչ էր պակաս 'ի նմանէ մերս Աղէքսանդրոս, թէպէտ ժամանակաւ կրտսեր, այլ բաղդիւ համեմատ. քանզի եհար զԹուրքն 'ի ձմերոցն Թուղարքայ, և լցաւ աւարաւ. յերեքտասանն փետրուարի և 'ի նոյն[2] յեօթնեակս պահոցն՝ էառ զկապս քաղաքն, և ելից զՎիրս ոսկւով և արծաթով. և 'ի մայիսի հինգ՝ ասպատակեաց զԼայիժքն, մինչև ցՔուրդաւան և ցԽշտաղան, և դարձաւ ճոխութեամբ 'ի Քարթլ: Եւ 'ի նոյն ամի գնաց յԱշորնիս, և եհար զբանակս Թուրքայն, մինչև չմնալ սգացողաց 'ի վերանս նոցա. և 'ի ժամանակս ձմերան չոգաւ յԱփխազէթ՝ մինչև ցԲինճիթա, և կարգաւորեաց զնոսա: Եւ զի Թուրքմանն յամարինոն ելանէր 'ի լերինս Հայոց, և 'ի ձմեռնայինն իջանէր յեզերսն կուր գետոյ 'ի մարմանդ, բայց ոչ առանց բազում պատրաստութեան յերկիւղէն Դաւթի. իսկ յայնմ ամի անհոգացան վասն հեռաւորութեան թագաւորին. դարձաւ թագաւորն, և քերել ետ առաջի իւր զլեառն Լիխայ, և եկն 'ի Քար-

1 Այսինքն՝ հաւատարիմն հպատակութեամբ, որ ըստ վկայելոյ Վախթանգայ՝ էր այր կատարեալ, ճոխացեալ ձրիւք մտաց և մարմնոյ, իմաստուն յոյժ և զգօնամիտ, խրատու խորագէտ, գլուխ ատենադպրաց Դաւթի և անձնանուէր 'ի ծառայութեան տերանց իւրոց:

2 Գրուէ ոմն. ի նմին ամի, յեօթնեակս պահոցն, և այլն:

թըլ. և եգիտ պատրաստական զզօրսն յամենայնն մարտին, և գնաց 'ի խունան, և ոչ եթող 'ի բազմութենէ Թուրքացն ապրել: Եւ էանց 'ի Պարտաւ, և եգիտ անդ դաղթականս 'ի Թուրքաց 'ի գեղամէջս, եհար զնոսա բերանով սրոյ և դարձաւ խաղաղութեամբ:

Ցայնմ ժամանակի վաճառականք ոմանք 'ի Դմանեաց և Տփխեաց՝ կողոպտածք 'ի յազգէն Թուրքաց, և այլ ևս մնացորդք 'ի հարելոց անտի, սևեցին զհանդերձս և կէսք զերեսս և ոմանք զձեռս և զոտս, և չոգան առաջի Սուլտանին՝ վայ կարդալով անձանց՝ յերեսաց Դաւթին. Եւ կոչեաց առ ինքն Սուլտանն զԹագաւորն Արաբացւոց, և զորդին Ալտուխին և զամենայն Ամիրայսն Միջագետաց, և առաքեաց զնոսա 'ի վերայ Դաւթի: Եւ յօգոստոսի երկոտասան՝ եկին հասին 'ի Թռեղս, 'ի Մանկլիս և 'ի Դիդգօրքն: Իսկ Թագաւորն օգնական կոչելով զՔրիստոս զԱստուածն մեր՝ դիմեաց 'ի վերայ նոցա հանդարտութեամբ. և զառաջինն ընկէց 'ի յաւազացն և դարձոյց 'ի փախուստ. և զհետ մտեալ՝ ճարակ սրոյ տայր զամենեսեան զնոսա, գէշ գազանաց և թռչնոց կացուցանելով զնոսա ընդ լերինս և դաշտս. և լցան ձիօք և ուղտօք և ջորւօք և կահիւք Արաբացւոց, և գերութեամբ ազնուական Ամիրայիցն: Եւ ո՞ր լեզու կարէ պատմել զանուրն զհրաշսն՝ զոր ետ մեզ կեցուցիչն Քրիստոս: Եւ զի՞նչ են ինձ Հոմերոնի և Արիստոտելի պատմելն զՏրովական[1] պատերազմն և զքաջութիւնն Աքիլլայ, և կամ զՅովսեպոսին՝ զքաջութիւնն Մակաբայեաց և զԱղեքսանդրուն գրել և կամ զՏիտոսին յԵրուսաղէմ. քանզի զչորեքհարիւր ամ ոչ կարացին զՏփխիս Թագաւորքն Վրաց սեպհականել միահաղոյն՝ մինչև ցԴաւիթ: Ցաւուրսն յայնոսիկ չոգաւ Սուլտանն 'ի Շրուան, և էառ զՇամախի և ըմբռնեաց զՇրուան-Շահ. և արձակեաց դեսպանս առ Դաւիթ, և ասէ. Ողջ լեր, արքայդ խորագոյն մայրեաց, որ ոչ իշխես ելանել յորջիցդ. եթէ կամիս՝ ե՛լ 'ի դարանէդ և տես զիս աստ, և թէ ոչ՝ առաքեա առ իս զհարկն

1 Յօրինակին՝ զտովորականն, ըստ որում Թարգմանէ և Պրոսէ. այլ ուղղագոյն և բանաւոր ինձ թուի ընթեռնուլ զՏրովականն:

իմ և գնամ։ Իբրև լուաւ Թագաւորն՝ հրամայեաց հեծելոց, և հաւաքեցաւ ամենայն բազմութեամբ ուժոյ իւրոյ, և չոգաւ առ նա։ Իբրև լուաւ Սուլտանն՝ զահի հարաւ, և մտաւ 'ի քաղաքն Շամախի, և ամրացոյց խոր փոսիւք. և առաքեաց առ նա և ասէ. Ոչ խնդրեմ 'ի քէն հարկս և ոչ պատերազմ, այլ ճանապարհ զի գնացից [1]։ Ի նմին ժամանակի Աթապակն Ռանայ՝ Ախանդուլն գայ տասն հազարաւ առ Սուլտանն. և հարին զնա զօրքն Գուլթի, և ինքն մազապուր եմուտ առ Սուլտանն. և ես զարհուրեալ Սուլտանն՝ ընդ այլ ճանապարհ գաղտագնաց եղև 'ի գիշերի յաշխարհն իւր. և Թագաւորն յերկիր իւր դառնայր։ Եւ զկնի ամսոյ միոյ՝ անդրէն դառնայր 'ի Շրուան. և առնոյր զԳուլստան բերդ՝ զարքայանիստն, և արարեալ զաշխարհն ընդ հարկաւ՝ դառնայր 'ի Վիրս։ Նա էառ և զգղեակսն Հայոց՝ զԳիմանիս, զԳագ, զՏէրունականն, զՔաւազինն, զՆոր-բերդն, զՄանասագոմ, զԽալինձքար. և անցեալ 'ի կողմն վերին 'ի Բասեն և յիսպեր՝ ուր և գտանէր 'ի Թուրքաց՝ կոտորեալ ջնջէր, և դառնայր մեծաւ յաջողմամբ 'ի Վիրս՝ յօգոստոս ամսեան։ Եւ հասանէր առ նա Թուղթ 'ի յաւագացն Անւոյ՝ եթէ Ե՛կ, տացուք զքաղաքս 'ի ձեռս քո. և գնաց վաթսուն հազար հեծելովք, և զկնի երից աւուրց էառ զնա. և դարձաւ 'ի Շրուան, և էառ զքաղաքն Շամախի, և զամենայն երկիրն. և Թողեալ զօրս 'ի Հեր և կախ, և գործակալ երկրին զՄխիթէոն հաւատարիմն իւր, և դարձաւ 'ի Քարթըլ։

Եւ զո՞րս պատմեսցուք 'ի Նորայոցն բարեաց. 'զի շինեաց զամենայն մասունս արևելից և ելից բնակչօք։ Էր նա և ըստ հոգւոյ զգաստ և արի, և ընթեռնոյր զամենայն մատեանս աստուածայինս, և յորժամ աշխատէր ակն՝ լսէր ականջօք զցայգ և զցերեկ. զի ոչ քուն խափանէր զնա 'ի գիշերի, և ոչ հոգք աշխարհի՝ 'ի տուընջեան, և ոչ հեշտութիւն՝ 'ի ժամ ճաշոյ և ընթրեաց։ Էր նա և ողորմած և աղէկէզ 'ի վերայ քրիստոնէից. քանզի մինչ էր Տփխիս առ Թուրքաց, և յամենայն ա-

1 Ցօրինակին՝ այլ ճանապարհ զի գնացից 'ի նոյն ժամանակս։

ուր լնոյր արեամբ քրիստոնէից, որ բնակքն էին և որ արտաքսեալ մնանէին փախստականք. վասն որոյ ոչ հանգեաւ մինչև ոչ երարձ[1] զգայթակղութիւնն քրիստոնէից. և օգնութեամբն Քրիստոսի արար հարկատու զՍուլտանն՝ զապականիչն աշխարհի, և նստոյց 'ի մոխրի զազգն իսմայելի, և որպէս մարդ անասնոյ՝ այնպէս նա տիրեաց բռնաւորաց աշխարհի։ Էր և պահող պինդ և աղօթող յերկար, և յեկեղեցիս ընծայող, մինչև 'ի Յունաց աշխարհն և 'ի Կիլիկիա և 'ի Կիպրոս և 'ի Սուրբ Երուսաղէմ. և 'ի Լեառն Սինա շինեաց վանք, և գանձ բազում հազարաւոր և բիւրաւոր առաքէր ամի ամի, այլ և գրեան և սպաս սրբութեանց, զոր ո՞ կարէ համարել։ Այլ և կամեցաւ միաւորել զՀայս և զՎիրս. և կոչեաց զՅովհաննէս կաթուղիկոս Քարթլայ և զԱրսենիոս Քարթլեցի՝ զԹարգմանն Վրաց և Յունաց լեզուին, և զեպիսկոպոս և զվարդապետս Հայոց, և արար ժողով. և քննէին յառաւօտէ մինչև ցերեկոյ, և ոչ հաւանէին միմեանց։ Ապա ասէ Թագաւորն. Մեք անվարժ եմք 'ի խորագոյն բանսդ՝ զոր արկեալ էք առաջի, և ոչ կարէք դուք ելանել 'ի դուրս։ Եւ ինքն պարզ և յայտնի բանիւ խաղաղացուցեալ զերկոսին կողմանն՝ արձակեաց զժողովն։

Այլ ինքն սիրէր զազգն Հայոց և զեկեղեցիսն և զոմն հռետոր վարդապետ 'ի Հաղբատ՝ Սարկաւագ անուն. խոստովանէր նմա զյանցանս իւր, և կորացուցեալ զպատուական գլուխն՝ օրհնէր 'ի նմանէ. և նստէր ընդ նմա և փարէր զպարանոցաւ նորա. և նա ասէր. Լուծեալ եմ և հոտեալ 'ի ծերութեան ես. 'ի բաց գնա յինէն՝ զի մի աշխատ լիցիս։ Եւ Թագաւորն համբուրէր և ասէր. Անպակաս լիցի հոտս այս յինէն, հայր պատուական։ Եւ պարգևեաց նմա գիւղ առընթեր վանացն՝ 'ի ծառայութիւն նմա։ Եւ 'ի յօրհնելն զԹագաւորն՝ զայս ասէր՝ եդեալ զձեռս 'ի վերայ գլխոյն. Գտի զԴաւիթ ծառայ իմ, և իւղով սրբով օծի զնա մինչև ցտասներորդ տուն։ Եւ զուարճանայր արքայն. և գովէր զգեղեցկակերպ Թարգմանութիւնն Հայոց[2]։ Եւ տեսաք

1 Յօրինակին չիք ոչ երարձ։

2 Այս ամենայն բանք զազգէս Հայոց՝ Թուին յաւելեալ 'ի հայ

արդեամբ կատարեալ զբան սաղմոսին 'ի վերայ Թագաւորին. և յոլովք 'ի բանից անտի վայելէին նմա. քանզի 'ի բազումորոգայթից Աստուծով զերծեալ ապրեալ՝ անկարծելի մարդկան։ Զի երբեմն 'ի յորս էրէոց անկեալ յերիվարէն՝ գնէր անխլիրտ իբրև զմեռեալ, և ապա յառնէր խորհրդոյն [1] զօրութեամբն։ Եւ դարձեալ, 'ի պատերազմելն ընդ բերդի ուրեմն, եկեալ նետ 'ի պարսպէն՝ հարկանէր զերեսն Գմբրբելի, որ կայր 'ի պարանոցն նորա, և ապրէր նա յայնմանէ՝ հրեշտակային բարեխօսութեամբ։ Եւ այսպէս 'ի հասեալ բարիսն՝ մօտ ժամանել յերկնաւորն, հիւանդանայր զերկրաւոր կեանս, 'ի յիններորդ երրորդ ամի կենաց իւրոց, յունուարի ամսեան 'ի քսան և հինգն. Նստուց (եւալ) [2] . . . . . . . . . . . . . .

Թարգմանչէն, և պակասէն 'ի ժամանակագրութեանն Վախթանգայ, յորում փոխանակ այսոցիկ՝ գնին գարովանք զդաւանութենէ կրօնից հակառակ Վրացն ուղղափառութեան, և զանլսողութենէ Հայոց՝ձայնի Ճշմարտութեան 'ի ժողովիանդ գումարելոյ 'ի Դուինէ։

1 Զմիտս խորհրդոյ բառի ոչ իմացեալ Պրոսեայ՝ Թարգմանէ Par la force de sa pensée, այս է՝ Զօրութեամբ իմացութեան իւրոյ։

2 Թերի մնայ աստ յօրինակի մերում Պատմութիւնս Վրաց՝ կամ 'ի Թարգմանչէն և կամ յընդօրինակողէ նորին անաւարտ թողեալ։ Վերջին բառն նստուցեալ վերաբերի առ Դեմետրէ՝ որդի Դաւթի, զոր կենդանւոյ իւրով եւ օծել Դաւիթ՝ 'ի թագաւոր. ըստ օրինակի Սողոմոնի՝ կարգելոյ յանուանակցէն իւրմէ 'ի մեծէն Դաւթէ՝ յարքայ Իսրայելի։

# ՑԱՆԿ

Մրուանայ, և որդւոյ նորա Արտակայ. — Պատերազմ Արտակայ ընդ Ադրբկայ, և յաղագս թագաւորութեան սորա. — Ծնունդ Քրիստոսի Տեառն մերոյ, և յաղագս անցիցն անցելոց առ Հրեայս Վրաստանի. — Գալուստ սրբոց առաքելոցն Անդրէի և Սիմոնի 'ի սահմանս Վրաց, և նախ՛ատակութիւն վերջնոյս. և յաղագս Ս. Անդրէի գործոցն յԵգրիս և այլուր. — Յաղագս բաժանելոյ Ադրբկայ զթագաւորութիւն իւր՝ երկուց որդւոց իւրոց, և յաղագս աւերմանն Երուսաղեմի 'ի Վեսպասիանէ, և գաղթելոյ մասին Հրէից 'ի Վրաստան։

ԳԼՈՒԽ Ե. — Թագաւորէ Երուանդ 'ի Հայս, արշաւէ 'ի Վիրս. և ապա սպանանի 'ի Սմբատայ. — Միաբանեալ Վրաց ընդ հիւսիսային ազգաց՝ դիմեն 'ի Հայս, և հարկանին 'ի Սմբատայ քաջէ, որ և նուաճէ զերկիր նոցա. — Կրկին անգամ ապստամբեալ Վրաց՝ գերին զՋարեհ, զորդի Արտաքսնայ (Արտաշիսի) արքային Հայոց, այլ տագնապեալ 'ի Սմբատայ՝ խոնարհին 'ի հաշտութիւն և 'ի ծառայութիւն։

ԳԼՈՒԽ Զ. — Յաջորդութիւն թագաւորութեան Վրաց. և նենգաւոր հնարք Միհրդատայ 'ի սպանութիւն Փարսմանայ, և մահ նորին 'ի Հայոց. — Արշաւանք Օսաց 'ի Վիրս, և նուաճումն նոցա 'ի ձեռն Համազասպայ Վրաց արքայի. — Ապստամբութիւն Համազասպայ 'ի Հայոց, և մահ նորին. — Թագաւորեալ Վիրոնի 'ի վերայ Վրաց՝ առնէ բարեկարգութիւնս։

ԳԼՈՒԽ Է. — Յաղագս բառնալոյ ազգին Արշակունեաց յԱրտաշրէ, և վասն պատերազմացն և դաւադիր սպանմանն Խոսրովու Հայոց արքայի. — Թագաւորել Միհրանայ 'ի Վիրս, և պատերազմունք նորա ընդդէմ Հիւսիսայնոց. — Ժառանգէ Միհրան զաւառս ինչ զկնի մահուանն Արտաշրի, և վերստին պատերազմունք նորա ընդ ազգացն հիւսիսոյ. — Դարձ Տրդատայ 'ի հայրենի թագաւորութիւնն, և ընդ Կոստանդիանու մարտ եդեալ ընդդէմ Միհրանայ և Պարսից՝ ստիպել զնոսին 'ի հաշտութիւն և 'ի ծառայութիւն։

ԳԼՈՒԽ Ը. — Գալուստ Ս. Նունեայ 'ի Վիրս, որոյ հարցեալ 'ի թագուհւոյն Վրաց՝ մանրապատում աւանդէ զվարուց իւրոց, և թէ որպէս ազդեալ 'ի տեսլեան, 'ի հրամանէն Աստուծոյ եկեալ 'ի Վիրս՝ աղօթիւք խորտակէ զկուռս. յետ որոյ առանձինն բնակելով յանծանօթս, յաճախէ առ Հրեայս Մցխեթայ, որք ընդ Աբիաթարայ քահանայի դառնան 'ի հաւատս. և գիլուեալ զայս ամենայն՝ հաւատայ 'ի Քրիստոս և ինքնին թագուհին Վրաց։

ԳԼՈՒԽ Թ. — Պատմէ Աբիաթար քահանայ թէ որպէս գիր ընկալեալ զՔրիստոսէ 'ի Հրէից Անտիոքայ, և ստուգեալ 'ի կատարմանէ աւուրցն նշանակելոց 'ի Դանիելէ, և լուեալ 'ի Ս. Նունեայ՝ մկրտեալ հաւատաց 'ի Քրիստոս. — Խնդրեալ 'ի լսողացն՝ պատմէ զտնօրէնութեննէն Քրիստոսի, և զերթալոյ իւրոյ ընդ այլոց ոմանց յԵրուսաղէմ, և բերելոյ ընդ իւրեանս զպատմուճանն Տեառն. — Զայրացեալ Հրէից՝ մինչև խնդրել քարկոծել զնա,

սանձահարին 'ի հրամանէ թագաւորին, որ դիւրութիւն առնէ քրիստոնէից։

ԳԼՈՒԽ Ժ. — Քարոզութիւն և տեսիլ Ս. Նունեայ. - Սքանչելիք բժշկութեան 'ի վերայ ախտացելոյ ուրումն մանկան. - Սքանչելիք ցուցեալք 'ի թագուհին Նանա. - Գիրք ազգին Ներրովթայ և շինութեան Քաղանէի. - Յաղագս բժշկութեան մոգի միոյ, մերձաւորի արքային Միհրանայ. - Շարժեալ 'ի սքանչելեաց՝ հաւատալ Միհրանայ 'ի Քրիստոս և դիմել առ Ս. Նունէ. - Հիմնարկութիւն առաջին Եկեղեցւոյ 'ի Վիրս, և վրդովմունք ոգւոցն չարութեան, և սքանչելիք ցուցեալք յԱստուծոյ։

ԳԼՈՒԽ ԺԱ. — Գալուստ քահանայից և եպիսկոպոսի 'ի Յունաց, և մկրտել ամենայն Վրաց ընդ Միհրանայ, և ձեռն արկանել 'ի շինել զեկեղեցիս, և հանգուցանել 'ի նոսին զնշխարս սրբոց. — Կանգնումն նշանի Ս. Խաչին 'ի տեղիս ինչ յայտնեալս յերկնուստ. — Սքանչելիք ցուցեալք 'ի նշանէ Ս. Խաչին կանգնելոյ. - Կոստանդիանու տալ արձանագրել 'ի մատենի զպատմութիւն դառնալոյ 'ի հաւատս Հայոց և Վրաց. - Կամեցեալ Միհրանայ զօրութեամբ զինու տարածանել զհաւատս՝ խափանի 'ի Ս. Նունեայ. որոյ շրջեալ քարոզութեամբ բանին 'ի կողմանս հիւսիսոյ՝ փոխի 'ի Տէր. - Կոստանդիանու արձակել զԲահքար՝ զորդի Միհրանայ, որ կայր 'ի պատանդի. որ և 'ի մեռանել երէց եղբօրն՝ ընդունի զթագն արքայական 'ի ձեռանէ Միհրանայ՝ հօր իւրոյ՝ 'ի մահու նորին, որոյ պատուէրս տուեալ որդւոյն և կնոջն՝ ննջէ 'ի Տէր։

ԳԼՈՒԽ ԺԲ. — Թագաւորել Բահքարայ օգնականութեամբ Պարսից՝ հակառակ կամաց Հայոց, և գործք նորա և մահ. - Յաջորդութիւն եպիսկոպոսաց՝ և թագաւորել Միհրդատայ և ապա որդւոյ նորա Վարզաբաքարայ, և հարկել սորա Պարսից, և պարտիլ 'ի Յունաց. և զկնի սորին յաջորդութիւն թագաւորաց ոմանց, որպէս և եպիսկոպոսաց, յետ Յակոբայ. - Յաղթութիւն Արշիլ արքայի և որդւոյ նորա Միհրդատայ 'ի վերայ Պարսից. - Կարգ յաջորդութեան եպիսկոպոսաց, և յաղագս գործոց Մուշիղայ անարժան եպիսկոպոսի. - Թագաւորութիւն Միհրդատայ և ծնունդ Վախթանգայ, և իշխանութիւն Սակդխտոյ և մահ Մուշիղայ։

ԳԼՈՒԽ ԺԳ. — Արշաւանք Օսաց և Յունաց 'ի Վիրս և գերել զնոսին. - Յաղթութիւն Վախթանգայ ընդդէմ Օսաց և Խազրաց և միաբանել ընդ Պարսից. - Արշաւանք Վախթանգայ 'ի կողմանս Պոնտոսի, աւանդութիւնք նորին զՆեբրովթայ և զշինութենէ աշտարակին. - Վախթանգայ դիւրութիւն առնել քրիստոնէից, տեսանել տեսիլ և դառնալ յետս. - Յաղթութիւն Յունաց 'ի վերայ Պարսից, և ապրելոցն 'ի մարտէն՝ հաւատալ 'ի Քրիստոս. - Վախթանգայ արութիւնք ընդդէմ ուխտադրուժ Յունաց, և հաշտութիւն ընդ կայսեր։

ԳԼՈՒԽ ԺԴ. — Վախթանգայ ընդդիմանալ Պարսից և հաշտեցուցանել զնոսա ընդ Յոյնս. - Երթ Վախթանգայ յԵրուսաղէմ և միաբան չու նորա ընդ Պարսից 'ի Հնդիկս. - Շահատա-

կութիւնք Վախթանգայ 'ի Յնդիկս, և ասպատակել ընդ Պարսից յաշխարհն Հաբաշեաց. — Դարձ Վախթանգայ 'ի Վիրս, հանդերձ Պետրոսիւ և Սամուելիւ, և որ ինչ անցք անցին ընդ եպիսկոպոսն Միքայէլ. — Գալուստ և հաստատութիւն Պետրոսի կաթուղիկոսի 'ի Վիրս, հանդերձ եպիսկոպոսակցօք իւրովք, ընդ Հեղինեայ դըստեր կայսերն Յունաց՝ ածեալ 'ի կնութիւն Վախթանգայ. — Յաղթութիւն Վախթանգայ 'ի վերայ Պարսից և հարկանիլ 'ի նոցանէ կորեվէր. — Գալուստ Զենոնի կայսեր յօգնութիւն Վախթանգայ և պատերազմել ընդ Պարսից. — Մահ Վախթանգայ:

ԳԼՈՒԽ ԺԵ. — Յաջորդութիւն թագաւորաց և կաթուղիկոսաց, և արշաւանք Օսաց. — Արշաւանք Հերակլ կայսեր 'ի վերայ Պարսից և նուաճել նորա զՎիրս. — Կարգ պայազատութեան իշխանաց և կաթողիկոսաց 'ի Վիրս. — Զօրանալ Մահմէտի և Հագարացւոց, և աւերել զՎրաստան և զշրջակայսն. — Պատերազմն նոցին և պարտութիւն 'ի Վրաց. — Գալուստ և հաստատութիւն Ադրնասի և այլոց ոմանց 'ի Վիրս:

ԳԼՈՒԽ ԺԶ. — Սկիզբն Քաղրթական ազգին, որ և Սարակինոսք, և տիրել նոցա աշխարհին Պարսից. — Վկայական կատարումն Արշիլ Երկրորդի, արքային Վրաց. — Ապստամբութիւն Խաքանին Խազրաց 'ի Վիրս, և կատարած Շուշանայ՝ դստեր Արշիլ Երկրորդի. — Մահ որդւոյ Արշիլ Երկրորդի, և արշաւանք Բուլկասիմ Սարակինոսի 'ի Հայս և 'ի Վիրս, և վկայական մահ Սմբատայ Խոստովանողի:

ԳԼՈՒԽ ԺԷ. — Թագաւորել Գէորգեայ 'ի վերայ Ափխազաց և յաղագս գործոց և պայազատաց նորին. — Յաղագս թագաւորութեան Բագրատայ՝ որդւոյ Գուրգենայ. — Պատերազմ Գէորգեայ՝ որդւոյ Բագրատայ ընդ Վասլի կայսեր, և յաղագս Պետրոսի Գետադարձի. — Յաղագս թագաւորութեան Բագրատայ՝ որդւոյ Գէորգեայ, և մահուանն Լիպարիտի, և որ ինչ անցք անցին յաւուրս նորա. — Արշաւանք Արբասլանայ 'ի Հայս և 'ի Վիրս, և Բագրատայ պատերազմ ընդ Փատլուն ամիրայի. — Թագաւորել Գէորգեայ՝ որդւոյ Բագրատայ, և հաստատել դաշն խաղաղութեան ընդ Մէլիք Շահի:

ԳԼՈՒԽ ԺԸ. — Թագաւորել Դաւթի՝ որդւոյ Գէորգեայ. — Գալուստ Խաչակրաց յԱրևելս, և բարեկարգել Դաւթի զեկեղեցիս Վրաց. — Նուաճէ Դաւիթ զապստամբութիւն Թուրքաց, և խնամեցեալ ընդ Յոյնս և ընդ Հոնս՝ ընկճէ և զՕսս. — Այլ ևս արութիւնք նորա ընդդէմ Պարսից և Թուրքաց. — Պատերազմն Դաւթի ընդդէմ թագաւորին Արաբացւոց և Սուլտանին Միջագետաց, և տիրել բերդից ինչ Հայոց և քաղաքին Անւոյ. — Ուղղութիւնք Դաւթի և փոյթ կամաց նորա միաբանելոյ զՀայս և զՎիրս. — Մեծարէ Դաւիթ զՍարկաւագ վարդապետ և օրհնի 'ի նմանէ, և հիւանդացեալ՝ փոխի յաստեացս:

# ՅԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ

